ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 8

ՕԳՈՍՏՈՍ

1963 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 42-ՐԴ ՏԱՐԻ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆԻ ՏՎԱԾ ԶԵԿՈՒՑՈՒՄԻՑ

**1963 Թ. ՀՈՒԼԻՍԻ 5**

Ընկերնե՛ր: Հունիսի 18—21-ը Մոսկվայում տեղի ունեցավ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հերթական պլենումը, որը կարևորագույն իրադարձություն է պարտիայի և ամբողջ սովետական ժողովրդի գաղափարական-քաղաքական կյանքում: Պլենումը քննարկեց ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Լ. Ֆ. Իլյիչովի զեկուցումը *Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրների մասին:*

Կենտկոմի հունիսյան պլենումն ընթացավ գործարար մթնոլորտում և մեկ անգամ ևս ամբողջ աշխարհի առջև ցուցադրեց մեր լենինյան պարտիայի միասնությունը, համախմբվածությունն ու միաձուլությունը. պլենումը ցույց տվեց, որ պարտիայի կադրերը խորապես ըմբռնում են գաղափարական աշխատանքի նոր խնդիրները:

Պլենումում բովանդակալից, փայլուն ճառով հանդես եկավ ընկեր Ն. Ս. Խրուշչովը:

Պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումում միաձայն ընդունված որոշման մեջ սահմանվեցին նոր պայմաններում աշխատավորների կոմունիստական դաստիարակության հիմնական ուղղություններն ու կոնկրետ խնդիրները՝ ՍՄԿՊ XXII համագումարի որոշումներին և պարտիայի ծրագրին լիովին համապատասխան:

Պլենումում հանդես եկան նաև ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարներ ընկ. ընկ. Մ. Ա. Սուսլովը, Բ. Ն. Պոնոմարյովը, Յու. Վ. Անդրոպովը. նրանք պարզ ու համոզիչ շարադրեցին, մի կողմից՝ Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի և, մյուս կողմից՝ Սովետական Միության կոմունիստական պարտիայի ու մյուս եղբայրական կոմունիստական պարտիաների միջև ծագած տարաձայնությունների էությունը: Կենտկոմի պլենումն ընդունեց որոշում՝ *Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի ներկայացուցիչների հետ ՍՄԿՊ Կենտկոմի ներկայացուցիչների առաջիկա հանդիպման մասին:*

Պլենումը մեծ ոգևորությամբ միահամուռ հավանություն տվեց համաշխարհային կոմունիստական շարժման ուժերի հետագա համախմբման ուղղությամբ ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության, ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի քաղաքական գործու-

նեության, ինչպես նաև այն կոնկրետ գործողություններին ու միջոցառումներին, որ ձեռնարկել է ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությունը Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի հետ ունեցած փոխհարաբերություններում: Պլենումի որոշման մեջ հաստատված են այն գլխավոր սկզբունքները, որոնցով առաջնորդվելու է ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությունը՝ Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի ներկայացուցիչների հետ բանակցություններ վարելիս:

Պլենումը քննարկեց նաև կազմակերպական հարցեր: ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարներ ընտրվեցին ընկ. ընկ. Լ. Ի. Բրեժնևը և Ն. Վ. Պոդգորնին:

Ընկերնե՛ր, դուք արդեն ծանոթացել եք ընկ. Իլյիչովի զեկուցմանը, ընկեր Ն. Ս. Խրուշչովի ճառին, ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներին ու մյուս նյութերին: Ուստի թույլ տվեք կանգ առնել միայն ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումների կենսագործման ասպարեզում մեր անելիքների վրա:



ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը տեղի ունեցավ սովետական ժողովրդի քաղաքական ու ստեղծագործական աննախընթաց վերելքի, էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի բուռն զարգացման, մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքում լենինիզմի ռևոլյուցիոն ոգու հաղթանակի պայմաններում:

ՍՄԿՊ XX համագումարում պսակազերծ անելով Ստալինի անձի պաշտամունքը, պարտիան վճռականապես վերջ տվեց պարտիական ու պետական կյանքի լենինյան նորմերի խախտումներին, էկոնոմիկայի, քաղաքականության, գաղափարախոսության ղեկավարման գործում եղած դոգմատիզմին և դրանով իսկ լայն ասպարեզ բացեց ժողովրդական մասսաների նախաձեռնության ու ակտիվության զարգացման համար:

Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հարկադրված էր շատ դժվարություններ ու դիմադրություններ հաղթահարել անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների վերացման համար, մեր առաջընթացն արգելակող բոլոր խոչընդոտների դեմ մղվող պայքարում: Պարտիայի լենինյան հաստատուն ու հետևողական կուրսը նպաստեց հաղթահարելու բոլոր խոչընդոտները և աչքի ընկնող հաղթանակներ տանելու ներքին ու արտաքին քաղաքականության, էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում: XX համագումարից հետո պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեն Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ կազմակերպչական, քաղաքական և տեսական հսկայական աշխատանք կատարեց, ցույց տվեց կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման պայմաններում մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման օրինակներ: Այդ ժամանակաշրջանում անչափ աճեց Սովետական Միության կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հեղինակությունը ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում:

Սովետական մարդիկ իրավամբ հպարտանում են վերջին տասը տարում երկրի տնտեսական, քաղաքական, գաղափարական կյանքում ձեռք բերած հաջողություններով: Ընկ. Լ. Ֆ. Իլյիչովի զեկուցման մեջ և ընկ. Ն. Ս. Խրուշչովի ճառում բերված են արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի բուռն վերելքի ցուցանիշները: Սովետական Միության արդյունաբերության աճի տեմպերը զգալիորեն գերազանցում են իմպերիալիստական լագերի ամենազարգացած երկրի՝ ԱՄՆ-ի աճի տեմպերին:



Պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումի օրերին փայլուն հաջողությամբ պսակվեց փառապանծ տիեզերագնացներ Վալենտինա Տերեշկովայի և Վալերի Բիկովսկու անօրինակ թռիչքը: Աշխարհի բոլոր առաջադեմ մարդիկ ծափահարում էին մեր հերոսներին: Տիեզերքի յուրացման գործում սովետական մարդկանց, մեր հայրենիքի չտեսնված հաջողությունը՝ էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի զարգացման բնագավառում ձեռք բերված փիթխարի հաղթանակների խտացված արտահայտությունն է, սոցիալիստական հասարակարգի առավելությունների մարմնացումը:

Անցած տասնամյակի վեհությունը ակնառու երևում է նաև Սովետական Հայաստանի օրինակով: Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը վերջին տասը տարում մեծացել է 2,6 անգամ, այդ թվում՝ քիմիական արդյունաբերության ծավալը՝ 3,6, մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 5,3 անգամ: Հետաքրքրական է նշել, որ 1953 թվականից մինչև 1963 թվականը ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 2,5 անգամ ավելի շատ արտադրանք է թողարկել, քան 1921 թվականից մինչև 1952 թվականը: Այդ ժամանակամիջոցում կառուցվել ու շահագործման են հանձնվել 75 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, երկու միլիոն 817 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն՝ նախորդ 32 տարվա մեկ միլիոն 907 հազար քառակուսի մետրի դիմաց: Այդ նույն ժամանակամիջոցում ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները երկու անգամ գերազանցել են 1921—1952 թվականների ներդրումները:

Վերջին տասը տարում զգալիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: 1953-ից մինչև 1962 թվականը մսի արտադրությունն ավելացել է 63, կաթինը՝ 86, բրդինը՝ 60, ձվինը՝ 125 տոկոսով: Նույն ժամանակամիջոցում մեծ հաջողություններ են ձեռք բերվել ռեսպուբլիկայի բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գործում: Բավական է նշել, որ միայն ապրանքաշրջանառությունն ավելացել է 2,3 անգամ:

Իրադարձությունների նշանակալիության ու կարևորության տեսակետից անցած տասնամյակը, հիրավի, մի ամբողջ պատմական ժամանակաշրջան է մեր պարտիայի ու սովետական ժողովրդի կյանքում: Պարտիայի և կառավարության գործունեության մեջ լենինյան սկզբունքների վերականգնումը նպաստեց սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմանը, ամենալայն մասսաների ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության չտեսնված աճին:

Կոմունիստական շինարարության բնագավառում վերջին տասը տարում սովետական երկրի ձեռք բերած փիթխարի հաջողությունները հաստատում են մեր լենինյան պարտիայի քաղաքականության ճշտությունը, մարքսիստական-լենինյան տեսության, մեր ռևոլյուցիոն գաղափարախոսության կենսահաստատ ուժը, սովետական հասարակարգի անվիճելի առավելությունները կապիտալիստական կարգերի հանդեպ:

Մեր լենինյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ակտիվ հարձակում է գործում կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում: Անցյալ տարի ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան ու նոյեմբերյան պլենումներում լուծվեցին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության, ժողովրդական տնտեսության ղեկավարման հարցերը: Արդի պայմաններում, ստեղծագործաբար վերականգնելով ու զարգացնելով ժողովրդական տնտեսության ղեկավարման լենինյան սկզբունքները, կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, պարտիան մշակեց չտեսնված մասշտաբի միջոցառումներ ու ձեռնամուխ եղավ դրանց իրականացմանը,

որոնց նպատակն է արագացնել մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական
բազայի ստեղծումը:

Սովետական ժողովուրդը, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ,
ապահովելով ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը,
թևակոխել է ծավալուն կոմունիստական շինարարության ժամանակաշրջանը: Այս
պայմաններում հասունացել էր պարտիայի գաղափարական աշխատանքը առա-
վել բարելավելու անհրաժեշտությունը, պետք էր այն համապատասխանեցնել սո-
ցիալ-քաղաքական այն փոփոխություններին, որոնք մեր հասարակության կյան-
քում տեղի են ունեցել վերջին տարիներս:

Հաշվի առնելով, որ գաղափարական գործունեության ոլորտը կոմունիզմի
հաղթանակի համար մղվող պայքարի կարևորագույն ճակատներից մեկն է, պար-
տիան իրեն հատուկ եռանդով ու հետևողականությամբ ձեռնամուխ եղավ գաղա-
փարական-դաստիարակչական աշխատանքի արմատական բարելավմանը:

Մեր լենինյան պարտիան, որպես սովետական ժողովրդի առաջնորդը և կո-
մունիստական շինարարության մեծ կազմակերպիչը, անդուլ կատարելագործում է
իր աշխատանքի մեթոդները, բացահայտում սոցիալիստական հասարակության անըս-
պառ ռեզերվները և միասնական նպատակին է ուղղում մասսաների՝ աղբյուրի
պես հորդող ստեղծագործական ակտիվությունը:

Ընկեր Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ՝ կոմունիստական գա-
ղափարախոսությունը՝ մարքսիստական-լենինյան ուսմունքն այն ցեմենտն է, որը
համակցում է միլիոնների կամքն ու գործողությունները, միաձուլում պարտիային
ու ժողովրդին:

ՍՄԿՊ ծրագրում հստակ սահմանված են արդի էտապում գաղափարական
աշխատանքի գլխավոր խնդիրները, այն է՝ բոլոր աշխատավորներին դաստիարա-
կել բարձր գաղափարայնության և կոմունիզմի նկատմամբ նվիրվածության, աշ-
խատանքի ու հասարակական տնտեսության հանդեպ կոմունիստական վերա-
բերմունքի ոգով, հաղթահարել բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկ-
ները, ստեղծել բոլոր հնարավորությունները անհատի բազմակողմանի, ներդաշ-
նակ զարգացման համար, ապահովել սովետական կուլտուրայի անկանգ բարգա-
վաճումը:

Ելակետ ունենալով ծրագրային այդ դրույթները, պարտիան գաղափարական
աշխատանքի հարցն իր ամբողջ ծավալով դրեց Կենտկոմի պլենումի քննարկմանը,
որի որոշումները, անտարակույս, հսկայական ներգործություն կունենան մասսա-
ների մեջ կատարվող ամբողջ գաղափարական-դաստիարակչական աշխատանքի
բարելավման վրա, կապահովեն ՍՄԿՊ ծրագրի առաջադրած հոյակապ խնդիրների
հաջող լուծումը:

Դրա հետ մեկտեղ պետք է նկատի ունենալ, որ կոմունիստական շինարարու-
թյան բնագավառում սովետական ժողովրդի վճռական հաջողությունները, սոցիա-
լիստական երկրների բոլոր ժողովուրդների նվաճումները համաշխարհային ար-
նայում ստեղծել են դասակարգային ուժերի նոր հարաբերակցություն, պայքարի նոր
ձևեր ու մեթոդներ:

Խիստ բնորոշ է այն, որ որքան սոցիալիզմը նորանոր հաղթանակներ է ձեռք
բերում և հզորանում, իմպերիալիստները, չթուլացնելով տնտեսական ճակատում
մեր դեմ նյութվող դավերը, այժմ պայքարի ծանրության կենտրոնը փոխադրում են
գաղափարախոսության ոլորտը, այսինքն՝ մարդկանց մտքերին ու սրտերին տիրե-
լու համար մղվող կռվի ոլորտը:



Կոմունիզմի թշնամիները տեսնելով մարքս-լենինյան գաղափարախոսության
ուժը, ուժեղացնում են գրոհներն ընդդեմ այդ գաղափարախոսության, գլխավոր
հույսը դնելով սոցիալիստական երկրների դեմ գաղափարական դիվերսիաների վրա,
փորձելով դեմագոգիկ պրոպագանդայով թունավորել մարդկանց հոգին ու գիտակ-
ցությունը: Բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող անհաշտ պայքարում
պարտիան վճռական հարվածներ կհասցնի դասակարգային թշնամիներին, ընկ.
Ն. Ս. Խրուշչովի դիպուկ արտահայտությամբ ասած նաև գաղափարական այն
ենթակուլակներին, որոնք ենթարկվում են բուրժուական ու կոմունիստական գաղա-
փարախոսությունների խաղաղ գոյակցության իմպերիալիստական կառանցանքնե-
րին, որոնք համառելով իրենց սխալներում, օբյեկտիվորեն օգնում են մեր դասակար-
գային թշնամիներին:

Ահա թե ինչու արդի պայմաններում ամբողջ գաղափարական աշխատանքի
արմատական բարելավման, բուրժուական գաղափարախոսության դեմ հարձակո-
ղական պայքարի ուժեղացման նպատակով պարտիայի մշակած միջոցառումները
կենսական անհրաժեշտություն են: Հիրավի, ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի
որոշումներին տված սովետական ժողովրդի միահամուռ հավանությունը կրկին ու
կրկին ցույց տվեց, որ բուրժուական գաղափարախոսության տրոյական ձին տեղ
չունի և չի կարող ունենալ սովետական մարդկանց գաղափարական կյանքում:
Մարդկանց մտքերի ու սրտերի համար, ինչպես և էկոնոմիկայի բնագավառում ծա-
վալված դասակարգային մեծ ճակատամարտում, *անտարակույս, կհաղթանակի
մարքս-լենինյան կենսահաստատ գաղափարախոսությունը:*

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, որտեղ բացառիկ պար-
կությամբ, լենինաբար սահմանված են արդի պայմաններում գաղափարական աշ-
խատանքի կոնկրետ խնդիրները, ո՛չ միայն հսկայական նշանակություն ունեն պար-
տիայի ու սովետական ժողովրդի գաղափարական-քաղաքական կյանքի համար,
այլև ունեն միջազգային մեծ նշանակություն:

Մարքս-լենինյան եղբայրական պարտիաները, մեր արտասահմանյան բոլոր
բարեկամները բարձր են գնահատում Սովետական Միության կոմունիստական
պարտիայի ջանքերն ու փորձը սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքա-
րում: Նրանք մեծ հետաքրքրությամբ էին հետևում ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլե-
նումի ընթացքին:

Ընկերնե՛ր. Հայաստանի, ինչպես և ամբողջ Սովետական Միության կոմունիստ-
ները, բոլոր աշխատավորները միահամուռ հավանությամբ ընդունեցին ՍՄԿՊ
Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները: Քաղաքային, շրջանային, գյուղական
և արդյունաբերական պարտիական կոմիտեները, սկզբնական պարտիական կազմա-
կերպություններն արդեն ձեռնամուխ են եղել պատմական այդ որոշումների լայն
պրոպագանդմանը, պարզաբանմանն ու կենսագործմանը:

Գաղափարական աշխատանքի բարելավման ուղղությամբ վերջին ժամանակ-
ներս պարտիայի կիրառած միջոցառումների կոմպլեքսում կարևոր նշանակություն
ունեցան գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի և կառավարու-
թյան ղեկավարների հանդիպումները: Սովետական Հայաստանի բանվորները,
կոլտնտեսականները, ինտելիգենցիան Ն. Ս. Խրուշչովի հիանալի ճառը մեծ գոհու-
նակությամբ ու ոգևորությամբ ընդունեցին, որպես սովետական բազմազգ գրակա-
նության ու արվեստի հետագա զարգացման և պարտիայի ամբողջ գաղափա-
րական աշխատանքի վերելքի ծրագիր:

Ստեղծագործական միությունների հավաքներում, ստեղծագործական ինտելի-

գենցիայի ռեսպուբլիկական ժողովում և գաղափարական աշխատանքին նվիրված փնջային խորհրդակցություններում այդ հանդիպումների նյութերի քննարկումը ցույց տվեց, որ մեր ինտելիգենցիան, բոլոր աշխատավորները խորապես ըմբռնում են նոր խնդիրները, կրկին դրսևորվեցին նրանց նվիրվածությունը մարքս-լենինյան գաղափարներին, ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի համախմբվածությունն ու նրա պատրաստակամությունը՝ պատվով կատարելու աշխատավորների կոմունիստական դաստիարակության իր կարևոր միսիան:

Իրագործելով ՍՄԿԿ XXII համագումարի որոշումները, Հայաստանի պարտիական կազմակերպությունը դրական մեծ աշխատանք է կատարել աշխատավորների մարքս-լենինյան դաստիարակության ուղղությամբ: Գաղափարական աշխատանքի հարցերը քննարկվեցին Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի պլենումում և նախագահության նիստերում:

Պարտիական կազմակերպությունների գաղափարական գործունեության հիմքը մասսաների քաղաքական կրթությունն ու լուսավորությունն է: Պարտիական կազմակերպությունները վերջին ժամանակներս ավելի մեծ ուշադրություն են նվիրում գաղափարական աշխատանքի այդ բնագավառին: Քաղաքական լուսավորության սիստեմում մարքսիզմ-լենինիզմի տեսությունը, պարտիայի պատմությունն ու նոր ծրագիրը, քաղաքատնտեսությունն ու կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրում են ավելի քան 160 հազար կոմունիստներ և անպարտիականներ: Ընդլայնվել է ինքնուրույն ուսուցման սեմինարային ձևը: 1962—1963 ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում էին 3335 սեմինար, որոնցում ընդգրկված էին 69400 մարդ:

Պարտիական կազմակերպությունները մեծ նշանակություն են տալիս կադրերի տնտեսագիտական կրթությանը: Ներկայումս ավելի քան 60 հազար մարդ ուսումնասիրում են մարքս-լենինյան տնտեսագիտությունը, ինչպես նաև կապիտալ ներդրումների, արտադրության ռեզերվների առավել արդյունավետ օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման և կոնկրետ էկոնոմիկայի այլ հարցեր: Մենք պետք է հետագայում էլ կատարելագործենք կադրերի տնտեսագիտական կրթությունը, որը կարևոր դեր կխաղա ժողովրդական տնտեսության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման գործում:

Պարտիական կազմակերպություններն սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել կոմունիստական աշխատանքի շարժմանը: Ռեսպուբլիկայում կոմունիստական աշխատանքի շարժմանը մասնակցում են ավելի քան 105 հազար մարդ, 93 արդյունաբերական ձեռնարկություն, 538 ցեխ, հերթափոխ և տեղամաս, հազարավոր բրիգադներ: Նրանցից կոմունիստական աշխատանքի հարվածայինների և կոլեկտիվների բարձր կոչմանն են արժանացել 25 հազար մարդ, 123 ցեխ, հերթափոխ ու տեղամաս, 1164 բրիգադա: Կարելի է թվարկել արտադրության բազմահազար առաջավորների, որոնք աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի փայլուն օրինակներ են տալիս:

Կոմունիստական աշխատանքի համար մղվող պայքարում ծնունդ առան և արմատավորվում են մրցության մասնակիցների այնպիսի օգտակար նախաձեռնություններ, ինչպիսիք են՝ յուրաքանչյուր րոպեն լիարժեք օգտագործելը, հաստոցների կարողությունը լրիվ գործադրելը, երիտասարդ բանվորներին հասարակական հիմունքներով սովորեցնելը և այլն:

Երևանի, Լենինականի, Կիրովականի և մի քանի այլ պարտիական կազմակերպություններում կուտակված է կոմունիստական աշխատանքի շարժման պարտիական



ղեկավարման որոշ դրական փորձ: Պարտիական կազմակերպությունները պետք է ընդհանրացնեն և տարածեն այն, է՛լ ավելի կատարելագործելով այդ հրաշալի շարժման ղեկավարումը, այն դարձնելով իրոք մասսայական:

Տարեցտարի ստվարանում է ռացիոնալիզատորների և գյուտարարների բանակը, բարձրանում նրա դերը էկոնոմիկայի զարգացման և մասսաների աշխատանքային դաստիարակության գործում: 1962 թվականին և 1963 թվականի առաջին եռամսյակում ռեսպուբլիկայում եղել են 14048 ռացիոնալիզատոր ու գյուտարար: Այդ ժամանակամիջոցում արտադրության մեջ արմատավորվել են 12824 ռացիոնալիզատորական առաջարկ և 13 գյուտ, որոնք տվել են 11 միլիոն 599 հազար ռուբլու տնտեսական օգուտ:

Ձեռնարկություններում և հիմնարկներում վերջին տարիներս ավելի բազմազան են դարձել հասարակական աշխատանքի ձևերը: Կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների նախաձեռնությամբ ստեղծվել և գործում են երիտասարդ ռացիոնալիզատորների ինստիտուտներ, կոնստրուկտորական ու նախագծային բյուրոներ, երաժշտական դպրոցներ, արվեստասերների ակումբներ, տնային կառավարչություններին առընթեր կոմունիստական կենցաղին աջակցող խորհուրդներ և այլն:

Այդ արժեքավոր նախաձեռնությունները նպաստում են մարդկանց միջև կոմունիստական նոր հարաբերությունների ձևավորմանը, նրանց աշխատանքային ու հասարակական գործունեության ակտիվացմանը, ընկերասիրության, փոխադարձ օգնության ու բարեկամության ոգով դաստիարակելուն:

Աշխատանքի պրոցեսում ծնունդ են առնում մասսաների քաղաքական լուսավորության ու դաստիարակության հետաքրքրական նոր ձևեր: Օրինակ՝ վերջին ժամանակներս լայն տարածում ստացան կուլտուրայի ժողովրդական համալսարանները, որոնք մեծ մասսայականություն են վայելում աշխատավորության շրջանում: Կուլտուրայի ժողովրդական համալսարաններում այժմ սովորում են ավելի քան 10 հազար մարդ: Ուշադրության է արժանի Իջևանի գյուղական արտադրական պարտիական և կոմերիտական կոմիտեների դրական փորձը. այստեղ ստեղծվել է *ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության համալսարան*, ուր աշխատավորները ծանոթանում են եղբայրական ժողովուրդների էկոնոմիկային, գիտությանն ու կուլտուրային:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն վգալի գործ են կատարել աշխատավորներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու ուղղությամբ: Լավ տրադիցիա է դարձել Հայաստանի և Սովետական Միության այլ ռեսպուբլիկաների քաղաքների, շրջանների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների սոցիալիստական մրցությունը:

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորների սոցիալիստական մրցությունը դուրս է եկել Անդրկովկասյան ռեսպուբլիկաների սահմաններից: Դրա վկայությունն են Երևանի և Կիևի աշխատավորների, Երևանի և Վիլնյուսի կաբելի գործարանների բանվորների մրցությունը, ռեսպուբլիկայի շատ ձեռնարկությունների մրցությունը՝ Մոսկվայի, Լենինգրադի, Իվանովոյի և երկրի այլ քաղաքների ձեռնարկությունների կոլեկտիվների հետ: Շարունակ ամրապնդվում են գիտության, կուլտուրայի ու արվեստի գործիչների կապերը եղբայրական ռեսպուբլիկաների ստեղծագործական կազմակերպությունների և գործիչների հետ: Վերջերս ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքում նշանավոր իրադարձություն և եղբայրական երկու ռեսպուբլիկաների

արվեստի աշխատողների ստեղծագործական կապերի ամրապնդման կարևոր միջոցառում հանդիսացան Թբիլիսիի Փալիաշվիլու անվան օպերայի և բալետի ակադեմիական թատրոնի տաղանդավոր կոլեկտիվի ելույթները Երևանում: Մայրաքաղաքի և Հայաստանի մյուս բնակավայրերի հանդիսատեսներն մոտիկից ծանոթացան եղբայրական Վրաստանի օպերային ու բալետային բարձր արվեստին: Միևնույն ժամանակ մեկ ամիս Երևանի Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի ակադեմիական թատրոնի կոլեկտիվը մեծ հաջողությամբ ելույթներ էր ունենում Թբիլիսիում:

Սովետական գիտության ու տեխնիկայի զարգացման, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմության ուղղությամբ մեծ գործ են կատարում գիտահետազոտական ինստիտուտների և լաբորատորիաների կոլեկտիվները: Իրենց գործունեությունը նկատելիորեն բարելավել են հասարակական գիտությունների ինստիտուտները:

Դժվար է հանգամանորեն շարադրել այն ամբողջ աշխատանքը, որ կատարել են ռեսպուբլիկայի բազմաթիվ գիտահետազոտական հիմնարկները: Նշանակալի չափով զարգացել է հաշվիչ-էլեկտրոնային տեխնիկան, մասնավորապես մեքենայական թարգմանության ասպարեզում: «Արագած» մեքենայի վրա ստացվել է մասնագիտական տեքստի առաջին փորձնական թարգմանությունը ռուսերենից հայերեն: Հետաքրքրական փորձ է կատարում ագրոքիմիայի լաբորատորիան գյուղատնտեսական կուլտուրաներն անհող աճեցնելու ուղղությամբ: Բյուրականի աստրոֆիզիկական աստղադիտարանի կոլեկտիվը ակադեմիկոս Վ. Համբարձումյանի ղեկավարությամբ չափազանց արժեքավոր և հետաքրքրական հետազոտություններ է կատարում գալակտիկաների ու մոլորակների ուսումնասիրման, տիեզերքի յուրացման ուղղությամբ:

Ժողովրդական տնտեսության ղեկավարումը կատարելագործելու, մասսաների հետ կազմակերպչական և գաղափարական-քաղաքական աշխատանքը բարելավելու նպատակով մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի գործադրած միջոցառումները ավելի են բարձրացնում աշխատավորների ակտիվությունը ժողովրդական տնտեսության ավելի արագ զարգացման համար մղվող պայքարում: Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ժամկետից շուտ՝ հունիսի 26-ին, կատարեց համախառն արտադրանքի թողարկման 1963 թվականի՝ յոթնամյակի հինգերորդ տարվա կիսամյա պլանը:

Լուրջ հաջողությունների են հասել նաև մեր շինարարներն ու մոնտաժողները: Ինչպես հայտնի է, 1962 թվականի վերջին և ընթացիկ տարում նրանք ավարտեցին և գործարկեցին այնպիսի խոշոր ու կարևոր ձեռնարկություններ, ինչպես՝ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանը, Երևանի ջերմաէլեկտրակայանի առաջին հերթը, պոլիվինիլացետատ գործարանի ացետիլցելյուլոզի ցեխերի կոմպլեքսը, Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, ավարտված է Երևան-Սևան երկաթուղագծի էլեկտրիֆիկացումը և այլն:

Անձնվեր գործունեություն են ծավալել գյուղատնտեսության բնագավառի աշխատողները և, չնայած գարնան ամիսների անբարենպաստ եղանակներին, նրանք ամեն ինչ անում են դժվարությունները հաղթահարելու և մսի, կաթի, բրդի, ձվի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ու դրանք պետությանը վաճառելու 1963 թվականի սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար:

Իհարկե, սխալ կլիներ գերագնահատել մեր կատարած գաղափարական աշ-



խատանքը: Այդ բնագավառում մենք բազմաթիվ լուրջ թերություններ ու բացեր ունենք: Մենք պետք է պարզորեն ասենք եղած թերությունների, չլուծված խնդիրների մասին, միջոցներ ձեռք առնենք հաջողությամբ կենսագործելու Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, հասնելու գաղափարական աշխատանքի արմատական բարելավման՝ ռեսպուբլիկայի բոլոր պարտիական կազմակերպություններում:

Գաղափարական աշխատանքի գլխավոր թերություններից մեկը դրա անբավարար կապն ու զուգակցումն է պարտիական կազմակերպությունների առջև ծառացած պրակտիկ խնդիրների հետ: Գաղափարական աշխատանքը լրիվ ուղղված չէ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու նպատակին: Զգալի չափով հենց դրանով պետք է բացատրել, որ մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ անբավարար են կատարում իրենց պլանները, շատ ձեռնարկություններում ցածր է աշխատանքային կարգապահությունը, առկա է կադրերի մեծ հոսունություն: Գաղափարական-դաստիարակչական աշխատանքը հատկապես թույլ է առևտրի սիստեմում և շինարարական կազմակերպություններում:

Քաղաքական լուսավորության սիստեմում դեռևս քիչ ուշադրություն է հատկացվում մարքսիզմ-լենինիզմի ինքնուրույն ուսումնասիրության, կադրերի քաղաքական ու արտադրա-տեխնիկական ուսուցումը սերտորեն շաղկապելու հարցերին:

Հատկապես շատ թերություններ և ֆորմալիզմի տարրեր կան դասախոսական պրոպագանդայում: Պարտիական կազմակերպությունների հսկողության բացակայության պատճառով ձեռնարկությունների և հիմնարկների կոլեկտիվներում կարդացվում են ոչ քիչ թվով ձանձրալի ու անհետաքրքիր դասախոսություններ, որոնք, անշուշտ, հոգեկան սնունդ չեն տալիս մարդկանց մտքին: Մենք պետք է ավելի լուրջ մոտենանք դասախոսների ընտրությանը, բարձրացնենք նրանց պատասխանատվությունը կարդացվող դասախոսությունների համար: Դասախոսական պրոպագանդայի մակարդակի բարձրացումը մեր գաղափարական աշխատանքի կարևորագույն խնդիրներից մեկն է:

Պարտիական կազմակերպություններն անբավարար են աշխատում առանձին մարդկանց հետ, կադրերին գաղափարապես թույլ են կոփում պրակտիկ գործերի և դրական օրինակների հիման վրա:

Դասախոսությունները, զեկուցումները, զրույցներն ու սեմինարները, անշուշտ, մասսաների քաղաքական դաստիարակության փորձված ձևեր են և պետք է ամեն ինչ անել, բարձրացնելու դրանց գաղափարական մակարդակը, դրանք դարձնելու ավելի նպատակասլաց, համոզիչ ու հետաքրքիր: Սակայն մարդկանց վրա դրական կամ բացասական որոշակի ազդեցություն են գործում մեր ղեկավար կադրերի աշխատանքի մեթոդներն ու նրանց պրակտիկ գործերը: Այսպես, օրինակ, ինչպե՞ս կարող է Ձերժինսկու անվան գործարանի դիրեկտորն իր ենթակաների մեջ ազնվության, պատասխանատվության և պետության ու ժողովրդի հանդեպ բարձր պարտքի զգացում դաստիարակել, եթե նա շփոթ է ստեղծել թողարկվող արտադրանքի հաշվառման գործում և մի շարք դեպքերում ամսվա վերջին անավարտ հաստոցները մտցվել են պլանի կատարողականի մեջ: Պարզ է, որ դիրեկտոր ընկ. Մնացականյանի և գործարանի մյուս ղեկավար կադրերի նման արատավոր գործունեությունը բացասաբար է ազդում կոլեկտիվի դաստիարակության վրա:

Կամ վերցնենք փաստեր ռեսպուբլիկայի շինարարության մինիստրության սիս-

տեմից: Մենք արդեն խոսեցինք շինարարների նվաճումների մասին և դա իրոք այդպես է: Դրա հետ միասին, անցյալ տարի, «Ախթալաշին» տրեստը (կառավարիչ ընկ. Թումանյան), «Կիրշին» տրեստը (կառավարիչ ընկ. Առաքելյան), Երևանի № 2 շինտրեստը (կառավարիչ ընկ. Բայբուրթյան) և մի քանի այլ շինարարական տրեստներ բնակելի տները շահագործման հանձնեցին մեծ թերություններով: Առանձին շենքերի հանձնումից հետո հարկ եղավ մի քանի ամսվա աշխատանք կատարել՝ թերությունները վերացնելու համար: Մի շարք դեպքերում շենքերը բնակեցվում էին առանց բարեկարգման աշխատանքներ կատարելու, որն առաջացնում էր նորաբնակների արդարացի դժգոհությունը: Ինչի՞ նման է այդ: Շինարարության մինիստրության ղեկավարությունը (ընկ. Կ. Մարության) և պարտիական կազմակերպությունը պետք է լուրջ հետևություններ անեն և *շինարարության կադրերին դաստիարակեն բարձր պատասխանատվության ոգով, ինչպես շինարարական աշխատանքների տեմպերի, այնպես էլ դրանց որակի համար:*

Ամասիայի սովխոզի դիրեկտոր ընկ. Մարտիրոսյանի անփութության պատճառով (ինչպես հայտաբերել են Պարտիական-պետական վերահսկողության կոմիտեի աշխատողները) աշխատավարձ էր դուրս գրվել կեղծ ռոճկացուցակներով, այսինքն՝ աշխատավարձ էր վճարվում այնպիսի մարդկանց, որոնք փաստորեն սովխոզում չէին աշխատում: Դրանից հետո էլ ինչպե՞ս կարելի է այդպիսի դիրեկտորին համարել կոլեկտիվի դաստիարակ:

Կարելի է բերել ոչ քիչ թվով նման օրինակներ, որոնց հետ երբեք հաշտվել չի կարելի: Ձեռնարկությունների, հիմնարկների ղեկավարները և բոլոր ղեկավար կադրերը պարտավոր են գործնականում կիրառել աշխատանքի լենինյան ոճն ու մեթոդները, ամեն ինչից բարձր դասել պետության և ժողովրդի շահերը, հասնել իրենց իրավասության տակ գտնվող ձեռնարկությունների ու հիմնարկների գործունեության լավ ցուցանիշների, թույլ չտալ սուբյեկտիվ, անարդարացի վերաբերմունք կադրերի նկատմամբ, *պահանջկոտությունն ու խստությունը կուգորդել հոգեկան ջերմության, մարդկանց նկատմամբ ուշադիր և սգայուն վերաբերմունքի հետ:* Գործի, հանձնարարված աշխատանքի նկատմամբ մեր կադրերի միայն այսպիսի, իրոք լենինյան վերաբերմունքը լավ արդյունքներ կտա տնտեսական գործունեության ասպարեզում և դաստիարակչական ճիշտ ներգործություն կունենա աշխատավորական մասսաների վրա:

Իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, պարտիական կազմակերպությունները պետք է բարձրացնեն մեր պարտիական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական ղեկավար կադրերի պատասխանատվությունը ինչպես տնտեսական ցուցանիշների, այնպես էլ ձեռնարկությունների և հիմնարկների կոլեկտիվների բարոյա-քաղաքական վիճակի համար: Անհրաժեշտ է ավելի մեծ ուշադրություն նվիրել կադրերին և բոլոր աշխատավորներին գործնական աշխատանքով ու դրական օրինակներով դաստիարակելուն, հարկավոր է հաստատապես հիշել, որ նոր աշխարհայացքի, նոր բարոյականության տեր մարդը ձևավորվում է կոլեկտիվում:

Մեր երիտասարդությունը ժողովրդի պարծանքն է: Նա անձնվիրաբար աշխատում է յոթնամյա պլանը հաջողությամբ կատարելու համար: Ռեսպուբլիկայի տասնյակ հազարավոր կոմերիտականներ և արտամիութենական երիտասարդներ ցույց են տալիս աշխատանքի և ուսման նկատմամբ գիտակցական վերաբերմունքի օրինակներ: Մեր երիտասարդությունն անսահման նվիրված է մարքսիզմ-լենինիզմին, կոմունիզմի մեծ գաղափարներին:



Պարտիան միշտ մեծ ուշադրություն է նվիրել ու նվիրում է երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակությանը, որը պետք է կառուցի կոմունիզմը, և ապրի կոմունիզմի օրոք: Բայց արդյո՞ք ամեն ինչ բարեհաջող է երիտասարդության հետ կատարվող դաստիարակչական աշխատանքում: Դժբախտաբար, ոչ: Այդ մասին ասվեց նաև մեր պարտիայի լենինյան կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումում:

Մեզ անհանգստացնում է ոչ բավականաչափ նպատակասլաց գաղափարական-դաստիարակչական աշխատանքը դպրոցներում, տեխնիկումներում և բուհերում՝ այնտեղ, որտեղ ձևավորվում է աճող սերնդի կոմունիստական աշխարհայացքը: Մեզանում հատկապես թույլ է երիտասարդության աշխատանքային դաստիարակությունը: Դրանով պետք է բացատրել այն, որ իրենց պարտքը ազնվաբար կատարող հազարավոր երիտասարդների կողքին կան այնպիսիք, որոնք խույս են տալիս հանրօգուտ աշխատանքից և հեշտ վաստակ են որոնում, ունեն քաղքենիական հակումներ ու քաղքենիական ճաշակ, ապոլիտիկ, նիհիլիստական վերաբերմունք են ցույց տալիս այն ամենի նկատմամբ, ինչ արվում է. կան անբաններ, բարոյական այլանդակներ և սկեպտիկներ, որոնք հակահասարակական, պարազիտային կյանք են վարում:

Պարտիական և կոմերիտական կազմակերպությունները սիստեմատիկ պայքար ու դաստիարակչական աշխատանք պետք է ծավալեն երիտասարդության շրջանում, արմատախիլ անելու այն երևույթները, որոնք խանգարում են նոր մարդու ձևավորմանը: Նրանք կոչված են նաև անհաշտ պայքար ծավալելու սոցիալիստական սեփականության հափշտակումների, գողերի, խուլիգանների և կաշառակերների դեմ:

Դպրոցը ուսուցման ու դաստիարակության կարևոր օղակ է: Ես չեմ խոսում այն դրական աշխատանքի մասին, որը կատարվել է *Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին* օրենքի իրականացման ուղղությամբ: Մենք պետք է մեր ուշադրությունն ամենից առաջ կենտրոնացնենք այս գործում եղած թերությունների վերացման վրա:

Ռեսպուբլիկայի և, մասնավորապես, Երևան քաղաքի դպրոցներում մեծ չափերի են հասնում մաղումները և երկտարեցիությունը: 1962—1963 ուսումնական տարում նախնական տվյալներով ռեսպուբլիկայի դպրոցներից մաղվել են ավելի քան 7800 աշակերտ և երկրորդ տարին նույն դասարանում են մնացել ավելի քան 17.500-ը, այդ թվում, ցածր դասարաններում ավելի քան 8000 երեխա: Չէ՞ որ սրանք շատ տագնապալի փաստեր են: Իսկ ի՞նչ արդյունավետ միջոցներ են ձեռք առնում ռեսպուբլիկայի ժողովրդական կրթության օրգանները և կոմերիտմիությունը: Այս գործում լուսավորության մինիստրության սիստեմի ղեկավար կադրերը պատշաճ պատասխանատվություն չեն ցուցաբերում:

Երեխաների ուսուցման և դաստիարակության գործում մեծ է սովետական ուսուցչի դերը: Մեզանում քիչ չեն իրենց գործը սիրող և քաջահմուտ, եռանդուն ու բարեխիղճ ուսուցիչները, որոնց անունները ժողովուրդը մեծ հարգանքով ու երախտագիտությամբ է արտասանում: Ռեսպուբլիկայի միայն վաստակավոր ուսուցիչների թիվը կազմում է 823: Բայց կան նաև այնպիսի ուսուցիչներ, որոնց կրթական ու կուլտուրական մակարդակը ցածր է և, զարմանալի չէ, որ նրանք վատ են կազմակերպում ուսումնա-դաստիարակչական գործը:

Ժողովրդական կրթության օրգանները չպետք է թույլ տան ուսուցչական կադրերի հոսունություն և բոլոր դպրոցները պետք է կոմպլեկտավորեն պատրաստ-

ված ուսուցիչներով: Ընդսմին, չի կարելի հաշտվել այնպիսի փաստերի հետ, երբ Մարտունու, Եղեգնաձորի, Սևանի և մի քանի այլ գյուղական արտադրական վարչությունների տերիտորիաներում պարտիական և սովետական ղեկավարներն անտարբեր վերաբերմունք են ցուցաբերում երիտասարդ ուսուցիչների նյութական-կենցաղային պայմանների ապահովման նկատմամբ:

Անբավարար են լուծվում նաև ռեսպուբլիկայի հանրակրթական դպրոցների աշակերտների արտադրական ուսուցման և պրոֆեսիոնալ պատրաստության հարցերը: Մինչդեռ Երևանի ավտոպահեստամասերի, Լենինականի հղկող հաստոցների գործարանների և այլ ձեռնարկությունների ղեկավարները ձևական-բյուրոկրատական վերաբերմունք են ցույց տալիս դպրոցականների արտադրական ուսուցմանը:

Պարտիական կազմակերպությունների և ժողովրդական կրթության օրգանների խնդիրն է՝ արմատապես բարելավել ուսումնական և դաստիարակչական աշխատանքը դպրոցներում, ավելի շատ հոգ տանել ուսուցիչների գաղափարական կոփման, նրանց նյութական պայմանների բարելավման մասին: «Ժողովրդական ուսուցիչը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— պարտիայի գլխավոր հենարանն է ժողովրդի կուլտուրայի բարձրացման համար մղվող պայքարում, պարտիայի ամենամոտ մարդը նոր մարդու դաստիարակության գործում»: Մենք պետք է ամեն ինչ անենք՝ բարձրացնելու ուսուցչի դերն ու հեղինակությունը աճող սերնդի կոմունիստական դաստիարակության ասպարեզում:

Ինչպես հայտնի է, անցյալ ուսումնական տարվանից դպրոցներում մտցված է նոր առարկա՝ հասարակագիտություն: Ժողովրդական կրթության օրգանների խնդիրն է՝ ապահովել այդ կարևորագույն առարկայի դասավանդման բարձր որակը, որը, անտարակույս, կնպաստի դպրոցականների քաղաքական դաստիարակության հետագա բարելավմանը:

Պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, ծնողները պետք է գործեն բարձր պատասխանատվության կզացումով և միասնական ճակատով, հմտորեն օգտագործեն ներգործության բոլոր ձևերը, որպեսզի հաջողությամբ լուծեն երեխաների հետ կատարվող ամբողջ ուսումնական ու դաստիարակչական աշխատանքի բարելավման կարևորագույն ու շնորհակալ խնդիրը:

Դրա հետ մեկտեղ ռեսպուբլիկայի պետպլանը և շինարարական կազմակերպությունները պարտավոր են առավելագույն արդյունավետությամբ օգտագործել ինչպես պետական միջոցները, այնպես էլ ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների միջոցները, որպեսզի ավելի մեծ թվով նոր դպրոցներ կառուցվեն ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում և աստիճանաբար նվազեցվի ուսուցման հերթափոխայնությունը:

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը մեծ ուշադրություն նվիրեց նաև բուհերի ու տեխնիկումների սովորողների ուսումնա-դաստիարակչական աշխատանքի բարելավման հարցերին: Սովետական Հայաստանում այժմ ունենք 26 հազար ուսանող: Հետաքրքրական է նշել, որ մեր ռեսպուբլիկայում 100 հազար բնակչին ընկնում է 1300 ուսանող, կամ երեք անգամ շատ, քան Ֆրանսիայում ու Բելգիայում:

Այդ, իհարկե, հաճելի և լավ է: Բայց մեր խնդիրն է՝ վերացնել եղած թերությունները, կատարելագործել ուսուցման և դաստիարակության սիստեմն ու մեթոդները բուհերում և տեխնիկումներում: Հատկապես շատ թերություններ կան երեկոյան ու հեռակա ուսուցման սիստեմում տարվող ուսումնա-դաստիարակչական աշխատանքում, առանց արտադրությունից կտրվելու ուսանողների ուսուցման և արտադրական պրակտիկայի կազմակերպման գործում:



Մենք պետք է վճռականապես վերջ տանք դոգմատիզմի, շաբլոնի և կյանքից կտրվածության փաստերին, հատկապես, հասարակական գիտությունների դասավանդման բնագավառում և անշեղորեն կատարենք Կենտկոմի պլենումի դրույթները բարձրագույն դպրոցում դասավանդման գաղափարական-տեսական և գիտական մակարդակը բարձրացնելու և կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ դասավանդման կապն ուժեղացնելու մասին:

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ուժեղացնել գաղափարական-քաղաքական աշխատանքը բուհերի և տեխնիկումների դասախոսների շրջանում, նրանց նկատմամբ ցուցաբերել ավելի մեծ ուշադրություն ու հոգատարություն: Մեր ղեկավար աշխատողները պետք է ավելի հաճախ հանդես գան դասախոսների և ուսուցիչների առջև, նրանց տեղյակ պահեն ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական զարգացման պլաններին:

Անհրաժեշտ է ավելի մեծ օգնություն ցույց տալ բուհերին ու տեխնիկումներին՝ ընդլայնելու ուսումնական բազան և ժամանակակից սարքավորումներով ու գործիքներով հագեցնելու նրանց լաբորատորիաները, ավելի լավ կոորդինացնելու բարձրագույն ուսումնական հաստատությունների ու գիտական հիմնարկների գիտահետազոտական և ուսումնական գործը:

Ուսանողների ուսուցումը, նրանց շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը և արտադրական պրակտիկան պետք է կազմակերպվեն այնպես, որ մեր բուհերն ու տեխնիկումները տան ո՛չ միայն որակյալ մասնագետներ, որը շատ կարևոր է, այլև գաղափարապես համոզված սովետական հայրենասերներ՝ կոմունիզմի ակտիվ կառուցողներ:

Երիտասարդությունը միշտ պետք է գտնվի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Երիտասարդության աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, նրա կուլտուրական ժամանցի ու հանգստի կազմակերպման նկատմամբ ամենօրյա հոգատարությունը մեր ղեկավար կադրերի սրբազան պարտականությունն է:

Ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և կառուցներում պետք է ավելի շատ և ավելի լավ զբաղվեն կոմունիստական աշխատանքի շարժմամբ, հարկավոր է լիովին վերացնել այդ կարևոր գործի ղեկավարման մեջ եղած ֆորմալիզմի բոլոր տարրերը: Հարկավոր է կոմունիստական աշխատանքի շարժումն ավելի ամուր զուգորդել կենցաղում կոմունիստական վերաբերմունքի շարժման հետ: Դա է հասարակական աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և երիտասարդ սերնդին կոմունիստական իդեալների ոգով դաստիարակելու կարևոր գործոնը:

Այլ միջոցառումների հետ մեկտեղ պետք է ավելի սիստեմատիկաբար և հաճախ կազմակերպել երիտասարդության հանդիպումներ մեր ականավոր գիտնականների և հին բոլշևիկների հետ, որոնք անցել են կյանքի մեծ ճանապարհ: Մենք պետք է հմտորեն օգտագործենք գաղափարական զենքի բոլոր տեսակները՝ երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում:

Ընկերնե՛ր: Մեզանում գաղափարական աշխատանքը դեռևս ոչ բոլոր պարտիական կազմակերպություններում է կրում մարտական ու հարձակողական բնույթ: 1963 թվականի փետրվարի 26-ին Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի նախա-

գահությունը որոշում ընդունեց *ՍՄԿՊ XXII համագումարը և Հայաստանի կոմպարտիայի գաղափարական աշխատանքի խնդիրները, կապված Հայաստանի կոմ*պարտիայի Կենտկոմի II պլենումի որոշման կատարման հետ, որի մեջ շարադրվեցին գաղափարական աշխատանքի սկզբունքային բացերն ու սխալները: Այդ որոշումը հավանության արժանացավ սկզբնական պարտկազմակերպություններում: Ընթացիկ տարվա մարտին այդ հարցերի մասին մանրամասն խոսվեց ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի ժողովում:

Որոշ պատմաբաններ, գրողներ, արվեստագետներ իրենց աշխատություններում պատմական իրադարձություններին առանձին դեպքերում դասակարգային-սոցիալական մոտեցում ցուցաբերելու փոխարեն, մոտենում են նեղ-ազգային դիրքերից: Անթույլատրելի է, երբ Ստալինի անձի պաշտամունքի քննադատության պատրվակով ոմանք փորձում են նսեմացնել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում պարտիայի ու ժողովրդի նվաճումների նշանակությունը: Իսկ առանձին պատմաբաններ ու գրողներ փորձեցին մամուլում և բանավոր ելույթներում ռևիզիայի ենթարկել մեր գաղափարական հակառակորդներին՝ դաշնակներին տրված պարտիական գնահատականը:

Որոշ գրողների ստեղծագործություններ ո՛չ միայն ներթափանցված չեն կոմունիստական շինարարության պաթոսով և ցույց չեն տալիս հայ ժողովրդի հերոսական ներկան, այլ, ընդհակառակը, արտահայտում են հոռետեսության ու թախծի տրամադրություններ, ծուռ հայելու մեջ են պատկերում ժամանակակից կյանքը, իդեալականացնում են անցյալը: Այդպիսի ստեղծագործությունները, անշուշտ, խանգարում են աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը:

Հայ ժողովրդի պատմական անցյալի և կուլտուրական ժառանգության մասին մենք շատ ենք խոսել: Մենք գնահատել և ըստ արժանվույն գնահատում ենք այդ ժառանգությունը: Այլ կերպ չէր էլ կարող լինել: Սակայն սխալ կլիներ չափից ավելի տարվել անցյալով և, ինչպես հարկն է չգնահատել մեր սքանչելի սոցիալիստական առօրյան, չդրվատել մեր մարդկանց աշխատանքն ու պայքարը՝ հանուն կոմունիզմի:

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը մոլորվող ընկերներին պարզաբանեց նրանց սխալները և միևնույն ժամանակ ներգործության ավելի խիստ միջոցներ ձեռք առավ նրանց նկատմամբ, ովքեր համառում էին իրենց գաղափարական սխալների մեջ:

Եղավ մի ժամանակ, երբ ստեղծագործական ինտելիգենցիայի առանձին ներկայացուցիչներ, «մոռանալով» կյանքի այս կամ այն երևույթի մարքս-լենինյան դասակարգային գնահատականը, դեմքները թթվեցնում էին, երբ խոսվում էր այն գրողների ու պատմաբանների մասին, որոնք հաստատ կանգնած են մարքս-լենինյան դիրքերում՝ բուրժուա-նացիոնալիստական դաշնակցություն պարտիայի գնահատման հարցում, կամ որոնք իրենց ստեղծագործություններում ցույց են տալիս մեր ժողովրդի հերոսական առօրյան:

Ընկերնե՛ր. գաղափարական պայքարն անհաշտ և ոչ-կոմպրոմիսային պայքար է: Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմն այսուհետև ևս համբերատար կերպով կպարզաբանի այն ընկերներին, ովքեր սխալվում և մոլորվում են: Բայց միաժամանակ մենք խիստ կլինենք նրանց հանդեպ, ովքեր կհամառեն իրենց սխալներում, ըստ էության կդառնան մեր դասակարգային թշնամիների գաղափարական ենթակուլակները և նրանց ապականիչ գաղափարների տարածողները:

Ընթացիկ տարվա մայիսի 23-ին Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը քննու-



թյան առավ գրական մամուլում և *Հայաստանի աշխատավորուհի* ժուռնալում գա- ղափարապես և գեղարվեստորեն ցածր մակարդակի ստեղծագործություններ հրա- պարակելու մի քանի փաստեր: Կենտկոմը նշեց մամուլի այդ օրգանների անպա- տասխանատվությունը նյութերի ընտրության նկատմամբ և աշխատավորների կո- մունիստական դաստիարակությանը չնպաստող ստեղծագործությունների հրապա- րակման ասպարեզում:

Մեր ռեսպուբլիկայի ինտելիգենցիան մարտական, հայրենասեր ինտելիգեն- ցիա է, նա ճիշտ է հասկանում պարտիայի քաղաքականությունը և ժողովրդի հետ միասին իր բոլոր ուժերը, եռանդն ու գիտելիքները նվիրում է կոմունիստական շի- նարարության գործին: Մենք խոսում ենք միայն առանձին սխալ տենդենցների մասին, որովհետև, եթե դրանք ճիշտ չգնահատենք ու սկզբունքորեն չպայքարենք դրանց դեմ, ապա դրանք կարող են տարածվել ու վտանգավոր երևույթ դառնալ:

Մենք վստահ ենք, որ որոշ ընկերներ անհրաժեշտ հետևություն են արել իրենց հասցեին եղած քննադատությունից, գործնականում կվերակառուցվեն և իրենց պրակտիկ աշխատանքում կուղղեն թույլ տված սխալները:

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը դատապարտեց գաղափարական հիմ- նարկների այն պարտիական կազմակերպությունների ղեկավարներին (Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի, գրողների միու- թյան և այլն), որոնք ժամանակին և պարտիականորեն չէին գնահատել որոշ կո- մունիստների սխալ ելույթներն ու վարքագիծը:



*Հայաստանի կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն այսուհետև ևս լայնորեն կծավալի գործարար պարտիական քննադատությունը բոլոր կազմակերպություն- ներում, համարձակորեն կբացահայտի թերությունները և միջոցներ ձեռք կառնի դրանց վերացման համար:* Մենք հետևողականորեն կպայքարենք ինչպես նրանց դեմ, ովքեր անսկզբունքայնություն ու լիբերալիզմ են ցուցաբերում դեպի սխալ ու անառողջ երևույթները, այնպես էլ նրանց դեմ, ովքեր քննադատության անվան տակ փորձում են վրպարտել ազնիվ կոմունիստներին և պարտիական կազմակերպու- թյունների ուշադրությունը շեղել իրենց առաջնահերթ խնդիրներից:

Ընկերնե՛ր. գրականությունը և արվեստը մասսաների կոմունիստական դաս- տիարակության զորեղ միջոց են: Սովետական Հայաստանի գրականության և ար- վեստի աշխատողները ջերմորեն հավանություն տվին ստեղծագործական ինտե- լիգենցիայի հետ հանդիպումների ժամանակ ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթներում ձևակերպված մտքերին ու դրույթներին, որոնք արտահայտում են մեր պարտիայի լենինյան կուրսը գրականության և արվեստի բնագավառում:

Կենտկոմի հունիսյան պլենումն ընդգծեց արվեստի հսկայական նշանակությու- նը նոր մարդու դաստիարակության գործում: Մեծ վստահությունը և այն պատվավոր խնդիրները, որ պարտիան դնում է ստեղծագործական ինտելիգենցիայի առջև, բարձ- րացնում են ժողովրդի հանդեպ ունեցած նրա մեծ պարտքի ու պատասխանատվու- թյան զգացումը: Կյանքի հետ սերտ կապ, պարտիականություն և ժողովրդականու- թյուն, կոմունիզմի ազնիվ գաղափարների պրոպագանդման համար գեղարվեստա- կան լիարժեք կերպարների ստեղծում՝ ահա թե ինչ է պահանջվում գրականության և արվեստի աշխատողներից:

Մենք արդեն բացահայտ ու բարեկամական խոսակցություն ենք ունեցել ռեսպուբլիկայի գրականության և արվեստի աշխատողների հետ: Մենք հիմա էլ լուրջ պահանջներ ենք ներկայացնում գրողներին և գրական մամուլի աշխատող-





ներին: Արդիականության անբավարար արտացոլումը դարձյալ մնում է մեր գրականության հիմնական բացերից մեկը:

Ի դեպ, այն բանից հետո, երբ ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի ժողովում բարյացակամ քննադատության ենթարկվեցին մեր մի քանի գրողներ ու գրականագետներ, դաշնակցական մամուլը, խեղաթյուրելով և աղավաղելով իրական փաստերը, աղմուկ բարձրացրեց մեր գրականության ինչ-որ «ճգնաժամի» մասին: Դաշնակները դեմագոգիկ կերպով ստանձնում են գեղարվեստական ինտելիգենցիայի այն որոշ ներկայացուցիչների անկոչ պաշտպանների դերը, որոնք արդարացի քննադատության ենթարկվեցին սխալների ու մոլորությունների համար:

Բայց զուր են հայ ժողովրդի թշնամիների՝ դաշնակցական ավանտյուրիստների ճիգերը: Իմպերիալիզմի գաղափարախոսներին չի հաջողվի ճիշտ ճանապարհից շեղել Սովետական Հայաստանի ստեղծագործական ինտելիգենցիային: Մեր թշնամիների համար դժվար է հասկանալ, որ մենք որոշ գրողների քննադատում ենք, որպեսզի նրանց օգնենք ավելի արագ վերացնելու սխալներն ու մոլորությունները և ապահովենք սովետահայ գրականության ու արվեստի նոր վերելք: Դա բխում է կոմունիզմի ազնիվ իդեալների հաղթանակի նկատմամբ մեր խոր հավատից:

Մենք հավատում ենք մեր ստեղծագործական ինտելիգենցիային, հպարտանում ենք նրանով և ամեն կերպ կօգնենք նրան, որպեսզի նա պատվով կատարի իր վեհ պարտքը ժողովրդի հանդեպ:

Իրագործելով ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, մեր գրողները, կոմպոզիտորները, նկարիչները, թատրոնի աշխատողները կտան նոր գործեր, որոնցում սովետական իրականությունը կարտացոլվի կենսահաստատ դիրքերից:

Կենտկոմի պլենումի որոշումներում նշված է մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության և կինոյի՝ գաղափարական ճակատի այդ հարվածային ուժերի հատկապես կարևոր նշանակությունը:

Մեր մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության գործունեության մեջ լուրջ թերություններ կան: Շատ թերթեր ու ժուռնալներ դեռևս հրատարակվում են ցածր մակարդակով և չեն համապատասխանում պարտիայի նոր պահանջներին: Դրանք բավարար որակով ու մատչելի չեն լուսաբանում էկոնոմիկայի և կուլտուրայի հարցերը: Քննադատական նյութերը մի շարք դեպքերում մակերեսային բնույթ են կրում: Թերթերը, ժուռնալները և, մանավանդ, գրական մամուլը հաճախ իներտ վերաբերմունք են ցուցաբերում գաղափարապես ու գեղարվեստորեն թույլ և գորշ առանձին ստեղծագործությունների նկատմամբ, դրանք սկզբունքային քննադատության չեն ենթարկում, երբեմն էլ գովաբանում են թույլ ստեղծագործությունները:

Մենք պետք է վճռական միջոցներ ձեռք առնենք բարելավելու մեր թերթերի, ժուռնալների և, առհասարակ, ամբողջ հրատարակչական աշխատանքը, ավելի մեծ ուշադրություն նվիրելու մամուլի և հրատարակչությունների աշխատողներին, բարձրացնելու խմբագիրների և խմբագրական կոլեգիաների պատասխանատվությունը հրապարակվող նյութերի գաղափարական և գեղարվեստական մակարդակի համար:

Մեր խնդիրն է՝ ավելի արագ վերացնել եղած թերությունները, բարձրացնել թերթերի ու ժուռնալների գաղափարական մակարդակն ու որակը, անհրաժեշտ պայքար մղել սոցիալիստական ռեալիզմի սկզբունքներից ամեն տեսակ շեղումների, ֆորմալիզմի, նատուրալիզմի, ազգային սահմանափակության և այլ արատների դեմ: Ռադիոյի և հեռուստատեսության աշխատողները պետք է ավելի հետաքրքրական ու բազմազան դարձնեն հաղորդումները, կատարելագործեն դրանց որակն ու



մատուցման ձևերը, բարձրացնեն պարտիայի այդ հզոր զենքի դերը մասսաների կոմունիստական դաստիարակության գործում:

Իսկ ի՞նչ կարելի է ասել ռեսպուբլիկայի կինոարվեստի մասին: Այս ասպարեզում դրությունը բացահայտորեն անբարեհաջող է, և Հայկական կինեմատոգրաֆիան մեծ պարտք ունի ռեսպուբլիկայի աշխատավորների առջև: «Հայֆիլմ» կինոստուդիան տարեցտարի թողարկում է թույլ ֆիլմեր:

Հանդիսատեսը անտարբեր մնաց մեր ստուդիայի այնպիսի կինոնկարների հերոսների ճակատագրի հանդեպ, ինչպիսիք են՝ «Մեր թաղամասի ձայները», «Նրա երազանքը», «Տասներկու ուղեկիցներ» և այլն: Այդ ֆիլմերի հերոսները գրավիչ չեն ո՛չ իրենց խելքով, ոչ էլ արարքներով: Դրանք ուրիշ ֆիլմերից փոխառնված սխեմաներ են: Ստուդիայի վերջին ֆիլմը՝ «Գիշերը՝ բաժանված չորսի», պետք է համարել ակնհայտ ձախողում, որը վկայում է, որ կինոստուդիայի հին ղեկավարությունը լուրջ չի վերաբերվել հանձնարարված գործին: «Հայֆիլմ» ստուդիան բազմիցս արդարացի քննադատության է ենթարկվել մամուլի, ինչպես նաև *Պրավդայի* կողմից: Այնուամենայնիվ, կուլտուրայի մինիստրության և կինոստուդիայի ղեկավարությունն առայժմ համապատասխան գործնական հետևություններ չեն արել դրանից:

Մենք չենք կարող այլևս հաշտվել գործի նման վիճակի հետ և թույլ տալ, որ մասսաների վրա դաստիարակչական ներգործության այնպիսի հզոր զենքը, ինչպիսին է կինոարվեստը, կորցնի իր մարտական ու ներգործուն ուժը: Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը ձեռք կառնի մի շարք կազմակերպական և այլ անհրաժեշտ միջոցներ հայկական կինեմատոգրաֆիայի աշխատանքներն արմատապես բարելավելու համար:

Ընկերնե՛ր. Հայաստանի կոմպարտիան իր գաղափարական աշխատանքում հաշվի է առնում նաև այն, որ ներկայումս ավելի քան մեկ միլիոն 200 հազար հայեր են ապրում աշխարհի 30 երկրներում: Վերջին տարիներս ուժեղացել է կապը սփյուռքահայ առաջադիմական կազմակերպությունների հետ, որոնք մեծ աշխատանք են կատարում Սովետական Միության ու Սովետական Հայաստանի նվաճումները պրոպագանդելու ուղղությամբ:

Ռեսպուբլիկայի գրականության, արվեստի և սպորտային կազմակերպությունների ներկայացուցիչներն սկսել են ավելի հաճախ մեկնել սփյուռքահայ գաղութները: Արտասահմանյան հայերի մեջ մասնավորապես մեծ ու օգտակար աշխատանք կատարեցին երգի-պարի անսամբլի, պարի անսամբլի կոլեկտիվները, Կոմիտասի անվան կվարտետը, գրողներ՝ Հր. Քոչարը, Էդ. Թոփչյանը, Ն. Զարյանը, Ս. Կապուտիկյանը, ռեսպուբլիկայի ժողովրդական արտիստ Հ. Բաղալյանը և ուրիշներ:

Էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի բոլոր բնագավառներում ռեսպուբլիկայի աշխատավորների ձեռք բերած վիթխարի հաջողություններն ուժեղացնում են սփյուռքահայերի անհաղթահարելի ձգտումը դեպի Սովետական Հայաստան, որը, ընկ. Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ, մագնիսի պես իրեն է ձգում հայ ժողովրդի լավագույն որդիներին ու դուստրերին: Ինչպես հայտնի է, արտասահմանյան հայերի՝ մեր կազմակերպած մասսայական հայրենադարձությունը Սովետական Հայաստան, հաջողությամբ շարունակվում է: Արդեն շատ հայեր հայրենիք են վերադարձել Կիպրոսից, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայից և Իրանից, իսկ հազարավորներն էլ անհամբերությամբ պատրաստվում են վերադառնալ Սովետական Հայաստան:

Ընթացիկ տարում և հաջորդ տարիներին մենք կազմակերպված ձևով, աստիճանաբար կշարունակենք հայերի հայրենադարձությունը կապիտալիստական երկրներից, մի բան, որը քաղաքական կարևոր նշանակություն ունի: Սովետական Հայաստանը սփյուռքահայերի միակ հայրենիքն է աշխարհում: Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների սովետն այսուհետև ևս ուշադրություն ու հոգատարություն կցուցաբերեն մեր արտասահմանյան հայրենակիցների նկատմամբ, միջոցներ ձեռք կառնեն ավելի ուժեղացնելու և ամրապնդելու կապերը սփյուռքահայ առաջադիմական կազմակերպությունների հետ:

Մեր խնդիրն է՝ ավելի մեծ ուշադրություն նվիրել նոր քաղաքացիներին և օգնել նրանց՝ ավելի արագ հաղորդակից լինելու մեր կյանքին ու ակտիվ մասնակցելու կոմունիստական շինարարությանը:

Ընկերնե՛ր. ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը, ընկեր Խրուշչովի խոր ու բովանդակալից ճառը, որն արտասանվեց ռևոլյուցիոն մեծ կրքոտությամբ, բացառիկ ցայտունությամբ արտահայտում են մարքսիզմ-լենինիզմի մեծ, սոցիալիստական գաղափարախոսության մարտական ոգին, հսկայական բարերար ազդեցություն են գործում երկրի գաղափարական կյանքի վրա:

Իսկ ո՞րն է այժմ գլխավորը գաղափարական աշխատանքում: Այս հարցի հստակ պատասխանը մենք գտնում ենք պլենումի որոշման մեջ, այնտեղ ընդգծված է, որ «արդի պայմաններում պարտիայի գաղափարական-դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրն է գաղափարապես ապահովել ՍՄԿՊ ծրագրի կենսագործումը, ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ձևավորել կոմունիստական հասարակական հարաբերություններ, դաստիարակել նոր մարդուն, բարձրացնել քաղաքական զգոնությունը, ծավալուն հարձակում գործել իմպերիալիստական գաղափարախոսության դեմ, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների դեմ»:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ընդհանրացնելով դրական փորձը, ավելի արագ վերացնել գաղափարական աշխատանքում եղած թերությունները: Մենք պետք է մինչև վերջ արմատախիլ անենք ֆորմալիզմի տարրերը և ապահովենք եռանդուն գործարարություն աշխատանքում:

Գաղափարական աշխատանքի մակարդակի մասին պետք է դատել ոչ թե ըստ կիրառվող միջոցառումների՝ դասախոսությունների, սեմինարների, ժողովների և *խորհրդակցությունների քանակի, այլ ըստ մարդկանց գիտակցության վրա ռեալ ներգործության: Իրականում այդ նշանակում է, որ ամեն մի ձեռնարկությունում և հիմնարկում գաղափարական աշխատանքի արդյունքը պետք է լինեն արտադրական, տեխնիկա-տնտեսական լավ ցուցանիշները և կոլեկտիվի բարոյա-քաղաքական բարձր վիճակը:*

Գաղափարական աշխատանքի կարևոր խնդիրներից մեկը մարդկանց դաստիարակումն է լենինյան պարտիայի և սովետական հայրենիքի, աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ սիրո և նվիրվածության ոգով: Հարկավոր է ոտքի հանել ամբողջ հասարակայնությանը և անխնա պայքար մղել *քաղքենիների, լոդրերի, պորտաբույծների, կաշառակերների և այլ հանցագործ ու պարազիտային* տարրերի դեմ, բոլոր նրանց դեմ, ովքեր առատորեն օգտվում են ժողովրդական բարիքներից, իսկ իրենք ոչինչ չեն տալիս, ապրում են ոչ իրենց ունեցած միջոցների համեմատ, չեն զբաղվում հանրօգուտ աշխատանքով:

Պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ բարելավել սովետական մարդկանց և, մանավանդ, երիտասարդությանը



կոմունիստական պարտիայի, բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության ռևոլյուցիոն պանծալի տրադիցիաներով, Սովետական Միության քաղաքացու հպարտության, պատվի և բարձր արժանապատվության ոգով դաստիարակումը:

Մենք պետք է է՛լ ավելի ուժեղացնենք աշխատավորներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու աշխատանքը, անհաշտ պայքար մղենք տեղայնության, ազգային սահմանափակության կամ բացառիկության ամեն տեսակ դրսևորումների դեմ, անցյալի իդեալականացման հետամնաց տրադիցիաների ու սովորությունների գովաբանման դեմ:

Մեր խնդիրն է՝ բազմապատկել եղբայրական ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական կապերի ասպարեզում կուտակված դրական փորձը, ավելի ակտիվ նպաստել մեր մեծ սոցիալիստական հայրենիքի ժողովուրդների կուլտուրաների փոխհարստացմանը:

Միշտ պետք է հիշենք, որ սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, որի գաղափարը հաստատ ու հետևողականորեն պաշտպանում է մեր լենինյան պարտիան, ամենևին չի նշանակում թուլացնել դասակարգային պայքարը միջազգային ասպարեզում: Մենք մեկ հաշիվ ենք տալիս, որ արտասահմանյան ռեակցիոն ուժերը, այդ թվում և դաշնակները, ձգնում են ամենաստոր միջոցներով տարածել թշնամական գաղափարախոսությունը և մասնավորապես նացիոնալիզմը, որը կապիտալիզմի առավել կենսունակ մնացուկն է: Ահա թե ինչու բուրժուական գաղափարախոսության դեմ անհաշտ, հարձակողական պայքարի հարցերը, աշխատավորներին նրա ապականող ազդեցությունից պաշտպանելն ամեն օր պետք է գտնվեն Հայաստանի կոմպարտիայի ուշադրության կենտրոնում:

Պարտիական ղեկավարությունը գաղափարական աշխատանքի հաջողության հիմքն է: Մեծ նշանակություն ունի այդ կարևոր գործի ճիշտ կազմակերպումը: Պարտիական կազմակերպությունները պետք է անդուլ զբաղվեն գաղափարական աշխատանքի ներգործունության հարցերով, նրա բովանդակությամբ, կազմակերպմամբ ու ձևերով: Այդ ամբողջ գործում հարկավոր է բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը:

Անցյալ ուսումնական տարում ռեսպուբլիկայում կային մոտավորապես 9000 պրոպագանդիստներ: Դա մեծ ուժ է: Մենք պետք է վճռականապես բարելավենք պրոպագանդիստական կադրերի ընտրությունն ու դաստիարակությունը և նրանց ցույց տանք ավելի որակյալ օգնություն, պրոպագանդիստներին չծանրաբեռնենք այլ հանձնարարություններով և ամեն կերպ խրախուսենք նրանց ակնիվ աշխատանքը մասսաների կոմունիստական դաստիարակության բնագավառում:

Անհրաժեշտ է բարձրացնել ռեսպուբլիկայի արհմիությունների և կոմերիտմիության դերը նոր մարդու և, հատկապես, երիտասարդության դաստիարակության գործում: Նրանք պետք է ավելի շատ և ավելի լավ զբաղվեն կոմունիստական աշխատանքի շարժման հետագա զարգացմամբ, աշխատանքի բարձր արտադրողականության, նոր տեխնիկայի տիրապետման համար պայքարը օրգանապես զուգակցեն կոմունիզմ կառուցողի կոդեքսի կենսագործման հետ:

Տարակույս չկա, որ մենք հմտորեն կօգտագործենք բոլոր միջոցներն ու ձևերը՝ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, գրականությունն ու արվեստը, պրոպագանդիստների մեր հիանալի կադրերը, որպեսզի հաջողությամբ կենսագործենք ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները և հասնենք *ռեսպուբլիկայում կազմակերպչական ու գաղափարական ամբողջ աշխատանքի բարելավմանը:*



Ընկերնե՛ր. ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի արդյունքները նշանակալի են: Դրանք ո՛չ միայն ներքին, այլև միջազգային նշանակություն ունեն: Պլենումի որոշումները, Ն. Ս. Խրուշչովի ելույթը ցույց են տալիս, որ մեր պարտիան անշեղորեն ընթանում է լենինյան կուրսով, նորանոր հաղթանակներ տանելով կոմունիզմի կառուցման գործում, հաջողությամբ պաշտպանելով ժողովուրդների խաղաղությունն ու անվտանգությունը:

Մեր խնդիրն է՝ բոլոր աշխատավորներին խորապես պարզաբանել Կենտկոմի պլենումի նյութերը, յուրաքանչյուր մարդու համակել դրանց վեհ գաղափարներով, իսկ որ ամենագլխավորն է, ապահովել պլենումի որոշումների կենսագործումը: ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերի քննարկման և ուսումնասիրման ընթացքում մենք պետք է մեծ չափով բարելավենք ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրների հաջող կատարման նպատակով մեր քաղաքական ու կազմակերպչական աշխատանքը:

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը հաջողությամբ է կատարում 1963 թվականի պետական պլանը: Բայց մեզ չի կարող բավարարել միայն համախառն արտադրանքի պլանի կատարումը: *Մենք պետք է նկատելիորեն բարելավենք տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշները, ավելի արագ ներդնենք նոր տեխնիկան և յուրացնենք նոր, ավելի կատարելագործված մեքենաների, սարքերի և ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը:*

Մեզանում լարված դրություն է ստեղծվել կապիտալ շինարարության ասպարեզում: Ռեսպուբլիկայում շին-մոնտաժային աշխատանքների 1963 թվականի առաջին կիսամյակի պլանը չի կատարվել: *Շինարարական կազմակերպություններն ընթացիկ տարվա մնացած ամիսներին պետք է աշխատեն մեծ լարվածությամբ, որպեսզի կատարեն շին-մոնտաժային աշխատանքների և արդյունաբերական ու բնակարանային-քաղաքացիական օբյեկտների գործարկման պլանը:*

Անբարենպաստ եղանակները լուրջ դժվարություններ ստեղծեցին նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների համար: Միայն հմուտ ու անձնվեր աշխատանքով կարելի է հաղթահարել այդ դժվարությունները և հաջողությամբ ավարտել գյուղատնտեսական տարին: Ցանքերի օրինակելի խնամքի, բոլոր կուլտուրաների բերքահավաքը որակով անցկացնելու և հանրային անասունների համար առավելագույն քանակությամբ կեր կուտակելու հետ մեկտեղ, մենք պետք է գարնան հորդ անձրևներից տուժած կոլտնտեսականներին ու սովխոզների բանվորներին մոտակա 3—4 ամսում լուրջ օգնություն ցույց տանք վերականգնելու և կառուցելու բնակարանները, ինչպես նաև մեծ աշխատանք կատարենք անասնապահական շենքերի վերականգնման ուղղությամբ, որպեսզի ապահովենք անասունների հաջող ձմեռումը:

Միութենական կառավարությունը նյութական օգնություն ցույց տվեց ռեսպուբլիկայի տուժած գյուղերին, կոլտնտեսություններին ու սովխոզներին: Ի պատասխան պարտիայի և կառավարության հոգատարության, գյուղատնտեսության աշխատողները կաշխատեն կրկնապատկված եռանդով և ամեն ինչ կանեն՝ *պատվով կատարելու մսի, կաթի, բրդի, ձվի, խաղողի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ու պետությանը դրանց վաճառքի ստանձնած սոցիալիստական պարտավորությունները:*

Պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության ասպարեզում, ապահովել յոթնամյակի 5-րդ տարվա պլանների կատարումը ժամկետից շուտ:



Ներկայումս մենք ձեռնամուխ ենք եղել ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1964 և 1965 թվականների պլանները կազմելուն: ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը ընկեր Խրուշչովի նախաձեռնությամբ առաջարկեցին նոր ձևով պլանավորել արդյունաբերության և շինարարության զարգացումը: Խոսքն այն մասին է, որ միջոցները, նյութական ռեսուրսները և կադրերը կենտրոնացվեն շինարարության վճռական տեղամասերում, կզալիորեն կրճատվեն արդյունաբերական օբյեկտների կառուցման ժամկետները, արագացվի դրանց գործարկումը և նվազագույնի հասցվեն անավարտ շինարարության ծավալն ու չտեղադրված սարքավորումները: Արդյունաբերության գծով հարկավոր է նախատեսել առավել առաջադիմական ճյուղերի առաջնահերթ զարգացումը:

Այդ աշխատանքը պետք է կատարել բանվորների ու մասնագետների լայն մասնակցությամբ: Պլանավորման նոր սկզբունքը կնպաստի ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի հետագա արագ զարգացմանը:

*Մենք ամեն ինչ կանենք, որ մոտակա տարիների ժողովրդա-տնտեսական պլանը կազմելու մեծ ու կարևոր աշխատանքը ճիշտ և որակով կազմակերպենք, դրանով իսկ դնենք ժողովրդական տնտեսության բնագավառի մեր ապագա հաջողությունների հիմքերը:*

Մոտակա ամիսներին կսկսվեն հաշվետու-ընտրական ժողովները սկզբնական պարտիական կազմակերպություններում, ապա՝ պարտիական կոնֆերանսները, իսկ ընթացիկ տարվա դեկտեմբերին հրավիրվելու է Հայաստանի կոմպարտիայի համագումարը, որը կարևոր իրադարձություն կլինի մեր ռեսպուբլիկայի կյանքում:

Մեր խնդիրն է՝ այդ բոլոր միջոցառումներն անցկացնել կազմակերպական ու քաղաքական բարձր մակարդակով, ավելի լայնորեն ծավալել սկզբունքային, գործարար քննադատությունն ու ինքնաքննադատությունը, հասնել ժողովրդական տնտեսության, կուլտուրայի պարտիական ղեկավարման հետագա բարելավման:

Տարակույս չկա, որ Սովետական Հայաստանի կոմունիստներն ու բոլոր աշխատավորները՝ համախմբված ընկեր Խրուշչովի գլխավորած մեր փառապանծ պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, միահամուռ հավանություն կտան ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներին, բոլոր ուժերը կմոբիլիզացնեն դրանք հաջողությամբ կենսագործելու և *նոր նվաճումներ ձեռք կբերեն պարտիայի XXII համագումարի առաջադրած տնտեսական ու քաղաքական խնդիրների կատարման գործում:*



Ընկերնե՛ր, մեր պարտիայի գաղափարական աշխատանքի խնդիրները, որոնք քննարկեց հունիսյան պլենումը, անխզելիորեն կապված են համաշխարհային ամբողջ կոմունիստական շարժման առջև կանգնած պրոբլեմների հետ: Կարելի է ասել, որ այժմ մեր երկրի ներսում գաղափարական աշխատանքի ոչ մի կարևոր խնդիր չի կարող դիտվել այն խնդիրներից անջատ, որոնք այսօր լուծում է պարտիան համաշխարհային ասպարեզում, դրանք չի կարելի դիտել համաշխարհային կոմունիստական շարժման և սոցիալիստական համագործակցության ասպարեզում նրա գործունեությունից կտրված: Սակայն սրանից որոշ ժամանակ առաջ, մի կողմից, Չինաստանի կոմպարտիայի և, մյուս կողմից, ՍՄԿՊ-ի և մյուս եղբայրական պարտիաների միջև դրսևորվեցին լուրջ տարաձայնություններ:

Ինչպես ասվեց զեկուցման սկզբում, ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը, ծանոթանալով Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի և ՍՄԿԿ Կենտկոմի միջև եղած տարաձայնությունների էությանը, որոշում ընդունեց՝ *Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի ներկայացուցիչների հետ ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացուցիչների առաջիկա հանդիպման մասին:*

Բանն այն է, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը խախտելով կոմունիստական շարժման մեջ բացահայտ բանավեճը դադարեցնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հետ կայացված համաձայնությունը, հրապարակեց իր սույն թվականի հունիսի 14-ի նամակը, որտեղ կամայական մեկնաբանություն է տրվում մարքս-լենինյան պարտիաների Մոսկվայի խորհրդակցությունների Դեկլարացիային ու Հայտարարությանը, խեղաթյուրվում են այդ պատմական փաստաթղթերի կարևորագույն դրույթները, բովանդակում են անհիմն հարձակումներ ՍՄԿԿ-ի և մյուս եղբայրական պարտիաների վրա:

Այս կապակցությամբ պլենումի մասնակիցները ծանոթացան Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի հունիսի 14-ի նամակին և լսեցին ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ ընկ. ընկ. Սուսլովի, Պոնոմարյովի և Անդրոպովի ելույթները, որոնցում շարադրվեց տարաձայնությունների էությունը: Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումն իբրև անհիմն ու զրպարտչական հարձակումներ, միահամուռ կերպով ու կտրականապես մերժեց Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի հարձակումները մեր պարտիայի և մյուս կոմունիստական պարտիաների վրա, ՍՄԿԿ XX, XXI և XXII համագումարների որոշումների, ՍՄԿԿ ծրագրի վրա, որին հավանություն են տվել ամբողջ սովետական ժողովուրդը և միջազգային կոմունիստական շարժումը:

Թույլ տվեք, ընկերնե՛ր, համառոտակի շարադրել, մի կողմից՝ Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի և, մյուս կողմից՝ ՍՄԿԿ Կենտկոմի ու մյուս եղբայրական պարտիաների միջև եղած տարաձայնությունների էությունը:

Համաշխարհային կոմունիստական շարժման հետ չինական ընկերների տարաձայնությունները երևան եկան մոտավորապես 1959 թվականի վերջերին: Այդ ժամանակ Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարների մոտ արդեն սխալ հայացքների որոշակի կոնցեպցիա էր ստեղծվել արդի համաշխարհային զարգացման հարցերի և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման խնդիրների շուրջ:

Բանն սկսելով գաղափարական ու տեսական որոշ տարաձայնություններից, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներն այժմ տարաձայնությունները փոխադրել են կոնկրետ քաղաքականության և ամենօրյա պրակտիկայի բնագավառը՝ միջազգային հրատապ հարցեր լուծելիս:

Նախ՝ պատերազմի և խաղաղության, տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորության հարցում եղած տարաձայնությունների մասին:

Դեռևս 1960 թվականի ապրիլին, Վ. Ի. Լենինի ծննդյան 90-ամյակի կապակցությամբ, չինական մամուլում հրապարակվեցին հոդվածներ, որոնցում արդի դարաշրջանը բնութագրված էր սոսկ որպես իմպերիալիզմի, պատերազմների և ռևոլյուցիաների դարաշրջան, բովանդակվում էին պնդումներ, որոնք փաստորեն ուղղված էին տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորության, մեր դարաշրջանում համաշխարհային պատերազմը կանխելու հնարավորության վերաբերյալ 1957 թվականի Դեկլարացիայի մարքս-լենինյան դրույթների դեմ: Չինական ընկերներն ըստ էության բացառում էին առանձին երկրներում սոցիալիզմին անցնելու խաղաղ ուղու հնարավորությունը:



Այսպիսով, իմպերիալիզմի ուժերը գերագնահատելու և խաղաղության ու սոցիալիզմի ուժերը թերագնահատելու պատճառով Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները հետևություն էին անում, թե պատերազմներն անխուսափելի են և թե անհնար է դրանք կանխել: Իսկ Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի որոշ ղեկավար ընկերներ խաղաղ գոյակցության հնարավորության վերաբերյալ դրույթը անվանեցին հակամարքսիստական:

1960 թվականի ամռանը Բուխարեստի խորհրդակցությունում չինական ընկերների սխալ հայացքները քննադատության ենթարկվեցին կոմունիստական և բանվորական 50 պարտիաների ներկայացուցիչների կողմից: Սակայն Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը չընդունեց այդ քննադատության արդարացիությունը: ՍՄԿԿ Կենտկոմը, մեծ նշանակություն տալով չին-սովետական բարեկամության ամրապնդմանը և տարաձայնությունների վերացմանը, համբերատարությամբ և մեծ տակտով բանակցություններ սկսեց չինական կողմի հետ:

1960 թվականի նոյեմբերյան խորհրդակցությունում դիսկուսիայի ընթացքը խիստ անբարենպաստ եղավ Չինաստանի կոմպարտիայի ներկայացուցիչների համար: Կանգնելով քաղաքական լիակատար մեկուսացման սպառնալիքի առաջ, Չինաստանի կոմպարտիայի պատվիրակությունն ստիպված եղավ ստորագրել Հայտարարությունը:

Ընկ. Լյու-Շաո-ցին խորհրդակցության եզրափակիչ նիստում եղբայրական պարտիաների ներկայացուցիչներին հայտարարեց, որ Չինաստանի կոմպարտիան միշտ ՍՄԿԿ-ի հետ բոլոր ջանքերը կգործադրի սոցիալիստական երկրների մեծ բարեկամությունն ամրապնդելու համար:

Թվում էր, թե 1960 թվականի խորհրդակցությունում տեղի ունեցած ընկերական քննարկման շնորհիվ ձեռք բերվեց Չինաստանի կոմպարտիայի հետ հայացքների միասնություն մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային հիմքի վրա: Սակայն այժմ, հատկապես ՉԿԿ կենտկոմի կողմից ընթացիկ տարվա հունիսի 14-ի նամակի հրապարակումից հետո, պարզ դարձավ, որ Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարներն իրենց ստորագրությունը դնելով 1960 թվականի Հայտարարության տակ, սոսկ մանևրում էին, քանի որ իրենց շուրջը տեսան համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածությունն ու միահամուռությունը:

Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմը մեծ ակտիվությամբ էր պաշտպանում ալբանական պառակտիչներին: Ոտնակոխ անելով Հայտարարության այն դրույթը, որն անթույլատրելի է համարում կոմունիստական պարտիաների միասնությունը խախտելու ընդունակ ամեն տեսակ գործողություններ, չինական ղեկավարները ալբանական գործիչներին օգտագործում էին որպես հլու-հնազանդ գործիք ՍՄԿԿ-ի և մարքսիստական-լենինյան մյուս պարտիաների վրա կատաղի հարձակումների համար: Որքան ալբանական պառակտիչները սանձարձակ էին պահում իրենց, այնքան նրանք մեծ հավանություն էին գտնում իրենց չինական հովանավորների մոտ:

Չինական ղեկավարները, մի կողմից, կեղծավորաբար երդվում են, որ հավատարիմ են Հայտարարությանը, իսկ մյուս կողմից, զրպարտում են մեր պարտիային և, ըստ էության, անհամաձայնություն հայտնում արդիականության այնպիսի կարևորագույն պրոբլեմի հարցում, որպիսին է պատերազմի և խաղաղության պրոբլեմը:

Համաշխարհային կոմունիստական շարժման մեջ ըստ էության բախվեցին

երկու գծեր՝ առաջինը մեր պարտիայի XX համագումարի գիծը, որը պաշտպանություն գտավ համաշխարհային կոմունիստական շարժման կողմից, և մյուսը Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարության գիծը:

Պատերազմի և խաղաղության պրոբլեմների շուրջ տարաձայնությունների արմատները թաքնված են, նախ՝ ինչպես ասվեց, իմպերիալիզմի ուժերը գերագնահատելու և սոցիալիզմի ու խաղաղության ուժերը թերագնահատելու մեջ և, երկրորդ՝ չինական ղեկավար ընկերների սխալ հայացքների մեջ, որոնք գտնում են, թե արդի պատերազմի հետևանքներից վախենալու ոչինչ չկա: Չինական որոշ պատասխանատու ղեկավարներ հայտարարել են, որ կարելի է պատերազմում զոհել հարյուր միլիոնավոր մարդիկ:

Մենք, ընկերնե՛ր, չենք կարող համաձայնել այդ, հիրավի մարդատյաց հայացքներին: Այժմ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների համար տիպական է դարձել այն դրույթը, թե «Հաղթած ժողովուրդները կործանված իմպերիալիզմի փլատակների վրա չափազանց արագ տեմպերով կստեղծեն հազար անգամ ավելի բարձր քաղաքակրթություն, քան կապիտալիստական կարգի օրոք, կառուցելով իրենց հիասքանչ ապագա»:

Այստեղից կարելի է անել այն հետևությունը, որ արդի համաշխարհային հակասությունների լուծման ռազմական մեթոդը Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների տեսակետով առավել արագ և արդյունավետ մեթոդ է: Հենց դրանով էլ պետք է բացատրել նրանց հարձակումները տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության տեսության և պրակտիկայի վրա:

Իր նամակում Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմը բացեիբաց հայտարարում է, որ «սխալ է խաղաղ գոյակցությունը համարել սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականության գլխավոր գիծը»:

Մենք, իհարկե, չենք կարող համաձայնել արդիականության այդ կարևոր պրոբլեմի նման հակալենինյան մեկնաբանությանը: ՍՄԿՊ-ի ղեկավարությունը և անձամբ ընկեր Խրուշչովը անկեղծորեն ու ճշմարտացիորեն սովետական ժողովրդին ասում են ջերմամիջուկային պատերազմի ծանր հետևանքների մասին և ամեն բան անում են այդ պատերազմը կանխելու համար: Մենք, միևնույն ժամանակ, հաշվի ենք առնում իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը և հսկայական աշխատանք ենք կատարում երկրի պաշտպանունակությունն ամրապնդելու համար, որպեսզի միշտ կազմ ու պատրաստ լինենք ջախջախելու ամեն մի թշնամու, որը կհամարձակվի ձեռք բարձրացնել մեր մեծ նվաճումների վրա:

Չինական դոգմատիկները չեն կարող հասկանալ այն ճշմարտությունը, որ մեր լենինյան պարտիան ելնում է այն բանից, որ խաղաղության, խաղաղ գոյակցության պայքարը կապված է իմպերիալիզմի դեմ մղվող ռևոլյուցիոն պայքարի հետ: Որքան էլ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները աղավաղեն մեր դիրքն այդ կարևոր հարցում, մենք պարզ ու որոշակի ասում ենք, որ տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լոզունգը չի բացառում դասակարգային պայքարը կապիտալիստական երկրներում:

Ընկերնե՛ր, հարկավոր է նշել, որ իրենց լեզվով և տոնով չինական ելույթները կորցրել են ընկերական բանավեճի բնույթը և ավելի ու ավելի են նմանվում այն ոճին ու մեթոդներին, որոնք կիրառում էին տրոցկիստները լենինյան գծի դեմ մղած պայքարում, ՍՄԿՊ-ի ու եղբայրական պարտիաների դեմ մղած պայքարում:

Չինական ղեկավարության գործողությունները հատկապես վտանգավոր բնույթ ստացան Կարաիբյան ծովի շրջանի ճգնաժամի պահին: Փոխանակ Սովետական Միության և մյուս խաղաղասեր ուժերի հետ միասնականորեն գործելու ի պաշտպանություն Կուբայի ռևոլյուցիայի, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը կրպարտչական հարձակումներ գործեց Սովետական Միության վրա: Ինչում ասես մեղ չէր մեղադրում չինական մամուլը Կուբայի ճգնաժամի շրջանում. և՛ Կուբայի ժողովրդի հաշվին «մյունխենյան դավադրության» մեջ, և՛ «ավանտյուրիզմի և «կապիտուլյանտության» մեջ: Այդ ժամանակաշրջանում չինական ղեկավարների գիծն օբյեկտիվորեն ձեռնտու էր ջերմամիջուկային պատերազմ հրահրող ամերիկյան իմպերիալիստների առավել ագրեսիվ շրջաններին:

Իսկ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունն այդ ահեղ ժամանակաշրջանում Կուբայի ժողովրդին ոչ մի իրական օգնություն ցույց չտվեց: Մինչդեռ ՍՍՌՄ-ը ցուցաբերեց իսկական պրոլետարական ինտերնացիոնալիզմ և օգնության եկավ Կուբայի հերոսական ժողովրդին: Այժմ ամբողջ աշխարհին հայտնի է, որ Սովետական կառավարության և անձամբ ընկեր Խրուշչովի իմաստուն գործողությունների արդյունքը եղավ ԱՄՆ-ի իմպերիալիստների վտանգավորագույն պրովոկացիայի խափանումը, որոնք աշխարհը կանգնեցրել էին ջերմամիջուկային պատերազմի եզրին, և միևնույն ժամանակ այդ գործողությունների արդյունքը եղավ ռևոլյուցիոն Կուբայի դիրքերի ամրապնդումը.

Կուբայական ճգնաժամի օրինակով մեկ անգամ ևս ապացուցվեց, որ սոցիալիզմի և խաղաղության ուժերն ընդունակ են սանձահարելու ագրեսիվ շրջաններին, կանխելու համաշխարհային պատերազմի սանձազերծումը և խափանելու հակառևոլյուցիայի արտահանումը այն շրջանը, որն անմիջապես հարում է իմպերիալիստական լագերի գլխավոր կենտրոնին:

«Առանց ժամանակակից աշխարհում ուժերի նոր հարաբերակցության,—հայտարարեց Ֆիդել Կաստրոն,— ամերիկյան իմպերիալիզմը չէր տատանվի արյան մեջ խեղդելու Կուբայի ռևոլյուցիան: Եվ մենք այժմ մեր երկրում ոչ թե սոցիալիզմ կկառուցեինք, այլ լեռներում, դաշտերում և ընդհատակում կկռվեինք օտարերկրյա օկուպանտների դեմ»:

Պատերազմի և խաղաղության պրոբլեմների վերաբերյալ Մոսկվայի 1960 թվականի խորհրդակցությունում մշակված ու միաձայն հաստատված հստակ ծրագրին, որը համապատասխանում է ամբողջ մարդկության արմատական շահերին, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը հակադրում էր սխոլաստիկ, կոնկրետ պայմաններից կտրված, դեկլարատիվ ֆորմուլաներ: Ընդսմին, նա դեմագոգիաբար պնդում էր, թե իբր մյուս կոմունիստական պարտիաները միջազգային կոմունիստական շարժման գիծը «միակողմանիորեն հանգեցնում են» «խաղաղ գոյակցության», «խաղաղ մրցության», «խաղաղ անցման»:

Այսպիսով, չինական ընկերները կանխամտածված կերպով խեղաթյուրում են ՍՄԿՊ-ի և մյուս պարտիաների հայացքները, տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության գիծը պատկերում են որպես «ճնշվածների և ճնշողների խաղաղ գոյակցության գիծ»:

Այդպիսի աղաղակող կեղծարարության ու կրպարտության օգնությամբ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը ձգտում է խարխլել ՍՄԿՊ-ի և մյուս եղբայրական պարտիաների հեղինակությունը, իրեն ներկայացնել որպես գրեթե միակ ռևոլյուցիոն պարտիա: Մեզանից յուրաքանչյուրի համար պարզ է, թե այս ուլտրառևոլյուցիոն ֆրազաբանությունն ինչպիսի վնաս է հասցնում խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարի գործին:

Դեկլարացիայից և Հայտարարությունից չինական ընկերների նահանջը ա-

ռանձնապես վառ երևում է արդի դարաշրջանի և դրա հիմնական հակասության նրանց մեկնաբանության մեջ: Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունն ըստ էության ի չիք է դարձնում սոցիալիզմի և կապիտալիզմի համաշխարհային սիստեմների միջև եղած հակասության՝ որպես արդի դարաշրջանի գլխավոր հակասության, որպես համաշխարհային վարգացման հիմնական շարժիչ ուժի նշանակությունը:

Չինական ընկերների տեսական կոնցեպցիաներում ամեն կերպ նսեմացվում է համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսում սոցիալիստական սիստեմի դերը, անտեսվում է այն դրույթը, որ արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած է բանվոր դասակարգը և նրա ծնունդ տված՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմը:

Հրաժարվելով համաշխարհային կոմունիստական շարժման համաձայնեցված փաստաթղթերի այդ դրույթներից, Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը հանդես է գալիս սխալ, հակալենինյան այն թեզով, թե համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի վարգացման գործում այժմ վճռական դեր է խաղում իբր ոչ թե սոցիալիստական պետությունների համաշխարհային սիստեմը, այլ ազգային-ազատագրական շարժումը:

Մեր պարտիան գտնում է, որ իմպերիալիզմի կողմից ճնշվող ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի անկապտելի մասն է: Սովետական մարդիկ իմպերիալիզմի դեմ իրենց հերոսական պայքարով, ազգային-ազատագրության համար պայքարող ժողովուրդներին իրենց ցույց տված ուղղակի օգնությամբ մեծ ավանդ են մուծել Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների պատմական նվաճումների մեջ, չինական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի գործում, Հյուսիսային Կորեայի և Հյուսիսային Վիետնամի ազատագրության, ռևոլյուցիոն Կուբայի վարգացման և ամրապնդման գործում: Անտեսելով այս բոլոր փաստերը, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը հանդես է գալիս այնպիսի ակնարկներով, թե իբր ՍՄԿՊ-ն «պասսիվություն» է ցուցաբերում ազգային-ազատագրական շարժման հարցում և թե իբր արհամարհանքով է վերաբերվում այդ շարժմանը:

Այս հարցում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության գիծը վտանգավոր է նրանով, որ նա ձգտում է ազգային-ազատագրական շարժումը կտրել այն պայքարից, որը իմպերիալիզմի դեմ մղում են սոցիալիստական երկրների ժողովուրդները, կոմունիստական ու բանվորական պարտիաները, ազգային-ազատագրական շարժումը փաստորեն վրկել համաշխարհային սոցիալիստական սիստեմի օգնությունից:

Չինական ընկերները պնդում են, թե Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի շրջանները աշխարհում գոյություն ունեցող բոլոր հակասությունների հանգուցակետն են, արդի աշխարհում ռևոլյուցիոն փոթորիկների հիմնական օջախը: Մենք, իհարկե, չենք կարող համաձայնել այդպիսի սխալ հարցադրմանը, քանի որ ազգային-ազատագրական շարժումը, իր ամբողջ կարևորությամբ հանդերձ, չի հանդիսանում միջազգային դասակարգային պայքարի գլխավոր պլացդարմը, նա անմիջականորեն լուծում է ոչ թե դասակարգային խնդիրներ, այլ, առաջին հերթին, ազգային-ազատագրության համադեմոկրատական խնդիրներ:

Առաջ քաշելով այն թեզը, որ ամբողջությամբ վերցրած միջազգային պրոլետարիատի գործի համար վճռական նշանակություն ունի ազգային-ազատագրական շարժումը, չինական ընկերները ո՛չ միայն աղաղակող ձևով անտեսում են համաշ-



խարհային սոցիալիստական սիստեմի նշանակությունը, այլև թերագնահատում են կապիտալիզմի վարգացած երկրներում բանվոր դասակարգի պայքարի դերը:

Չինական ընկերների պատկերացմամբ, միայն ազգային-ազատագրական շարժումն է ներկայացնում իրոք ռևոլյուցիոն ուժ, որն ընդունակ է կործանել իմպերիալիզմը: Իսկ վարգացած կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը պատկերվում է որպես ինչ-որ պասսիվ վանգված, որը կարող է փրկություն ստանալ միայն դրսից՝ Ասիայի, Աֆրիկայի ն Լատինական Ամերիկայի ժողովուրդների կողմից:

Այդ հարցին չինական ընկերների նման հակամարքսիստական, հակալենինյան մոտեցումը փաստորեն առնչվում է այն աջ-օպորտունիստական, ռևիզիոնիստական տեսություններին, որոնք պնդում են, թե վարգացած կապիտալիստական երկրներում սոցիալիստական ռևոլյուցիայի նախադրյալներ ու հեռանկարներ չկան:

Առաջնորդվելով մարքսիզմ-լենինիզմով, մենք հաստատ հայտարարում ենք, որ ով պատնեշ է կանգնեցնում մի կողմից, ազգային-ազատագրական և, մյուս կողմից, սոցիալիստական երկրների ու միջազգային բանվորական շարժման միջև, նա, միաժամանակ ոտնահարում է թե ազգային-ազատագրական շարժման շահերը և թե սոցիալիզմի շահերը, նա ջուր է լցնում իմպերիալիստների ջրաղացին:

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը միանգամայն հակամարքսիստական դիրք է բռնել: Նա պրոպագանդում է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ինչ-որ առանձնահատուկ պատմական և աշխարհագրական ընդհանրություն, նրանց շահերը հակադրում է մյուս մայրցամաքների ժողովուրդների, ՍՍՌՄ-ի և Եվրոպայի սոցիալիստական երկրների շահերին:

Այնուհետև, ս. թ. հունիսի 14-ի նամակում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները ՍՄԿՊ-ին և եղբայրական պարտիաներին վերագրում են ամեն տեսակ այլ անհեթեթություններ: Օրինակ, առանձին երկրներում խաղաղ ճանապարհով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու հնարավորության դրույթը նրանք որակում են որպես «պատմական իդեալիզմ», կապիտալիստական հասարակարգի արմատական հակասությունների կոծկում, հրաժարում դասակարգային պայքարի մարքսլենինյան ուսմունքից: Չինական ղեկավարները ՍՄԿՊ-ին վերագրում են այն անհեթեթ տեսակետը, թե իբր իմպերիալիզմն ինքը կկործանվի երկու սիստեմների տնտեսական խաղաղ մրցության ընթացքում:.

Իր վերջին նամակում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը գրոհում է XX և XXII համագումարների որոշումների, ՍՄԿՊ ծրագրի վրա: Նա փորձում է իր հայացքները պարտադրել ո՛չ միայն միջազգային հարցերում, այլև ՍՍՌՄ ներքին վարգացման պրոբլեմների կապակցությամբ, կոպիտ կերպով միջամտելով ՍՄԿՊ ներքին քաղաքականությանը:

Այդ նամակում կոպիտ հարձակումներ են բովանդակված մի շարք հարցերում ՍՄԿՊ-ի վարած գծի վրա, որոնք մինչև օրս բանավեճի առարկա չեն եղել համաշխարհային կոմունիստական շարժման մեջ: Դրանք են՝ ՍՍՌՄ-ում պրոլետարիատի դիկտատուրան համաժողովրդական պետության վերաճելու հարցը, մեր պարտիան համաժողովրդական քաղաքական կազմակերպության վերածվելու հարցը, անհատի պաշտամունքի և առաջնորդների հեղինակության հարաբերակցության հարցը: Այն տպավորությունն է ստեղծվում, որ երբ ցույց տրվեց ռևոլյուցիոն պրոցեսի վարգացման, մեր դարաշրջանի էության ըմբռնման, խաղաղ գոյակցության և այլ հարցերում համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գծի վրա կատարված հարձակումների սնանկությունը, դրանից հետո չինական ընկերնե-

րը լույս աշխարհ են հանում նոր հարցեր՝ բանավեճն ուժեղացնելու և սրելու նպատակով:

ՍՄԿՊ XXII համագումարում Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ մարքս-լենինյան խոր վերլուծության հիման վրա ցույց տրվեց, որ պրոլետարիատի դիկտատուրան կատարել է իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիրների տեսակետից այլևս այն անհրաժեշտ չէ մեր երկրում: Այս հետևությունն ընդհանուր հավանություն գտավ համաշխարհային կոմունիստական շարժման մեջ, քանի որ հենվում է սովետական հասարակության զարգացման օբյեկտիվ պայմանների խիստ գիտական վերլուծության վրա: Չէ՞ որ ամեն մի մարքսիստ-լենինյանի համար պարզ է, որ սոցիալիզմի հաղթանակից հետո, երբ հասարակության մեջ մնում են աշխատավորական դասակարգերը, որոնք բարեկամական և իրենց էությամբ միանգամայն նույն շահերն ունեն, հետևաբար այլևս ոչ ոքի ճնշելու հարկ չկա և պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտությունը վերանում է, իսկ պրոլետարիատի դիկտատուրայի պետության վերածվելը համաժողովրդական պետության՝ միանվագ ակտ չէ, դա նույնպես պատմական պրոցես է՝ կապված երկրում դասակարգային հարաբերությունների զարգացման հետ:

Բանն այն է, որ իրենց քննադատության մեջ չինական ընկերները ելնում են սոցիալիստական շինարարության այն ժամանակաշրջանի պայմաններից, երբ դեռ լուծվում էր «ով-ում»-ի հարցը: Դրանով էլ բացատրվում է նրանց երկյուղը, թե իբր պրոլետարիատի դիկտատուրայի պետության վերածվելը համաժողովրդական պետության՝ սպառնում է հանգեցնել սոցիալիստական ուժերի ինքնավինաթափման:

Չինական ընկերները քննադատության նման մեթոդ են կիրառում նաև ՍՄԿՊ-ն բանվոր դասակարգի ավանգարդից ամբողջ ժողովրդի հասարակական-քաղաքական կազմակերպության վերածվելու մասին մեր պարտիայի հետևության հարցում: Չինական ղեկավարներն այդ հետևությունը հայտարարում են «պրոլետարիատի կազմակերպական ու բարոյական վինաթափում», «կապիտալիզմի վերականգնմանը ծառայություն մատուցել», այն հիման վրա, որ առանց պրոլետարական պարտիայի անհնար է պահպանել պրոլետարիատի դիկտատուրան:

Ի՞նչ կարելի է ասել այս առթիվ: Չինական դոգմատիկներն այս հարցերում և հաշվի չեն առնում, որ նախ՝ խոսքը վերաբերում է հենց այն ժամանակաշրջանին, երբ պրոլետարիատի դիկտատուրան սպառել է իր պատմական միսիան և, երկրորդ,— իսկ դա գլխավորն է,—դառնալով ամբողջ ժողովրդի պարտիա, կոմունիստական պարտիան չի դադարում նախ և առաջ բանվոր դասակարգի պարտիա լինելուց, քանի որ բանվոր դասակարգը ժողովրդի նշանակալի և առաջավոր մասն է:

Հարկավոր է պարզապես աչք փակել իրականության առջև չտեսնելու համար, որ ՍՄԿՊ-ն արդեն դարձել է ամբողջ ժողովրդի պարտիան, քանի որ սովետական հասարակության բոլոր դասակարգերն ու խավերը միշտ էլ պարտիայի հետ են կապել իրենց բախտը, քանի որ պարտիան արտահայտում է նրանց ընդհանուր շահերը և միավորում հասարակության բոլոր խավերի առաջավոր մարդկանց: Մենք կարող ենք հաստատորեն ասել, որ մեր պարտիան երբևէ չի եղել այսքան ուժեղ, հեղինակավոր, ընդունակ՝ լուծելու նոր աշխարհի կառուցման հետ կապված ամենահանդուգն խնդիրները: Դրա հետ մեկտեղ մեր պարտիան առաջվա պես սրբությամբ է կատարում իր ինտերնացիոնալ պարտքը ամբողջ աշխարհի աշխատավորների առջև: Այլ կերպ չի կարող լինել, որովհետև ամբողջ սովետական ժողովուրդն ունի



մի գաղափարախոսություն՝ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսությունը:

Չինաստանի կոմպարտիայի վերջին նամակում պնդում է արվում նաև, թե իբր անհատի պաշտամունքի դեմ պայքարելու հարցի առաջադրումը նշանակում է առաջնորդներին հակադրել մասսաներին, թուլացնել պարտիայի մարտունակությունը: Նման պնդումներն անհիմն են և անհեթեթ: Վերջին տասը տարում Սովետական Միության հսկայական հաջողությունները վճռական չափով ձեռք են բերվել այն բանի շնորհիվ, որ ՍՄԿՊ-ն վերջ տվեց անհատի պաշտամունքի արատավոր, հակամարքսիստական և հակալենինյան գաղափարախոսությանն ու պրակտիկային:

Առաջնորդների հակադրումը մասսաներին, որի մասին խոսվում է Չինաստանի կոմպարտիայի նամակում, ամենից ավելի ցայտուն արտահայտվում է անհատի պաշտամունքի գաղափարախոսության մեջ: Իսկ առաջնորդների և մասսաների իսկական կապը ձեռք է բերվում պարտիական կյանքի լենինյան սկզբունքների խստիվ ու հետևողական կենսագործման հիման վրա:

ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարներ ընկ. ընկ. Սուսլովը, Պոնոմարյովը, Անդրոպովն իրենց ելույթներում կանգ առան այն հարցերի վրա, որոնք իր ժամանակին բազմակողմանիորեն պարզաբանվել են մեր պարտիայի կողմից և մտել են կոմունիստական շարժման տեսական գինանոցը: Դրա հետ միասին մեր պարտիան պատրաստ է նորից ու նորից պարզաբանելու իր դիրքերը, եթե դրանց որևէ թերըմբռնում կա: ՍՄԿՊ-ն իրեն մենաշնորհյալ չի համարել և չի համարում մարքսիզմ-լենինիզմի զարգացման բնագավառում, նա միշտ ձգտում է ավելի խոր ուսումնասիրել եղբայրական պարտիաների փորձը, նրանց հետ քննարկել տեսական ու գործնական բոլոր բարդ հարցերը: Միանգամայն բնական է, որ Չինաստանի կոմպարտիան նույնպես չի կարող մարքս-լենինյան տրադիցիաների միակ պահպանողի հավակնությունն ունենալ:

Ցավոք սրտի, պետք է նշել, որ Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի վերջին նամակն այն տպավորությունն է ստեղծում, որ այդ պարտիայի ղեկավար գործիչները ձգտում չեն ցուցաբերում համախմբելու կոմունիստական շարժումը միակ հնարավոր հիմքի՝ ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի հիմքի վրա: Զեռնպահ մնալով բանավեճը սրելուց, մեր Կենտկոմը հունիսի 18-ի հայտարարության մեջ նշեց, որաննպատակահարմար է համարում երկու պարտիաների պատվիրակությունների հանդիպումից առաջ հրապարակել չինական ընկերների նամակը և դրա պատասխանը: Այնուամենայնիվ, խախտելով կոմունիստական պարտիաների փոխհարաբերությունների նորմաները, Պեկինի ռադիոն շտապեց հաղորդել նամակի տեքստը ռուսերեն լեզվով, չխոսելով արդեն այն մեր երկրում ամենատարբեր հասցեներով ուղարկելու մասին:

Ո՞րն է, մի կողմից՝ Չինաստանի կոմպարտիայի և, մյուս կողմից՝ ՍՄԿՊ-ի ու ամբողջ միջազգային կոմունիստական շարժման միջև եղած տարաձայնությունների աղբյուրը:

Դա ամենից առաջ չինական ընկերների մանրբուրժուական «ձախ» օպորտունիզմն է: Դա նոր երևույթ չէ մեր շարժման պատմության մեջ: Բավական է հիշեցնել մեր պարտիայի, Վ. Ի. Լենինի համառ պայքարը «ձախ» կոմունիստների դեմ:

Չինական դոգմատիկները, որոնք հանդես են գալիս ՍՄԿՊ-ի և կոմպարտիաների գերակշռող մեծամասնության «օպորտունիզմի» և «ռևիզիոնիզմի» վերաբերյալ պնդումներով, ջրի երկու կաթիլի պես նման են այն ձախողակ ձախ աղմկարար-

ներին, որոնք իր ժամանակին իրենց թույլ տվեցին օպորտունիզմի մեջ մեղադրել հենց իրեն՝ Լենինին:

Լենինը նշել է. «Ռևոլյուցիոն ֆրազն ամենից հաճախ ռևոլյուցիոն պարտիաների հիվանդությունն է լինում այնպիսի պարագաներում, երբ այդ պարտիաներն ուղղակի կամ անուղղակի իրականացնում են պրոլետարական և մանրբուրժուական տարրերի կապը, միացումը, միահյուսումը, և երբ ռևոլյուցիոն իրադարձությունների ընթացքը ցույց է տալիս խոշոր ու արագ բեկումներ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 27, էջ 1):

Այսպիսով վեր է կասկածից, որ Չինական կոմպարտիայի ղեկավարների սխալ դիրքորոշումը բխում է այն փաստից, որ նրանք կտրվել են բուն իրականությունից, գրքային և դոգմատիկ մոտեցում են հանդես բերում այնպիսի վիթխարի պրոբլեմների հանդեպ, որպիսիք են՝ պատերազմի բացառման, խաղաղության և սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հարցերը: Դժվար չէ հասկանալ, որ «համաշխարհային ռևոլյուցիայի» վերաբերյալ չինական ընկերների աղմկալի ֆրազների հետև թաքնված են այլ նպատակներ, որոնք ռևոլյուցիայի հետ ոչինչ չունեն:

Հայտնի է, որ աշխարհի կոմպարտիաների բացարձակ մեծամասնությունը համամիտ չէ չինական ընկերներին: Բայց դրա փոխարեն չինական ընկերների դիրքը անսքող ուրախությամբ ողջունում է տրոցկիստական, այսպես կոչված՝ 4-րդ ինտերնացիոնալը:

Չինական կոմպարտիայի հասցեին տրոցկիստների հաճոյախոսությունները ակնառու կերպով ցույց են տալիս, թե ինչպիսի սխալ ու վտանգավոր ուղի են բռնել չինական ընկերները: Դա սոցիալիզմի ուժերի նկատմամբ թերահավատություն տածող ավանտյուրիզմի ուղին է: Դա մի ուղի է, որը դժվարացնում է միջազգային բանվոր դասակարգի պայքարը խաղաղության համար, կոմունիզմի գաղափարների համաշխարհային հաղթանակի համար: Եվ միանգամայն հասկանալի է, որ երբ «ձախ» օպորտունիզմը վարակում է այնպիսի մեծ պարտիայի ղեկավար կադրերին, որպիսին է Չինաստանի կոմպարտիան, երբ վերջինս բոլոր մեթոդներով ձգտում է այդ օպորտունիզմը պարտադրել մյուս եղբայրական պարտիաներին, նա միջազգային կոմունիստական շարժման համար պակաս վտանգավոր չի դառնում, քան ռեվիզիոնիզմը:

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում ասվեց, որ չնայած իրադրության ամբողջ բարդությանը, մեր պարտիան մինչև վերջ կկատարի իր ինտերնացիոնալ պարտքը, կանի այն ամենը, ինչ ի վիճակի է, որպեսզի հաղթահարի կոմունիստական շարժման պառակտման վտանգը:

Պլենումը Չինաստանի կոմպարտիայի ներկայացուցիչների հետ վարվելիք բանակցությունների ՍՄԿՊ պատվիրակությանը դիրեկտիվ տվեց՝ հաստատակամություն ցուցաբերել մարքս-լենինյան գծի պաշտպանության գործում, որն արտահայտված է ՍՄԿՊ XX և XXII համագումարների որոշումներում, ՍՄԿՊ ծրագրում, 1957 թվականի Դեկլարացիայում և 1960 թվականի Հայտարարության մեջ ու վճռական հակահարված տալ այդ գծի, մեր պարտիայի և մարքսիստական լենինյան մյուս պարտիաների վրա կատարվող հարձակումներին:

Սկզբունքային հարցերում ոչ մի զիջում չանելով, ՍՄԿՊ Կենտկոմի ներկայացուցիչները կայունություն և ճկունություն կցուցաբերեն, որպեսզի հասնեն առավել հնարավոր դրական արդյունքների, ելնելով կոմունիստական շարժման և սոցիալիստական համագործակցության միասնությունն ամրապնդելու շահերից:



Այսպիսով ընկերնե՛ր, վեր է կասկածից, որ միջազգային կոմունիստական շարժումն այժմ բարդ ժամանակաշրջան է ապրում: Բայց ոչ մի տարակույս չկա, որ այդ մեծ շարժումը, որին պատկանում է ապագան, ուժեր կգտնի հաղթահարելու դժվարությունները, համախմբելու իր շարքերը և ժողովուրդներին տանելու դեպի նոր հաղթանակներ՝ խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարում:

Մեր պարտիան իր պրակտիկ գործերով, կոմունիզմի համար մղած պայքարում ձեռք բերած վիթխարի հաղթանակներով հաստատում է մարքսիզմ-լենինիզմը բանվորական շարժման շարքերում: Բոլոր մարքսիստ-լենինյանների հետ միասին մեր պարտիան կամրապնդի միջազգային կոմունիստական շարժումը, ցույց կտա Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության գծի սխալականությունն ու սնանկությունը: Մենք բոլորս հաստատ համոզված ենք, որ համաշխարհային կոմունիստական շարժումը խարխլելու, ՍՄԿՊ-ի հեղինակությունը խախտելու չինական ղեկավարների դիտավորությունը ձախողման է դատապարտված: Կհաղթի ՍՄԿՊ լենինյան կուրսը, կհաղթեն բոլոր երկրների մարքսիստ-լենինյանները:

Ահա համառոտակի, մի կողմից, Չինաստանի կոմպարտիայի և, մյուս կողմից՝ եղբայրական մարքսիստական-լենինյան պարտիաների տարաձայնությունների էության մասին:

Մենք հաստատ համոզված ենք, որ Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի պլենումի մասնակիցները, մեր ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորները կտրականապես կմերժեն Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի անհիմն ու կրպարտչական հարձակումները մեր լենինյան պարտիայի վրա, միահամուռ հավանություն կտան ընկեր Խրուշչովի գլխավորած ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության քաղաքական գործունեությանն ու պրակտիկ գործողություններին և ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներին:



# Գաղափարական-հարձակողական պայքարը ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ գրավականն է

## ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

Բ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

*Համաշխարհային պատմության շրջադարձային պահերին միշտ էլ մեծ գաղափարներ են ծնվում։ Հոգևոր վսեմ արժեքները կերտվում են ռևոլյուցիոն հրդեհի ֆոնի վրա, դասակարգային մարտերի քուրայում։ Եվ ահա մեր օրերում էլ խորտակվում է իմպերիալիզմի սնանկ փիլիսոփայությունը, անվերապահորեն հաստատվում է կոմունիստական գաղափարախոսությունը՝ Խաղաղության, Աշխատանքի, Ազատության, Հավասարության, Եղբայրության և բոլոր ժողովուրդների երջանկության վերաբերյալ գաղափարների ու պատկերացումների այդ կուռ աշխարհըմբռնումը։*

### I

*Մարդկանց և ժողովուրդների՝ պատմականորեն իրենց դարն ապրած փոխհարաբերությունների սիստեմի ռևոլյուցիոն խորտակումը և բուրժուական հարաբերությունների ավերակների վրա կոմունիստական նոր հարաբերությունների կառուցումը տեղի են ունենում անհամաչափ կերպով։ Արդի աշխարհում տնտեսական և սոցիալական հակասությունների զարգացման անհամաչափությունը բացառում է նոր հասարակարգի միաժամանակյա հաղթանակը բոլոր երկրներում։ Ահա այստեղից էլ բխում է հակադիր հասարակական ու համաշխարհային սիստեմների գոյակցության պրոբլեմը։*

*Հակադրությունների գոյակցությունը պայմանավորում է նրանց պայքարը։ Ընդսմին սոցիալիզմի ու կապիտալիզմի գոյակցության տարբեր էտապներում այդ հակադրությունների պայքարն ընդունել է տարբեր ձևեր, մղվել է տարբեր միջոցներով և ունեցել տարբեր թափ և ուժգնություն։ Իմպերիալիզմը միշտ էլ պարտություններ է կրել պայքարի բոլոր այն ձևերում, որպիսիք ինքը ցանկացել է պարտադրել սոցիալիզմին։*

*Կապիտալին չհաջողվեց հաղթանակել ո՛չ այն ժամանակ, երբ սոցիալիզմը դեռևս «օրորոցում էր» և երբ զինված փորձ կատարվեց «խեղդելու նորածնին», ոչ էլ այն ժամանակ, երբ «հին կարգ ու կանոնի» պահպանիչները փորձում էին, ֆաշիստական զրահ հագած, ոչնչացնել «անբնական» սիստեմը։ Կապիտալը լիովին կորցրեց զենքի ուժով հաղթանակ տանելու իր հույսերը, որովհետև ստեղծելով ամենահզոր զենքը, նա դրանով իսկ ստիպեց սոցիալիզմին նույնպես ստեղծել միջուկային հզոր ուժ և այն վերածել հատուցման խորտակիչ մի միջոցի։ Այն ժամանակ հին աշխարհի ջատագովները՝ Ուինստոն Չերչիլից մինչև Ջոն Քենեդին, պետք է որ որդեգրեին այն միտքը, որ Պլուտարքոսը վերագրել է Կեսարին, այն է՝ «լինում է ժամանակ, երբ նպաստավոր է գործել սրով, իսկ մի այլ ժամանակ՝ օրենքով»։*



*Կապիտալը կանգնեց իր սեփական պատրանքների կոտրած տաշտակի առաջ նաև տնտեսական քաղաքականության բնագավառում, որի նպատակն էր կասեցնել սոցիալիզմի զարգացումը։ Ոչ մի ցանկալի արդյունք չտվեց տնտեսական բռնության քաղաքականությունը, որն արտահայտվեց հաղթանակած սոցիալիստական ռևոլյուցիայի երկրի տնտեսական բլոկադայի, առևտրական պատերազմի և զանազան սահմանափակումների ձևով։ Օգտագործելով նոր հասարակարգի որակական առավելությունները, սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարեց լենինյան պատգամը և «սեղմելով բռունցքներն ու ատամները», արագ ու ճախարակի տրեխավոր երկիրը հանեց բարձր զարգացած ինդուստրիալ տերության ուղեծիր, որը շուտով տնտեսապես ամենաառաջինը կլինի արդի աշխարհում։ Սնանկացան սոցիալիզմի դեմ իմպերիալիզմի մղած պայքարի ինչպես տնտեսական, այնպես էլ զինված ձևերը։*

*Հակասոցիալիստական գաղափարների և իմպերիալիզմի այլ գործողությունների պարտությունները պայմանավորված էին սոցիալիզմի հոյակապ նվաճումներով, որոնք իրենց հզոր ներգործությունն ունեցան մեր դարի բոլոր հասարակական պրոցեսների վրա։ Հաղթանակելով մեկ երկրում, սոցիալիզմն իր օրինակի ուժով անհամեմատ ավելի մեծ դեր խաղաց արդի մարդկության կյանքում, քան բոլոր իմպերիալիստական տերությունները միասին վերցրած։*

*Սոցիալիզմն արդի աշխարհում խաղաց ռևոլյուցիոն վերափոխությունների վիթխարի արագացուցչի դեր։ Զարգանալով ու վերածվելով համաշխարհային սիստեմի, հաղթանակելով վերջնականապես, այն դարձավ ամբողջ մարդկության մայրուղին, որը տանում է դեպի նոր աշխարհի հոյակերտ շենքը։*

### II

*Հասարակական և համաշխարհային հակադիր սիստեմների՝ սոցիալիստական և իմպերիալիստական սիստեմների զարգացման նոր էտապում ռեալ հնարավորություններ են ստեղծվել՝ նոր ձևով լուծելու նրանց միջև եղած հակասությունները։ Մարդկությունը հասել է այնպիսի մի դրության, երբ միջազգային կյանքի կարևորագույն պրոբլեմների լուծումն այլևս կախված չէ լոկ կապիտալիզմի օրենքներից։ Խիստ նեղացել է այդ օրենքների գործողության ոլորտը։ Սոցիալիզմը դառնալով համաշխարհային սիստեմ, դրա հետ մեկտեղ սկսել է ավելի ու ավելի վճռական ներգործել միջազգային կյանքի զարգացման վրա։ Սոցիալական հակադիր ուժերի հարաբերակցության մեջ եղած արմատական փոփոխությունները, որոնք բնութագրվում են հօգուտ սոցիալիզմի կատարված էական տեղաշարժերով, ինչպես նաև ջերմամիջուկային զենքի ստեղծման հետևանքով հենց ուժ հասկացության բովանդակության մեջ եղած փոփոխությունները, հող են ստեղծել հակասությունների լուծման իմպերիալիստական ձևերը փոխարինելու նոր ձևերով։ Լիովին բացահայտ է դարձել այն անհամապատասխանությունը, անգամ կարելի է ասել այն հակասականությունը, որ կա պատմական նոր պայմանների և ուժի այն քաղաքականության միջև,*

որ կիրառում է իմպերիալիզմը միջազգային հարաբերություններում։

Արդի աշխարհում տեղի ունեցող փոփոխություններն անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծել այն բանի համար, որ հիմնովին փոխվեն պատմականորեն արդեն հնացած «ուժի իշխանության» սկզբունքները, որոնք միջազգային հարաբերությունների մեջ կիրառվում էին դեռևս հին դարերից, երբ հասարակությունը նոր էր բաժանվել հակամարտ դասակարգերի։ Այդ սկզբունքները պետք է փոխարինվեն այն նոր սկզբունքներով, որ առաջ է քաշել Լենինը դեռևս սովետական իշխանության արշալույսին։ Դրանց էությունը հասարակական ու համաշխարհային հակադիր սիստեմների խաղաղ գոյակցությունն է։

Սոցիալական հակադիր սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը գործում է այն ամբողջ ժամանակաշրջանի ընթացքում, երբ տեղի է ունենում զառամյալ կապիտալիզմի քայքայումն ու անկումը իր ներքին հակասությունների և մասսաների ռևոլյուցիոն պայքարի հետևանքով։

Բայց խաղաղ գոյակցությունը լոկ սկզբունք չէ, որը որոշում է երկու սիստեմների փոխհարաբերությունների բնույթը։ Խաղաղ գոյակցությունը միաժամանակ նշանակում է նաև պայքարի նոր ձև պետությունների, անգամ նույնիսկ պետությունների սիստեմների մեջ կազմակերպված այնպիսի սոցիալական հակադիր ուժերի միջև, ինչպիսին են բանվոր դասակարգը և իմպերիալիստական բուրժուազիան։ Խաղաղ գոյակցությունը նաև քաղաքականություն է, որը սոցիալիզմը հակադրում է իմպերիալիզմին, նրա բռնության քաղաքականությանը միջազգային հարաբերությունների ոլորտում։ Խաղաղ գոյակցությունն այն գաղափարների ու գործողությունների ամբողջությունն է, որոնք միջազգային հարաբերություններում ապահովում են բանվոր դասակարգի, բոլոր երկրների աշխատավորների արմատական շահերի պաշտպանությունը։

Չի կարելի նույնացնել խաղաղ գոյակցություն և խաղաղություն հասկացողությունները։ «Խաղաղությունը և խաղաղ գոյակցությունը բոլորովին էլ նույնը չեն,— ասում է Ն. Ս. Խրուշչովը։— Խաղաղ գոյակցությունը ո՛չ թե պարզապես պատերազմի բացակայություն է, ոչ թե պատերազմների միջև ժամանակավոր, անկայուն զինադադար է, դա երկու հակադիր հասարակական սիստեմների գոյակցությունն է՝ հիմնված պատերազմից, որպես միջպետական վեճերի լուծման միջոցից, փոխադարձաբար հրաժարվելու վրա» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 37)։

Խաղաղ գոյակցությունը միջազգային մասշտաբով մղվող դասակարգային պայքարի, քաղաքական, տնտեսական ու գաղափարական պայքարի յուրահատուկ մի ձև է, որը բացառում է հակադիր ուժերի զինված ընդհարումը, համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը։ Խաղաղ գոյակցության քաղաքականության, այսինքն՝ միջազգային ասպարեզում իմպերիալիզմի դեմ մղվող դասակարգային պայքարի միջոցով սոցիալիզմը կարողանում է միջազգային նպաստավոր պայմաններ ապահովել ամբողջ աշխարհի պրոլետարիատի, աշխատավորների լայն մասսաների դասակարգային ու համադեմոկրատական շարժումների հաջողության համար։ Կանխելով պատերազմը, կազմակերպելով և գլխավորելով ժողովուրդների պայքարը պատերազմի դեմ, սոցիալիզմը նպաստում է ազատագրական շարժումների հետագա ծավալմանը, այն շարժումների, որոնց փշոտ ճանապարհով արդի մարդկությունը գնում է դեպի հասարակական պատմության ավելի բարձր աստիճանը։



## III

Հասարակության կյանքից պատերազմը բացառելու, կայուն խաղաղություն ապահովելու ձգտումը ամենևին էլ չի նշանակում հրաժարվել պայքարից։ Խաղաղ գոյակցությունը հրաժարում չէ պայքարից։ Ասենք, այլ կերպ չի էլ կարող լինել։ Հասարակական տնտեսական հակամարտ ֆորմացիաների առկայությունը բացառում է պայքարի վերացումը կամ մարումը։ Հասարակական և համաշխարհային հակամարտ սիստեմների միջև պայքարը կզարգանա հարաճուն ուժով ընդհուպ մինչև կոմունիստական ֆորմացիայի հաղթանակը համաշխարհային մասշտաբով։ Ոչ մի կառավարություն, ոչ մի քաղաքական պարտիա չի կարող դադարեցնել սոցիալիզմի և կապիտալիզմի պայքարը թեկուզ հենց միայն այն պատճառով, որ ոչ ոք ի վիճակի չէ վերացնելու հասարակական հակադիր սիստեմների զարգացման օբյեկտիվ օրենքների գործողությունները։ Հակադրությունների պայքարն անխուսափելի է։ Եվ խաղաղ գոյակցության կողմնակիցները բնավ չեն թաքցնում այդ։ Կոմունիստները երբեք չեն սքողել իրենց վերջնական նպատակը։ Նրանք միշտ էլ բացահայտ կերպով ազդարարել են և ազդարարում են կապիտալի նկատմամբ աշխատանքի կատարյալ հաղթանակի անխուսափելիությունը, կոմունիզմի հաղթանակի անխուսափելիությունն ամբողջ աշխարհում։

Սակայն դրանից ամենևին չի բխում, թե համաշխարհային մասշտաբով կոմունիզմը կհաղթանակի համաշխարհային հակադիր սիստեմների զինված ընդհարման միջոցով, համաշխարհային նոր պատերազմի հետևանքով։ Այդպիսի մեկնաբանությունները ոչ մի առնչություն չունեն մարքսիզմի հետ, պատմական պրոցեսի գիտական, մատերիալիստական ըմբռնման հետ։

Չժխտելով համաշխարհային երկու սիստեմների միջև մղվող պայքարը, Սովետական Միության կոմունիստական պարտիան վճռականորեն մերժում է պատերազմների, որպես միջազգային մասշտաբով սոցիալիզմի ու կապիտալիզմի վեճը լուծելու միջոցի, անխուսափելիության միտքը։ Հակադրությունների առկայությունն անխուսափելի է դարձնում պայքարը նրանց միջև։ Բայց հակադրությունների պայքարը կարող է ընթանալ նաև այնպիսի ձևերով, որոնք բացառում են ջերմամիջուկային կատաստրոֆիկ պատերազմը։ Այդ պայքարին կարելի է տալ այնպիսի ձև, որն ամենից ավելի է համապատասխանում համաշխարհային պատմության զարգացման արդի էտապին։ Հետևապես, խոսքը կարող է վերաբերել ոչ թե սոցիալական հակադիր սիստեմների պայքարից հրաժարվելուն, այլ պայքարի այնպիսի ձևեր ընտրելուն, որոնք բացառում են ատոմա-ջրածնային պատերազմը։

Արդի դարաշրջանում, որի հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, բացառվում է սոսկ կապիտալիստական ֆորմացիայի օրենքների ճակատագրական գործողությունը, այն ֆորմացիայի, որը, Ժորեսի խոսքերով ասած, «իր ընդերքում նյութում է պատերազմ, ինչպես ամպը՝ ամպրոպ»։ Իր դարն ապրած հասարակարգի օրենքների հետ մեկտեղ ներկայումս գործում են սոցիալիզմի օրենքները, որոնք խաղաղություն են հաստատում երկրագնդի վրա։

Քանի որ հասարակական կյանքի կերտողները գիտակցությամբ օժտված մարդիկ են, որոնց գործողությունները վերջին հաշվով պայմանավորված են օբյեկտիվ տնտեսական օրենքներով, և քանի որ ներկայումս գործում են երկու սիստեմների ծնունդ հանդիսացող երկու շարք օրինաչափություններ, ապա

այդ հակադրությունների միջև պայքարի ձևերի ընտրությունն իր հիմքում ունի երկու ռեալ հնարավորություններ։ Մեկը համապատասխանում է կապիտալիզմի օրենքների գործողություններին, մյուսը՝ սոցիալիզմի։ Բայց այդ նշանակում է, որ արդի դարաշրջանում համաշխարհային հակադիր սիստեմների հակասությունների լուծման ձևերի իրացման ասպարեզում հսկայական չափով աճել է սուբյեկտիվ գործոնի, ժողովրդական մասսաների, դասակարգերի, քաղաքական պարտիաների, նրանց լիդերների ու առաջնորդների դերը։

Վերջին տասնամյակի միջազգային հարաբերությունների փորձը ոչ մի տարակուսանք չի հարուցում նախ և առաջ այն բանում, որ ռեալ կերպով հնարավոր է ընտրել երկու հակադիր համաշխարհային սիստեմների պայքարի ձևերը և, երկրորդ, որ սոցիալիստական սիստեմը, ժամանակակից մարդկության բոլոր առաջավոր ուժերն ավելի ու ավելի վճռականորեն են օգտագործում այդ հնարավորությունը հօգուտ միջազգային խաղաղության և հասարակական առաջադիմության։ «Այն փաստը,— ընդգծում է Ն. Ս. Խրուշչովը,— որ հաջողվեց պատերազմը կանխել և սովետական մարդիկ, մյուս երկրների ժողովուրդները կարողացան օգտվել խաղաղ կյանքի բարիքներից, պետք է դիտել որպես Սովետական պետության հզորության մեծացման, լենինյան արտաքին քաղաքականության իրագործման ուղղությամբ պարտիայի, նրա Կենտրոնական կոմիտեի գործողության գլխավոր արդյունք, որպես սոցիալիզմի երկրների եղբայրական պարտիաների գործունեության, բոլոր երկրների խաղաղասեր ուժերի ակտիվացման արդյունք» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 6)։

IV

Պարտություն կրելով ռազմա-քաղաքական և տնտեսական բռնի ակցիաների միջոցով պատմության անիվը ետ շրջելու բոլոր փորձերում և սկսելով հասկանալ, որ Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների դեմ պատերազմը կտանի դեպի կապիտալիստական կարգի կործանում, իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանները կանգնեցին հետևյալ պատմական երկընտրանքի առաջ. կամ ընդունել հակադիր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, կամ կործանվել ջերմամիջուկային պատերազմում։

Այդ պայմաններում ինչպես իրենք՝ իմպերիալիզմի ստրատեգներն ու գաղափարախոսներն են խոստովանում, գլխավոր հույսը դնում են գաղափարական դիվերսիաների վրա։ «Այժմ,— ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում ասաց Ն. Ս. Խրուշչովը 1963 թ. հունիսի 21-ին,— մեր թշնամիները գլխավոր ջանքերը կենտրոնացրել են սոցիալիզմի երկրների դեմ մղվող գաղափարական պայքարի վրա։ Իմպերիալիզմի գաղափարախոսներն իրենց մխիթարում են այն հույսով, թե կարող են մեզ ներսից քայքայել թշնամական գաղափարախոսության օգնությամբ»։

Գաղափարախոսությունը դառնում է ամենակատաղի դասակարգային մարտերի թատերաբեմ։ Եվ այդ հասկանալի է, որովհետև դրա մեջ են իրենց խտացված արտահայտությունը գտնում արդի հասարակության հակադիր սոցիալական ուժերի և նրանց ծնունդ հանդիսացող համաշխարհային հակադիր սիստեմների արմատական շահերը։

Ռևոլյուցիոն պրոլետարիատի մեծ ուսմունքը, հասարակական զարգացման օրենքների մարքս-լենինյան գիտությունը և բանվոր դասակարգի պայքարի



պատմական փորձը ոչ մի տարակույս չեն թողնում, որ հակադիր դասակարգերի գաղափարախոսությունների միջև չի կարող լինել ո՛չ խաղաղություն, ո՛չ զինադադար և ո՛չ էլ, առավել ևս, կոմպրոմիսներ։ Վճռականորեն մերժելով գաղափարախոսության բնագավառում կոմպրոմիսների ամեն մի հնարավորություն, Վ. Ի. Լենինը գրում էր. «...հարցը դրվում է միայն այսպես. բուրժուակա՞ն, թե սոցիալիստական իդեոլոգիա։ Միջինը չկա այստեղ (որովհետև մարդկությունը ոչ մի «երրորդ» իդեոլոգիա չի ստեղծել, բացի դրանից, դասակարգային հակասություններից ծվատվող հասարակության մեջ առհասարակ երբեք չի էլ կարող լինել ապադասակարգային կամ վերդասակարգային իդեոլոգիա»)։

Հակամարտ դասակարգերի գաղափարախոսությունների անհաշտությունը պայմանավորված է ո՛չ միայն նրանց արմատական շահերի հակադիր բնույթով։ Այդ բխում է նաև այն բանից, որ դասակարգերի գաղափարախոսություններում մարմնավորված է այդ դասակարգերի վերջնական նպատակը, նրանց պայքարի հիմնական շարժառիթը։ Իսկ հակամարտ դասակարգերն ունեն հակամարտ վերջնական նպատակներ։ Դրանք չի կարելի համատեղել։ Դրանք չի կարելի հաշտեցնել։

Համաշխարհային մասշտաբով կոմունիզմի լիակատար հաղթանակի անխուսափելիության գաղափարը չի կարելի հաշտեցնել կապիտալիզմի միջտնչենականության քարոզի հետ։ Իսկ այդ վերջին միտքը կազմում է արդի իմպերիալիզմի գաղափարական ստրատեգիայի այն շտամպների սիստեմի հիմքը, որոնց մասին ընկ. Լ. Ֆ. Իլյիչովը խոսեց Կենտկոմի հունիսյան պլենումում։

Դրանց հեղինակներն ապարդյուն կերպով ցանկանում են ներշնչել այն միտքը, թե կապիտալիզմի էության մեջ տեղի են ունեցել այնպիսի արմատական փոփոխություններ, որոնք, որպես թե, բացառում են նրա կործանումը։ Այսպես, անգլիացի ականավոր բուրժուական սոցիոլոգ Ջոն Պլամենացը պնդում է, թե այլևս գոյություն չունեն Մարքսի ժամանակների «կապիտալիստական էկոնոմիկա»-ն և Արևմուտքի սոցիալական կառուցվածքը։ Իբր Արևմուտքում, Մարքսից հետո, տեղի է ունեցել «սոցիալական մեծ ռևոլյուցիա» և, որպես թե, ինչպես գրում է Պլամենացը, «Մարքսը չէր կանխատեսել այդ մեծ ու խաղաղ սոցիալական ռևոլյուցիան»։ Այնուհետև այդ սոցիոլոգը հանգում է այն հետևության, թե կապիտալիզմի անխուսափելի կործանման վերաբերյալ Մարքսի ասույթները հնացել են։ Մի փոքր այլ ձևով այդ նույն միտքն է հրամցնում Հանս Կոնը՝ ամերիկյան սոցիոլոգիայի լիդերներից մեկը։ Ժխտելով այն բանը, որ աննախընթաց ճգնաժամի ըմբռնումը ներկայումս լիովին ընդգրկել է կապիտալիստական Արևմուտքի քաղաքական, սոցիալական ու մտավոր կյանքի բոլոր կողմերը, Կոնը պնդում է, թե այդ ճգնաժամն արտահայտում է ոչ թե կապիտալիզմի անկումը, այլ նրա «պատանեկան հասակի դժվարությունները»։

Նման ջատագովական բնույթի դատողությունների նպատակն է յուրովի կանխորոշել վեճը մարքսիզմի հետ, որի խոր և գիտական ճշմարտացիությունն անվերապահորեն ապացուցված է մարդկության մեկ երրորդի ռևոլյուցիոն մեծ փորձով։ Ակնհայտ է, որ բուն իսկ պատմական պրակտիկան բացառում է կոմպրոմիսների ամեն մի հնարավորություն։ Ոչ մի կերպ չի կարելի հաշտեցնել նման դատողությունները մարքսիզմի հիմնական մտքերի հետ, որը գիտական ճշգրտությամբ ապացուցել է կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի պատմական անխուսափելիությունը։

Իմպերիալիզմի գաղափարական ստրատեգիայի քառակողմ շտամպի մյուս կողմը այն պնդումն է, որ, իբր թե, արդի կապիտալիզմը, ազատվելով սոցիալական կոնֆլիկտներից, այժմ իր «երկրորդ շունչն» է առնում և այդ իսկ պատճառով անիմաստ է խոսել նրա կործանման անխուսափելիության մասին։ Այդպիսի տեսակետ են պաշտպանում բազմաթիվ բուրժուական սոցիոլոգներ։ Ռ. Արոնը, Թ. Հեյգերը, Թ. Մարշալը, Գ. Շելսկին, ելնելով այն պնդումներից, թե կապիտալիստական կարգը ոչ թե քարացած, այլ անընդհատ զարգացող սիստեմ է, ջանում են ամեն կերպ ապացուցել, թե իբր կապիտալիզմը «դեմոկրատացվել է», այդ իսկ պատճառով նրան պետք է անվանել ոչ թե պարզապես «կապիտալիզմ», այլ «ժողովրդական կապիտալիզմ»։ Այդ կոնցեպցիայի հիմնական գաղափարը այսպես կոչված «սոցիալական շարժունակությունն է», այսինքն՝ այն սոցիալական պայմանների ոչնչացումը, որոնք արգելակում են առանձին անհատների, սոցիալական ամբողջ խմբերի ու դասակարգերի տեղափոխումը տնտեսական մի գոյավիճակից դեպի մյուսը։ Այնպիսի սոցիոլոգներ, ինչպիսիք են՝ Թ. Մարշալը, Հ. Կոնը, Ռ. Արոնը, ճգնում են համոզել, թե արդեն այսօր Արևմուտքը տալիս է «անդասակարգ» հասարակության օրինակ։ «Միացյալ Նահանգներում,— գրում է Ռ. Արոնը,— պրոլետարիատն իրեն այդպիսին չի զգում։ Բանվորական կազմակերպությունները պահանջում և ձեռք են բերում այնպիսի ռեֆորմներ, որպիսիք Եվրոպայում պետական քարօրության կամ սոցիալիզմի հետ են կապվում»։

Հարց է ծագում, ի՞նչ կոմպրոմիս կարող է լինել նման մտքերի և մարքսիզմի ուսմունքի միջև։ Հայտնի է մարքսյան ուսմունքը բուրժուական հասարակության դասակարգային տրոհվածության, դասակարգային հակամարտության ու դասակարգային պայքարի մասին։ Այդ ուսմունքը հաստատվում է հենց նույն ԱՄՆ-ի տարբեր դասակարգերի դրության միջև եղած խոր անդունդի առկայության մասին վկայող փաստերով։ Անժխտելի փաստ է, որ ԱՄՆ-ում բնակչության մեկ տոկոսը տիրում է ամբողջ ազգային հարստության 59 տոկոսին, իսկ բնակչության 87 տոկոսին բաժին է ընկնում այդ հարստության լոկ 8 տոկոսը։ Փաստ է նաև այն, որ Անգլիայում չափահաս քաղաքացիների մեկ տոկոսը տիրում է երկրի ազգային հարստության 56 տոկոսին, իսկ ԳՖՌ-ում 2532 ակցիոներական ընկերությունների, ամբողջ հիմնական կապիտալի 82,1 տոկոսը 1957 թվականին պատկանում էր միայն 333 բաժնետիրական ընկերություններին, որոնք իրենց ձեռքում էին պահում մետաղամշակման ինդուստրիայի 81, նավթային արդյունաբերության 90, բաժնետիրական կապիտալի 99 տոկոսը։

Այս չափազանց համառ փաստերն այնուամենայնիվ ստիպել են ամերիկացի սոցիոլոգներ Ռամենին և Մայերին անել հետևյալ բնորոշ խոստովանությունները։ Նրանք գրում են. «Եվրոպական հասարակության դասակարգային բաժանումն այնքան թափանցիկ է, որ այն չի կարելի ժխտել։ Իսկ Ամերիկայում... հակառակ այն բոլոր պատմական առասպելների, թե ամեններ լվացողը միլիոնատեր է դառնում, փորձառական հետազոտությունը լիակատար անտարակուսելիությամբ ապացուցում է լայն զարգացած դասակարգային սիստեմի գոյությունը»։

Այդ հետևությունները կարելի է հաստատել բազմաթիվ այլ փաստերով, օրինակ, 82 հազար ծովայինների գործադուլը, որը կանգնեցրել էր ամերիկյան առևտրական նավատորմը, «Ջեներալ մոտորս» և «Ֆորդ մոտորս» ավտոմոբիլային ֆիրմաների բանվորների ու ծառայողների վիթխարի գործադուլները, որոնց մասնակցում էին շուրջ 400 հազար մարդ և բազմաթիվ այլ փաստեր, որոնք ճիվաղ կապիտալիզմի այլանդակ դեմքի վրայից պոկում են «դեմոկրատիզմի» և «հումանիզմի» դիմակը։



Արտադրության միջոցների տիրապետման ասպարեզում գոյություն ունեցող խոր անհավասարությունը, որն իր հերթին պայմանավորում է արդի կապիտալիստական հասարակության սոցիալական անհավասարության դրսևորման մյուս բոլոր ձևերը և պրոլետարիատի դասակարգային պայքարի անշեղ աճումը, մեկընդմիշտ վերջ են տալիս գաղափարախոսության բնագավառում կոմպրոմիսների հնարավորության վերաբերյալ հեքիաթներին։

Իմպերիալիզմի մտավոր կենտրոնների կողմից գործի դրված մյուս երկու շտամպներն ամբողջապես զրպարտություն են սոցիալիզմի հասցեին։ Ըստ էության հերքելու կարիք էլ չկա այն անհեթեթությունը, թե իբր սոցիալիզմը հասարակությանը զրկել է կենսագործունեության խթանից, իսկ անհատին՝ ազատությունից և ստեղծագործելու հնարավորությունից։ Հակակոմունիզմի կատաղության բուն փաստը արդյունք է հենց սոցիալիստական հասարակարգի ուժերի հզոր աճման, միլիոնավոր սոցիալիստական անհատների ստեղծագործական ուժերի աճման այնպիսի սոցիալիստական անհատների, ինչպիսին է, օրինակ՝ մեր առաջին կին տիեզերագնացը, որին միլիոնավոր մարդիկ, Անդրե Վյուրմսերի խոսքերով ասած, անվանեցին «արդարության մունետիկ, մեր երազանքների ժպտուն մարմնացում»։

Հակակոմունիզմի երկրորդ, համեմատաբար նոր, բայց նույնքան անհեթեթ մոդայական «կոնցեպցիան», այսպես կոչված, հակադրությունների «հիբրիդիզացիան» է, «սինթեզը», որ պետք է տեղի ունենա «սոցիալիզմի ներքին փոփոխության» ճանապարհով և «կապիտալիզմի մի որոշ մոդեռնացման» միջոցով։ Այսքան ողորմելի ու խղճուկ միտքը բերնե-բերան շրջում է բազմաթիվ բուրժուական սոցիոլոգների երկերում։ Այսպես, օրինակ, ֆրանսիական տնտեսագետ Պոլակը պնդում է, թե կապիտալիստական երկրներում պետության դերի ուժեղանալը և սոցիալիզմի երկրներում պլանային էկոնոմիկայի «լիբերալացումը» որպես թե հիմք են ստեղծում տնտեսական սիստեմների փոխադարձ մերձեցման համար։ Այս չափազանց բացահայտ սոցիալական դեմագոգիայով առանձնապես հրապուրվում են ամերիկացիներ Կ. Բրինտոնը, Դ. Պերկինսը, Վոթհեմը և շատ ուրիշներ, ովքեր ամեն կերպ ձգտում են արդարացնել պատմականորեն իր դարն ապրած հասարակարգի գոյությունը։ Բայց այդ, թերևս, կոմպրոմիսի ամենամերկապարանոց քարոզն է այնպիսի մի բնագավառում, որը բացառում է ամեն մի կոմպրոմիս։

Գաղափարախոսության ասպարեզում պայքարը դադարեցնելը, կամ կոմպրոմիսային համաձայնություններ կնքելը կնշանակեր հրաժարվել պրոլետարիատի նպատակներից, ապակողմնորոշել նրան, սասանել բոլոր աշխատավորների հակաիմպերիալիստական պայքարի հիմքը։ Բայց կոմունիստները երբեք չեն կանգնի այդ ուղու վրա։ Այդպիսի ուղիով չեն գնա նրանք, որոնց ուսերի վրա դրված է կապիտալի տիրապետության դեմ, սոցիալական անհավասարության բոլոր ձևերի խորտակումը հետապնդող պայքարի կազմակերպման և գլխավորման պատմական մեծ պարտականությունը։ Այդ ուղին պիտանի չէ նրանց համար, ովքեր իրենց առաջիկա նպատակն են համարում մարդկու-

թյանն ազատելը ժամանակակից պատերազմի սարսափներից, պատերազմը բացառելը հասարակության կյանքից։

Սովետական Միության կոմունիստական պարտիան իր պատմության ընթացքում չի հանդուրժել և առավել ևս այժմ չի հանդուրժում որևէ բուրժուական գաղափարախոսություն, որի նպատակն է ժողովուրդների գիտակցությունը թունավորել կոմունիզմի ուժերի նկատմամբ անհավատություն սերմանելով և այդ միջոցով կասեցնել սոցիալիզմի և հակաիմպերիալիստական, ազատագրական շարժման բոլոր ձևերի զարգացումը։ Պարտիան հանդուրժողություն չի կարող ցուցաբերել մանավանդ սովետական ստեղծագործական ինտելիգենցիայի մեջ բուրժուական գաղափարախոսության ներթափանցման թեկուզև առանձին ռեցիդիվների նկատմամբ։ Բուրժուական գաղափարախոսության նկատմամբ հանդուրժողականությունը և կոմպրոմիսները, ինչ ձևով էլ որ դրանք դրսևորվեն մեր միջավայրում, լոկ ջուր են լցնում մեր դասակարգային թշնամիների ջրաղացին, վնաս են հասցնում սոցիալիզմի գործին։

Դժբախտաբար, մեր գրականության և արվեստի ոչ բոլոր ներկայացուցիչներն են կարողանում միշտ պատշաճ կերպով կողմնորոշվել գաղափարական պայքարի առանձին ճակատամասերում։ Պատահում են նաև այնպիսիները, որոնք ենթարկվելով բուրժուական պրոպագանդայի հնարանքներին, փորձում են թքակոծել կոմունիստական շինարարության տեսությունն ու պրակտիկան, անգամ չեն բարեհաճում տեսնել սոցիալիզմի նույնիսկ այն հաջողությունները, որպիսիք հարկադրված են ընդունել արդի կապիտալիզմի լիդերները և որպիսիք վերջիններին հարկադրում են խոսել Սովետական Միության հետ իրենց հարաբերությունները վերանայելու մասին։

Բայց նման վարքագիծը ոչ միայն չի ծառայում մեր պարտիայի ու ժողովրդի կենսական շահերին, այլև գործում է մեր ծրագրին ուղիղ հակառակ։ Նման մարդկանց «ստեղծագործությունը», որը հրամցվում է գաղափարախոսության բնագավառում խաղաղ գոյակցության կարծես թե անմեղ դիրքերից, ըստ էության արատավորում է այն ամենը, ինչ սուրբ է մեզ համար՝ սոցիալիզմի ու կոմունիզմի համար պարտիայի ու ժողովրդի մղած քաղաքական պայքարի պրակտիկան, մեր կոմունիստական գաղափարները, փորձում է խարխլել մեր ժողովրդի վստահությունը պարտիայի նկատմամբ։ Ահա թե ինչու վճռական հակահարված տալով նրանց, ում «գայթակղեցրել է սատանան», Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում ասում է. «Համաձայնել կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների խաղաղ գոյակցությանը՝ նշանակում է թշնամուն հնարավորություն տալ արատավորելու մեզ համար ամենաթանկ ամեն ինչ, խրախուսել գրպարտությունը, նպաստել ժողովրդի գիտակցության ապականմանը, քայքայել մեր կազմակերպվածությունը, ամեն կերպ արգելակել մեր առաջընթացը։ Մենք պայքարում ենք և այսուհետև էլ ամենայն անհաշտությամբ կպայքարենք ոչ միայն բուրժուական ապականված գաղափարախոսության դեմ, այլև մեր միջավայրում նրա գործակալների դեմ, որպես մեր դասակարգային թշնամիների գործակալների»։



# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԻՄՔԸ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆՆ Է


Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ


ՍՄԿՊ XXII համագումարի առաջադրած տնտեսական ու քաղաքական վիթխարի խնդիրների իրագործումը անմիջականորեն պայմանավորված է սովետական մարդկանց գաղափարական, քաղաքական դաստիարակության մակարդակով, այդ գործի նպատակասլացությամբ ու թափով։ Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցությունը, այնքան ավելի լրիվ ու լայնորեն են ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի ու մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման համար մղվող պայքարը։

Կոմունիզմի կառուցումը, նոր մարդու ձևավորումը տեղի են ունենում կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների պայքարի բացառիկ սրության պայմաններում։ Իմպերիալիզմի ջատագովները ճգնում են ամենաստոր միջոցներով «շոշափել» մեր մարդկանց գաղափարական ամրությունը, գաղափարապես զինաթափել նրանց։

Իմպերիալիզմի գաղափարական-քաղաքական գլխավոր զենքը հակակոմունիզմն է, որի դրոշի ներքո միասնական ճակատ են կազմել սոցիալական առաջադիմության բոլոր թշնամիները։ Իմպերիալիզմը ստեղծել է գաղափարական դիվերսիայի բազմաթիվ կենտրոններ, հետազոտական ինստիտուտներ, հզոր ռադիոկայաններ, հրատարակում է հակասովետական վիթխարի գրականություն, որոնց միջոցով գովաբանում է բուրժուական իրականությունը, վատաբանում ու զրպարտում սոցիալիստական կարգերը, հերյուրանքներ տարածում մարքսիզմի դեմ։

Իմպերիալիզմի պարագլուխները, նրա գաղափարախոսները ձգտում են խաղաղ գոյակցության սկզբունքը տարածել նաև կոմունիստական և բուրժուական գաղափարախոսության վրա, խաղաղ գոյակցության պայմաններն օգտագործել սեփական գաղափարները տարածելու, մարտնչող հակակոմունիզմ քարոզելու համար։ «Հին աշխարհը անդուլ կերպով շարունակում է գրոհել մեզ վրա,— ասում է ընկ. Խրուշչովը։— Եվ իմպերիալիստների գլխավոր զենքը գաղափարական դիվերսիան է»։

Ահա թե ինչու կոմունիստական պարտիան ոչ մի րոպե չի թուլացնում գաղափարական ակտիվ հարձակումը, մերկացնում է բուրժուական պրոպագան-

դայի հակակոմունիստական մարզանքները, հին աշխարհը պաշտպանելու նրա նորագույն պրիոմները, միշտ հիշելով Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ «Մեր խնդիրն է՝ հաղթահարել կապիտալիստների ո՛չ միայն ռազմական, ու քաղաքական, այլև գաղափարական ամբողջ դիմադրությունը, որն ամենախորն ու ամենազորն է» (Երկեր, հ. 31, էջ 464)։

Պարտիան գաղափարական աշխատանքը համարում է կոմունիզմի համար մղվող պայքարի կարևորագույն ճակատներից մեկը։ Պարտիայի և երկրի գաղափարական-քաղաքական կյանքում խոշոր իրադարձություն հանդիսացավ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հունիսյան պլենումը։ Պլենումում պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրների մասին ընկ. Լ. Ֆ. Իլյիչովի զեկուցման, ընկ. Ն. Ս. Խրուշչովի ճառի և պլենումի ընդունած որոշման մեջ տրվեցին պարտիայի աշխատանքի հիմնական ուղղություններն ու կոնկրետ խնդիրներն աշխատավորների կոմունիստական դաստիարակության բնագավառում։ Պարտիան նշեց, որ սովետական հասարակարգի զարգացման ներկա էտապում, երբ կոմունիստական իդեալները մարմնավորվում են կյանքում, երբ պետական, տնտեսական, դաստիարակչական գործունեության թափը ավելի ու ավելի է ուժգնանում, անհամեմատ բարձր պահանջներ են ներկայացվում գաղափարական աշխատանքին։

Մեր երկրում չկան անտագոնիստական դասակարգեր, դասակարգային բախումներ։ Հաստատվել է սովետական ժողովուրդների սոցիալ-քաղաքական ու գաղափարական կուռ միասնություն։ Սակայն այդ չի նշանակում, որ մենք աշխարհում կատարվող իրադարձությունները, կյանքի երևույթները չպետք է դիտենք ու գնահատենք դասակարգային, պարտիական դիրքերից։ Կոմունիստական պարտիան յուրաքանչյուր երևույթ վերլուծում է, մեկնակետ ունենալով այն, թե տվյալ երևույթը ինչպիսի կապի մեջ է համաշխարհային ասպարեզում մղվող գաղափարական պայքարի հետ. այդ նպաստո՞ւմ է բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարի գործին, թե խանգարում, ամրապնդո՞ւմ է կոմունիստական գաղափարախոսության դիրքերը, թե թուլացնում։ Պարտիայի գաղափարական գործունեությունն ուղղված է հենց այն նպատակին, որ սովետական բոլոր մարդիկ դաստիարակվեն բուրժուական գաղափարախոսության, բարոյականության, անցյալի մնացուկների նկատմամբ անհանդուրժողականության ոգով, կոմունիստական գաղափարայնության ոգով։

Սոցիալիզմը օրինաչափորեն վերաճում է կոմունիզմի։ Բայց դա ինքնաբերաբար, ավտոմատիկորեն չի կատարվում, այլ մարդու և նրա ստեղծագործ, գիտակից աշխատանքի միջոցով։ Հենվելով միայն օբյեկտիվ գործոնների վրա և սպասել, գաղափարական ներգործման բոլոր միջոցներով չարագացնել մարդկանց գիտակցության վերակառուցման պրոցեսը, նշանակում է չգլխավորել կոմունիզմի համար մղվող պայքարը։ Պարտիան քաղաքական, գաղափարական աշխատանքի բոլոր միջոցները ծառայեցնում է աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, կոմունիզմ կառուցող, նյութական բարիքներ ստեղծող մարդուն, որը կատարելագործում է արտադրությունը, հասնում ավելի բարձր տեխնիկական առաջադիմության, հայտաբերում նոր ռեզերվներ, արագացնում հասարակության առաջընթաց զարգացումը։ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը խնդիր դրեց ակտիվորեն ներգործել մարդկանց տրամադրությունների վրա, պաշտպանել նրանց նախաձեռնությունը, քաջալերել քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը, բարձրացնել նրանց կազմա-



կերպվածությունն ու գործարարությունը, հակահարված հասցնել պորտաբույծներին ու ձրիակերներին, հետամնաց, կոմունիստական գաղափարայնությանն անհարիր հայացքներ կրողներին, ժամանակին կանխել բացասական երևույթները։ Գաղափարական ներգործության բոլոր լծակները պետք է ուղղել հանրային հարստության նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու նպատակին, անհաշտ պայքար մղել անտնտեսվարության, շռայլության, աչքակապության դեմ, սովետական մարդկանց օրավուր դաստիարակել կոլեկտիվիզմի ոգով։

Կոմունիստական գաղափարայնությունը պահանջում է անտարբերությամբ չանցնել անբարոյական արարքների կողքով, այլ հանդես գալ պատիվն ու խիղճը կորցրած մարդկանց դեմ, հակահարված հասցնել խուլիգանին, հաշիվ պահանջել իր աշխատանքով չապրող մարդկանցից, մերկացնել բյուրոկրատի ու կարիերիստի անօրինական արարքն ու կամայականությունը, հասարակության շահերը պաշտպանելիս լինել խիստ սկզբունքային։

Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր պարտիական աշխատող, յուրաքանչյուր պրոպագանդիստ ու ագիտատոր խորապես գիտակցի, որ նա գաղափարական ճակատի ակտիվ մարտիկ է։ Մենք պետք է ոչ թե պաշտպանվենք, այլ հարձակվենք, ամբողջ թափով հարձակվենք մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների, բուրժուական գաղափարախոսության դեմ։ Դրա համար պարտիան գաղափարական աշխատողներից պահանջում է իրազեկություն, քաղաքական սուր հոտառություն, աշխատավորներին հետաքրքրող հարցերը մատչելի և համոզիչ կերպով բացատրելու, նրանց գիտակցության վրա շարունակ ազդելու, նրանց աշխարհըմբռնումը ձևավորելու հմտություն։



Պարտիայի գաղափարական գործունեության հիմքը մասսաների քաղաքական կրթությունն ու լուսավորությունն են, պրոպագանդիստների, դասախոսների, ագիտատորների մեծ բանակի աշխատանքը։

Քաղաքական լուսավորության սիստեմը, որը մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդայի հիմնական օղակն է, բացառիկ կարևոր դեր է խաղում սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորման, նրանց կոմունիստական իդեաների ոգով դաստիարակելու գործում։ Վերջին շրջանում մեզ մոտ նշանակալի բարելավվել ու կատարելագործվել են կոմունիստների, մասսաների քաղաքական կրթության ձևերը, բարձրացել ուսուցման որակը։

Պարտիական լուսավորության անցած ուսումնական տարվա արդյունքների ամփոփումը ցույց տվեց, որ ռեսպուբլիկայի պարտիական կոմիտեներն ու սկզբնական պարտիական կազմակերպություններն զգալի գործ կատարեցին կոմունիստների և անպարտիական աշխատավորների քաղաքական ուսուցման և գաղափարական դաստիարակության ուղղությամբ։ Հաշվի առնելով աշխատավորների հանրակրթական և քաղաքական պատրաստականության մակարդակն ու ցանկությունները, կազմակերպվել էին քաղաքական ուսուցման բազմազան օղակներ՝ քաղդպրոցներ, ՍՄԿՊ պատմության, քաղաքատնտեսության, մարքսիստական փիլիսոփայության, ընթացիկ քաղաքականության և միջազգային հարաբերությունների, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների, կոմունիստական էսթետիկայի, գիտական աթեիզմի, արդյունաբերության, գյուղատնտե-

սության, տրանսպորտի, շինարարության և առևտրի կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող խմբակներ ու սեմինարներ։

Քաղաքական լուսավորության սիստեմում սովորում էին 160 հազար մարդ, որից 80 հազարն անպարտիականներ էին։ Առանձնապես մեծ ուշադրություն հատկացվեց ինքնուրույն ուսուցման ձևերի ընդլայնմանը։ Եթե 1962 թվականին ռեսպուբլիկայում գործում էին 2270 սեմինար՝ 49 հազար ունկնդիրներով, ապա անցյալ տարի ստեղծվել էր 3335 սեմինար՝ 69 հազար ունկնդիրներով։ Բացի այդ, 11 հազար կոմունիստներ մարքս-լենինյան թեորիան և կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրում էին անհատական պլաններով։ Շատ բնական կերպով առավել մեծ հետաքրքրություն նկատվեց Սովետական Միության կոմունիստական պարտիայի հերոսական պատմության ուսումնասիրության նկատմամբ. ավելի քան 53 հազար մարդ ուսումնասիրում էին պարտիայի պատմությունը։

Անցած ուսումնական տարում պարտիական կոմիտեներն ու սկզբնական կազմակերպությունները կիրառեցին քաղաքական ուսուցման մի շարք նոր, մասսայական ձևեր ու մեթոդներ։ Այդ առումով աշխատավորական լայն մասսաների քաղաքական-գաղափարական մակարդակի բարձրացման, նրանց բազմակողմանի գիտելիքների հարստացման ուղղությամբ զգալի դեր են կատարում ռեսպուբլիկայում ստեղծված 157 ժողովրդական համալսարանները, գիտահանրամատչելի լեկտորիումները և կոմունիստական աշխատանքի դպրոցները, որոնցում ընդգրկված են 15 հազարից ավելի մարդ. նրանցից ավելի քան 10 հազարը անպարտիականներ են։

Պարտիական կազմակերպություններում պրոպագանդիստական աշխատանք էին կատարում մոտ ինն հազար մարդ, որոնց 95 տոկոսը՝ բարձրագույն և թերի բարձրագույն կրթությամբ։ Պրոպագանդիստական կադրերին տեսական և մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով ՀԿՊ Կենտկոմի քաղաքական լուսավորության տունը, ինչպես և պարտիական կոմիտեները տարվա ընթացքում սիստեմատիկաբար կազմակերպեցին սեմինար պարապմունքներ, որտեղ նրանք լսեցին և քննարկեցին բազմաթիվ բարձրորակ դասախոսություններ, զեկուցումներ, ծանոթացան պրոպագանդիստական աշխատանքի լավագույն փորձին։

Պարտիական լուսավորության ցանցի ունկնդիրները մարքսիստական-լենինյան թեորիան և կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրում էին կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ սերտորեն կապված, ձգտելով այն բանին, որ քաղաքական ուսուցումը, ամբողջ պրոպագանդիստական աշխատանքը նպաստի աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը և տնտեսական խնդիրների հաջող կատարմանը։ Դրա շնորհիվ պարտիական պրոպագանդան դարձավ ավելի ներգործուն և արդյունավետ։

Առանձնապես աճեց մեր կադրերի հետաքրքրությունը տնտեսագիտական թեորիայի և կոնկրետ էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրության նկատմամբ։ Ղեկավարվելով պարտիայի XXII համագումարի և Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներով և հաշվի առնելով աշխատավորների ցանկությունները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն նվիրեցին տնտեսական գիտելիքների պրոպագանդային։ Բավական է ասել, որ ավելի քան 60 հազար կոմունիստ և անպարտիական ուսում-



նասիրում էին տնտեսագիտության, գյուղատնտեսական ձեռնարկությունների, շինարարության, տրանսպորտի և առևտրի էկոնոմիկայի հարցերը։

Կոմունիստական շինարարության տեսական ու պրակտիկ հարցերի խոր ու բազմակողմանի ուսումնասիրությունը մեծապես նպաստեց ունկնդիրների քաղաքական աճին և արտադրական ակտիվության բարձրացմանը։ Ուսուցման այդ տիպի խմբակների ու սեմինարների ունկնդիրներն ակտիվ ու համարձակ վերլուծում էին իրենց ձեռնարկությունների ու կոլեկտիվների արտադրական-տնտեսական գործունեությունը, հանդես գալիս գործնական առաջարկություններով ու դիտողություններով, հայտաբերում ու գործի դնում ներքին ռեզերվները, նպաստում ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավմանը։

Բացի այդ, արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում շարքային աշխատողների համար կազմակերպվել ու գործում էին մասնագիտական տեխնիկական և ագրոզոոուսուցման բազմաթիվ խմբակներ ու դասընթացներ, որոնցում 20 հազար բանվորներ ու կոլտնտեսականներ բարձրացնում էին իրենց մասնագիտական որակավորումը, ուսումնասիրում արտադրության փարոսների, առաջավորների փորձը և հարըստացնում իրենց գիտելիքները։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները տնտեսական գիտելիքների պրոպագանդումը կազմակերպեցին նաև տեսական և գիտա-արտադրական կոնֆերանսների, դասախոսությունների, զեկուցումների միջոցով։

Տնտեսական գիտելիքների պրոպագանդմանը լայնորեն ներգրավվեցին պարտիական, սովետական և տնտեսական օրգանների ղեկավար աշխատողներ, ինժեներներ, տնտեսագետներ և գյուղատնտեսության մասնագետներ։ Արտադրության կոնկրետ ճյուղերին գիտակ մարդկանց ներգրավումը պրոպագանդիստական աշխատանքներում, զգալի չափով նպաստեց սերտորեն առնչելու տեսությունը պրակտիկայի, յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման հետ։

Կադրերի տնտեսական ուսուցման կազմակերպման տեսակետից դրական աշխատանք են կատարել Երևանի պոլիվինիլացետատ, Կիրովի անվան, էլեկտրամեքենաշինական գործարանների, Լենինականի, Կիրովականի, Իջևանի, Ստեփանավանի, Գորիսի արտադրական վարչությունների շատ պարտիական կազմակերպություններ։

Ուշադրության արժանի է Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի № 31 ցեխի փարոսների դպրոցի գործունեությունը, որը ղեկավարում է ցեխի տեխնոլոգ Մարտին Գյուլնազարյանը։ Դպրոցն ունկնդիրներին տալիս էր այն նորն ու առաջավորը, ինչ ձեռք է բերված գործարանի առաջավոր բանվորների կողմից։ Դպրոցում մեծ ուշադրություն էր նվիրվում արտադրության կազմակերպման հարցերի ուսումնասիրմանը։ Չորրորդ տարին է, ինչ Կիրովականի շինարարական տրեստի ինժեներ Լևոն Տեր-Սիմոնյանը ղեկավարում է տրեստի պարտիական կոմիտեին կից շինարարության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարը, որը տրեստում դարձել է առաջավոր մտքի, նոր ու արժեքավոր նախաձեռնությունների լավագույն օջախը։ Ընկ. Տեր-Սիմոնյանն առանձին դեպքերում սեմինար պարապմունքներն անց է կացնում անմիջապես շինարարական հրապարակներում ու օբյեկտներում, որտեղ և ուսումնասիրվում և ընդհանրացվում են աշխատանքի կազմակերպման առաջավոր մե-

թողներն ու ձևերը, տեսականն ամրապնդվում է պրակտիկայով։ Դրվատանքի արժանի է Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի ղեկավար Զ. Հակոբյանի փորձը։

Տեսությունը կյանքի հետ կապելու լավ փորձ ունի Անիի արտադրական վարչության Ախուրյանի կոլտնտեսության գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարը (սեմինարավար՝ կոլտնտեսության ագրոնոմ, պարտիական կազմակերպության քարտուղար Մ. Ոսկանյան)։ Այստեղ երբեմն առանձին թեմաների ուսումնասիրությանն ավելի շատ ժամանակ է հատկացվում, հաշվի առնելով կոլտնտեսային գործերի վիճակը։ Այսպես, օրինակ, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի վերաբերյալ թեման անցնելիս, նկատի ունենալով, որ իրենց մոտ բարձր է ճակնդեղի, կաթի, ձվի ինքնարժեքը, սեմինարավարը լրացուցիչ երեք պարապմունք նվիրեց վերոհիշյալ թեմային։ Պարապմունքների ժամանակ բացահայտվեցին իրենց մոտ գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի բարձր լինելու բուն պատճառները և արվեցին գործնական առաջարկություններ՝ այն իջեցնելու ուղղությամբ։ Ունկնդիրների բարձրացրած հարցերը քննարկվեցին պարտկազմակերպության ժողովում, հավանության արժանացան և այժմ կիրառվում են արտադրության մեջ։ Արդյունքը շոշափելի է՝ այստեղ զգալի չափով իջել է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։

Սակայն կարո՞ղ ենք ասել, որ ամենուրեք գործը պատշաճ ձևով է դրված, քաղաքական կրթության սիստեմն ամբողջապես ծառայում է աշխատավորության առջև դրված խնդիրների հաջող կատարմանը։ Իհարկե, ո՛չ։ Տակավին որոշ պարտիական կազմակերպություններ, շատ պրոպագանդիստներ, սեմինարավարներ թերանում են իրենց պարտականություններում, մեխանիկորեն են պատկերացնում պրոպագանդայի կապը կյանքի, պրակտիկայի հետ, վատ են տիրապետում ուսումնասիրվող պրոբլեմներին։

Գաղափարական աշխատանքում, հիրավի, էական թերություններ կան։ Ոչ բոլոր պարտիական կազմակերպություններն են ՍՄԿՊ ծրագրի և XXII համագումարի նյութերի պրոպագանդման և ուսումնասիրման գործը հմտորեն զուգակցում իրենց առջև կանգնած գործնական խնդիրների հետ։ Առանձին պարտիական կազմակերպություններում դեռևս հաղթահարված չէ գաղափարական աշխատանքի կտրվածությունը կյանքից, այն ուղղված չէ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակմանը։ Ինչ խոսք, այդ բացասաբար է անդրադառնում տնտեսական շինարարության վրա։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական որոշ ձեռնարկություններ չեն կատարում պետական առաջադրանքները, մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ թերակատարում են գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման առաջադրանքները, շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում ցածր է աշխատանքային կարգապահությունը։

Փոքր չէ այն պարտիական կազմակերպությունների թիվը, որոնք վատ են զբաղվում կադրերի տնտեսագիտական ուսուցման կազմակերպմամբ։ Օրինակ, Երևանի կոմպրեսորների և Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարաններում պարտկազմակերպությունների անտարբերության հետևանքով չեն գործել արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող տարրական տիպի խմբակներ, իսկ էլեկտրասպարատների գործարանում չստեղծվեց արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող և ոչ մի խմբակ։ Եվ սա այն դեպքում,



երբ գործարանը 1963 թ. չի կատարում սոցիալիստական պարտավորությունները, արտադրանքի ինքնարժեքի բարձրացման հետևանքով տալիս է մեծ գումարների հասնող գերածախս։

Տնտեսագիտական ուսուցմանը բավարար ուշադրություն չեն հատկացնում մի շարք այլ պարտիական կազմակերպություններ, որոնք դեռևս ամբողջ խորությամբ չեն գիտակցում, թե տնտեսագիտության ու արտադրության կոնկրետ էկոնոմիկայի խոր ուսումնասիրությունն ինչպիսի մեծ նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և որակի բարելավման համար մղվող պայքարում աշխատավորների ակտիվությունը բարձրացնելու գործում։ Քիչ չեն այն տնտեսավարները, որոնք տարբեր պատրվակներով խուսափում են քաղաքական, դաստիարակչական աշխատանքից, պատճառաբանելով իրենց զբաղվածությունը։ Նրանք մոռանում են, որ ո՛չ միայն արտադրության կազմակերպիչ են, այլև դաստիարակ, քաղաքական գործիչ։ ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը պահանջեց բոլոր ղեկավար աշխատողներից մշտապես ու ակտիվ մասնակցություն ունենալ գաղափարական աշխատանքին։



Դատապարտելով առանձին պարտիական կազմակերպությունների կամպանիոն ու դեկլարատիվ, գրասենյակային-բյուրոկրատական ոճը գաղափարական աշխատանքում, ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումն անհրաժեշտ համարեց գաղափարական գործունեության ասպարեզում հաստատակամորեն զարգացնել լենինյան ոճը, որը միավորում է բարձր սկզբունքայնությունը, կոմունիստական գաղափարայնությունը, անհաշտությունը թշնամական գաղափարախոսության նկատմամբ, ռևոլյուցիոն տեսության ստեղծագործական կիրառումն ու զարգացումը, տեսության ու պրակտիկայի միասնությունը, մասսաների համոզումը և նրանց կազմակերպումը՝ կոմունիստական շինարարության կենսական խնդիրների լուծման համար։

1920 թ. նոյեմբերին ժողովրդական կրթության նահանգական և գավառական բաժինների քաղլուսվարների համառուսաստանյան խորհրդակցությունում արտասանած ճառում Վ. Ի. Լենինն ասում էր. «Մենք ձեռք կբերենք այն ամենը, ինչ որ հարկավոր է, կհաղթահարենք բոլոր արգելքները, որոնք մնացել են մեզ հին հասարակարգից և որոնք միանգամից դեն շպրտել անկարելի է, հարկավոր է վերադաստիարակել մասսաներին, իսկ նրանց վերադաստիարակել կարող է միայն ագիտացիան ու պրոպագանդան, հարկավոր է մասսաներին առաջին հերթին կապել ընդհանուր տնտեսական կյանքի շինարարության հետ» (Երկեր, հ. 31, էջ 467, ընդգծումը իմն է—Զ. Կ.)։ Նա ընդգծում էր, որ քաղաքական լուսավորության գլխավոր չափանիշը տնտեսական գործունեության բարելավումն է, արտադրական խնդիրների հաջող կատարումը, որ «Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա։ Դա մեր ամենագլխավոր խնդիրն է...» (Երկեր, հ. 31, էջ 465)։

Վ. Ի. Լենինի այս ցուցումներն ուղեցույց են մեր պրոպագանդիստական ամբողջ գործունեության համար։

Բոլոր գծերով գաղափարական ու կազմակերպչական աշխատանքի օրգանական միացումը նշանակում է շատ բանով արագացնել այն կոնկրետ խնդիրների լուծումը, որոնք դրված են մեր առջև կյանքի տարբեր բնագավառ-

ներում։ Կոմունիստական հասարակության կառուցման վիթխարի խնդիրների հաջող կատարումը պահանջում է ապահովել սոցիալիստական արտադրության հետագա վերելքը, մոբիլիզացնել բոլոր ռեզերվները, օգտագործել աշխատանքի արտադրողականության բարձրացման բոլոր հնարավորությունները։ Դրա համար էլ մեր կադրերը՝ կոմունիստները և բոլոր աշխատավորները պետք է իմանան արտադրության էկոնոմիկան, նրա զարգացման օրենքները, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և արտադրական հարաբերությունների կատարելագործման ուղիները, ճիշտ որոշեն իրենց տեղը ժողովրդական տնտեսության կոնկրետ խնդիրների լուծման գործում։

Պարտիան առանձնահատուկ ուշադրություն է նվիրում այն բանին, որ մեր մարդիկ խորապես տիրապետեն մարքս-լենինյան ուսմունքը։ Նա վճռականորեն հանդես է գալիս քաղաքական լուսավորության կազմակերպման գործում վարչարարության և ֆորմալիզմի դեմ, պարտիական պրոպագանդայի գործում դեկլարատիվության և տիրացուականության դեմ։

Կոմունիզմ կառուցողի գաղափարական կոփվածության չի կարելի հասնել միայն լուսավորչական աշխատանքով, կոմունիզմի մասին գրքային գիտելիքներ հաղորդելով։ Վ. Ի. Լենինը մի շարք անգամներ ուշադրություն է հրավիրել այն բանի վրա, որ կոմունիզմի միայն գրքային իմացությունը համարյա ոչինչ չարժե։ Գաղափարական դաստիարակությունը պետք է սերտորեն կապվի պրակտիկայի հետ։ Կոմունիզմի «ամբողջ պրոպագանդան պետք է դրված լինի այնպես, որ գործը հանգի պետական շինարարությունը գործնականորեն ղեկավարելուն»,— գրել է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 31, էջ 466)։ Մի ուրիշ առիթով նա ասել է, որ պետք է պրոպագանդել ոչ թե ընդհանուր ճշմարտություններով, այլ աշխատանքով։ «Դա նույնպես քարոզ է, բայց դա քարոզ է գործողությամբ» (Երկեր, հ. 29, էջ 185)։

Գաղափարները համոզմունքի վերածել կարելի է միայն պրակտիկայի հիմքի վրա, կոմունիստական շինարարությանը անմիջականորեն մասնակցելու միջոցով։ Գաղափարական կոփվածության մեջ այժմ գլխավորը աշխատանքային գործունեությունն է։ Աշխատել խղճով՝ դա նշանակում է աշխատել սեփական համոզմունքով, գիտակցված վերաբերմունք ունենալ ընդհանուր գործի նկատմամբ, նշանակում է միշտ հանդես բերել իսկական տնտեսվարական անհանգստություն, հասկանալ իր անձնական պատասխանատվությունը կոմունիզմի մեծ իդեալների իրագործման համար։

Գաղափարական համոզվածության դաստիարակությունն անխզելիորեն կապված է մարդկանց վարքագծի մեջ երկակիության դեմ մղվող պայքարի հետ։ Երբեմն կարելի է տեսնել, որ մարդն արտադրության մեջ իրեն վատ չի դրսևորում, կատարում ու գերակատարում է արտադրական նորման, համարվում է լավ աշխատող։ Բայց ահա դուրս եկավ ձեռնարկության դարբասներից, և նրան չես ճանաչի... խախտում է համակեցության կանոնները, հարբում է, խուլիգանություն անում։ Համոզմունքների և վարքագծի մեջ նման խզվածության, հակասության վերացումը՝ իսկական կոմունիստներ, լիարժեք քաղաքացիներ դաստիարակելը գաղափարական աշխատանքի գլխավոր նպատակն է։

Ուշադիր, հոգատար վերաբերմունքը մարդկանց նկատմամբ, ինդիվիդուալ աշխատանքը նրանց հետ, սրտամոտ զրույցները արդիականության ամենասուր պրոբլեմների շուրջ՝ գաղափարայնության, դաստիարակության ներգոր-



ծուն միջոց են։ Այս բանին շատ տեսակետից խանգարում է ֆորմալիզմը։ Հաճախ ընկնելով քանակական ցուցանիշների հետևից, որոշ պարտիական կազմակերպություններ, գաղափարական ճակատի աշխատողներ անտեսում են գլխավորը՝ բովանդակությունը, աշխատանքը մարդկանց հետ։ Պատահում է նաև, որ այս կամ այն կոլեկտիվում կարդացվում են շատ դասախոսություններ, նորմալ գործում են քաղխմբակները, կայանում են բազմաթիվ ու բազմապիսի ժողովներ, նիստեր, իսկ արդյունքը չի երևում. ամսեամիս արտադրական պլանները թերակատարվում են, ցածր է աշխատանքի արտադրողականությունը, աշխատանքային կարգապահությունը։ Դա տեղի է ունենում առանձնապես այնտեղ, որտեղ գաղափարական աշխատանքի կազմակերպմանը ձևականորեն են վերաբերվում, միայն այն բանի համար, որ հաշվետվություն տան, ասեն, թե գործ են անում։

Կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, կազմակերպական աշխատանքի հետ պրոպագանդայի կապի ուժեղացումը, կոմունիստական դաստիարակության ճիշտ մեթոդների կիրառումը՝ գաղափարական աշխատանքի բարելավման գլխավոր պայմանն է։ Պլենումը պահանջեց քաղաքական լուսավորության ասպարեզում ծանրության կենտրոնը փոխադրել քաղաքական ինքնակրթության վրա, որը մարքսիզմ-լենինիզմի տիրապետման հիմնական, առավել արդյունավետ մեթոդն է։ Միաժամանակ անհրաժեշտ է ավելի կատարելագործել գաղափարական աշխատանքի կազմակերպական ձևերը։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը պարտիական կոմիտեններից և սկզբնական պարտիական կազմակերպություններից պահանջեց «ապահովել ագիտացիոն-մասսայական աշխատանքի անխզելի կապը արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների և հիմնարկների կոլեկտիվների կոնկրետ խնդիրների հետ, դուրս վռնդել ֆորմալիզմը, անհոգի և պաշտոնական վերաբերմունքը, բնակչության տարբեր խավերի շրջանում քաղաքական աշխատանք կատարել դիֆերենցված ձևով, կոլեկտիվի բոլոր անդամներին դաստիարակել աշխատանքի լավագույն օրինակներով, լայնորեն տարածել առաջավոր բանվորների ու կոլտնտեսականների փորձը, զարգացնել մարդկանց ընկերականության և փոխօգնության զգացմունքը»։

Ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրների մասին որոշումով, մեր խնդիրն է՝ արմատապես բարելավել աշխատավորների գաղափարական-քաղաքական դաստիարակության գործը։ Պարտիական կազմակերպություններից պահանջվում է մասսայականացնել պլենումի նյութերը, խոր կերպով ուսումնասիրել այդ փաստաթղթերը, քաղաքական լուսավորության նախորդ ուսումնական տարվա փորձի, դրական կողմերի ու թերությունների խոր վերլուծության հիման վրա ավելի հաջող դիմավորել նոր ուսումնական տարին, ապահովել գաղափարական աշխատանքի ուժեղացումը։ Ամեն մի պրոպագանդիստի, դասախոսի պարտքն է ձգտել այն բանին, որ մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, մեր պարտիայի խոսքը հասնի մարդկանց սրտին ու մտքին, որ քաղաքական ուսուցումը, դասախոսական պրոպագանդան արդյունավետ կերպով ծառայեն աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, կոմունիզմի կառուցման մեծ գործին։



# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՄԵԾ ՈՒԺ Է

Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀԿՊ Ղափանի արդյունաբերական-արտադրական կոմիտեի քարտուղար

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը, որ քննարկեց պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, մեծ ուշադրություն հատկացրեց նաև աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին։ Պլենումը պարտիական կազմակերպություններից պահանջեց գաղափարական ներգործման բոլոր միջոցներով այսուհետև էլ սովետական մարդկանց դաստիարակել պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, ամեն կերպ նպաստել ժողովուրդների լենինյան բարեկամության ու եղբայրության ամրապնդմանը, վճռականորեն հանդես գալով բուրժուական նացիոնալիզմի դրսևորումների դեմ։

Այդ առումով մեծ անելիքներ ունեն Ղափանի արդյունաբերական արտադրական գոտու պարտիական կազմակերպությունները։ Մեր արդյունաբերական, շինարարական և տրանսպորտային 36 ձեռնարկություններում ու կազմակերպություններում հայերի հետ միասին համերաշխ ապրում ու ստեղծագործում են սոցիալիստական 16 ազգերի ներկայացուցիչներ՝ բանվորներ, ինժեներներ ու տեխնիկներ, որոնք միահամուռ կամքով ու նվիրվածությամբ կենսագործում են կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները։

Գանձասարի մետաղահարուստ ելուստներում՝ 2200 մետր բարձրության վրա հանքագործների բազմազգ կոլեկտիվը պայքարում է արդյունահանելու և երկրին ավելի շատ մոլիբդեն ու պղինձ տալու համար։ Որոտանի անդնդախոր կիրճում շինարարական կատարյալ եռուզեռ է. հայն ու ադրբեջանցին, ռուսն ու ուկրաինացին, օսեթինն ու կաբարդինը ուս-ուսի տված փորում են 18 կիլոմետր երկարությամբ թունել, համատեղ կառուցում հսկա հիդրոէլեկտրակայանը։ Նրանք լավ են հասկանում, թե այն ինչպիսի նշանակություն կունենա կոմունիստական հաղթարշավի տեմպերը եղբայրական երկու ռեսպուբլիկաներում՝ Հայաստանում և Ադրբեջանում արագացնելու համար։ Իզուր չէ, որ Որոտանի շինարարներն այդ հսկա հիդրոէլեկտրակայանն անվանում են բարեկամության ջահ։

Երկու ամիս առաջ Մեղրու քարաժերպ կիրճում շահագործման հանձնվեց Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի առաջին հերթը, կոմբինատ, որն իր հզորությամբ խոշորն է Միության համանման ձեռնարկությունների շարքում։ Կոմբինատի կառուցողների կոլեկտիվը մի ինտերնացիոնալ ընտանիք է, ուր կան սովետական 16 ազգությունների մարդիկ։ Ահա Առաքել Դավթյանը և Հուսեին Հուսեինովը, Վենյամին Պավլովը և Իվան Ռոշետիլոն, Վալենտին Կոզիտովը և ուրիշներ, որոնց ստեղծագործ ջանքերով կյանք է առնում ինդուստրիայի այս օջախը։



Արդյունաբերական գոտու ձեռնարկությունների առջև նոր ու կարևոր խնդիրներ են ծառացած։ Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատը, որն արտադրանքի թողարկմամբ գրեթե հասել է յոթնամյակի վերջին տարվա համար նախատեսված մակարդակին, ընթացիկ տարում պետք է լուծի տեխնոլոգիական մի շարք կարևորագույն հարցեր՝ շահագործման պետք է հանձնվեն կոմբինատի լրացուցիչ կարողությունները, կառուցվելու են հարստացուցիչ ֆաբրիկայի առանձին աղացներ, ճոպանուղու երրորդ և չորրորդ գծերը, հանքավայրէջքի կոմպլեքսը, մառուցման բունկերը և այլն։ Մեծ չափով ընդարձակվելու և վերակառուցվելու է Ղափանի պղնձահանքային կոմբինատը։ Այս տարի գոտու միավորման մեջ մտնող շինարարական կազմակերպությունները պետք է կառուցեն 32 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իրացնեն շուրջ 26 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, շահագործման հանձնեն մեծ քանակությամբ արտադրական նոր կարողություններ։ Եվ այս ամենը իրագործվելու են սովետական բոլոր ռեսպուբլիկաների եղբայրական օգնությամբ ու փոխադարձ համագործակցությամբ, մեր մարդկանց ինտերնացիոնալ ջանքերով։

***

Ուրախություն և անսահման բերկրանք ես ապրում, երբ տեսնում ես, թե Զանգեզուրի լեռնաշխարհում մի սիրտ, մի հոգի դառած ինչպես են աշխատում նրանք, թե որքան անքակտ է եղբայրական բարեկամությունը այդ՝ տարբեր ազգությունների պատկանող մարդկանց միջև։ Հայ հանքագործների ու կառուցողների հետ նրանք հավասարաչափ բաժանում են ուրախությունը, ինչպես և դժվարությունը։ Ամեն մի ձեռնարկությունում կամ կառույցում կարելի է ականատես լինել ժողովուրդների մեծ բարեկամության բազմաթիվ հուզիչ օրինակների։

Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի դիզելային ավտոպարկում են աշխատում ավտովարորդներ Մուսա Ալահվերդիևը և Շուրիկ Մարգարյանը։ Նրանք իրար հետ ծանոթացել են Գանձասարում, իսկ այժմ աշխատում են միևնույն ագրեգատի՝ 25 տոննա բեռնատարողության ավտոմեքենայի վրա։ Տարիների համատեղ աշխատանքում նրանց միջև ծնունդ է առել ու զարգանում է մարդկային սերտ բարեկամություն, ավելի ջերմ, քան հարազատ եղբայրների միջև։ Ինչպի՜սի գովեստով են նրանք խոսում մեկը մյուսի մասին, օգնում իրար աշխատանքում, կենցաղում։ Միշտ միասին, միշտ անբաժան։ Աշխատանքում եթե որևէ բան պատահի Մարգարյանի հետ, ապա Ալահվերդիևն ուղեգիրը կվերցնի Մարգարյանի անվամբ և կաշխատի երկրորդ հերթափոխում, առանց մի րոպե անգամ մտքով անցկացնելու, որ ուրիշի համար է աշխատում. այդպես է վարվում նաև Մարգարյանը։ Մտերիմ ընկերուհիներ են դարձել Ալահվերդիևի և Մարգարյանի կանայք, բարեկամությունը խարիսխ է գցել նաև նրանց երեխաների փոքրիկ սրտերում։ Այժմ այդ երկու ընտանիքները գրեթե միասին են ճաշում, հանգստանում, կինո և թատրոն գնում։ Կոմբինատի դիզելային պարկում որպես լավ ընկերներ ու բարեկամներ աչքի են ընկել Ալեքսեյ Ռյաբչենկոն և Սաշա Գևորգյանը, Իվան Կոտովն ու Բաբկեն Համբարձումյանը, Մաջիդ Մամեդովն ու Աշոտ Մինասյանը և շատ ուրիշներ։

Ղափանի պղնձահանքային կոմբինատի Նոր Բարաբաթում հանքում է աշխատում ռուս առաջավոր հորատող Վասիլի Սամոսվատովը։ Վերջերս նրա ղեկավարած բրիգադան, որի կազմում են Ի. Գորբաչովը, Բ. Մամեդովը, Մ. Անտոնյանը, Մ. Հովհաննիսյանը և ուրիշներ, արժանացավ կոմունիստական աշխատանքի կոչման։ Ինտերնացիոնալ այդ բրիգադան տալիս է կոմունիստաբար աշխատելու և ապրելու հիանալի օրինակ։ Բրիգադայի անդամները, որոնք գործում են մեկը բոլորի, բոլորը՝ մեկի համար կոմունիստական սկզբունքով, թե՛ աշխատանքում և թե կենցաղում գործում են համագործակցված, օգնում իրար ուսման մեջ, նոր տեխնիկայի, առաջավոր մեթոդների արմատավորման ասպարեզում։ Կոմունիստական աշխատանքի այդ ինտերնացիոնալ բրիգադան աշխատանքի արտադրողականության բարձրացման, խրուստալնինսկցիների առաջավոր մեթոդի արմատավորման հարցում անգնահատելի գործ է կատարել. բրիգադան այդ մեթոդի արմատավորման նախաձեռնողն է կոմբինատում։

Ամենասերտ եղբայրությունն է կապում Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի հարստացուցիչ ֆաբրիկայի կոմունիստական աշխատանքի այն բրիգադայի անդամներին, որոնց ղեկավարն է Ս. Զեյնալովը։ Բրիգադայի բոլոր անդամները ձեռք են բերել երկու-երեք մասնագիտություն և երրորդ տարին է, ինչ բոլորը կատարում ու գերակատարում են արտադրական առաջադրանքները։ Բրիգադավարն առանց արտադրությունից կտրվելու ավարտել է լեռնամետալուրգիական տեխնիկումը, որից հետո իր հայ, ռուս և ադրբեջանցի ընկերների օգնությամբ ընդունվել Մոսկվայի ռադիոէլեկտրոնիկայի և լեռնային էլեկտրամեխանիկայի ինստիտուտի հեռակա բաժինը։ Վերջերս, երբ գործարկման էր նախապատրաստվում Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, պարտիական կոմիտեն սկսեց կադրեր և, հատկապես ֆլոտացիոն գործի հմուտ մարդիկ հավաքագրել։ Առաջինը Զեյնալովի ինտերնացիոնալ բրիգադան արձագանքեց պարտիական կազմակերպության կոչին և այժմ իր փորձն ու աշխատանքային հմտությունը սիրով հաղորդում է ագարակցիներին, սովորեցնում նրանց ֆլոտացիոն գործի տեխնոլոգիան։

Հաշվի առնելով արդյունաբերական արտադրական գոտու ձեռնարկություններում աշխատողների ինտերնացիոնալ կազմը, պարտիական կոմիտեն և սկզբնական շատ պարտկազմակերպություններ գաղափարական աշխատանքը կազմակերպելիս մեծ ուշադրություն են հատկացնում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը, սովետական ժողովուրդների միջև բարեկամական կապերի ամրապնդմանը։ Այդ նպատակով մենք օգտագործում ենք պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքի բազմապիսի ձևեր ու եղանակներ, ինչպես՝ զեկուցումներ, զրույցներ, թեմատիկ հարց ու պատասխանի երեկոներ, հավաքներ, ցուցադրական ագիտացիա, թերթն ու ռադիոն, սպորտը, նամակագրությունը և այլն։ Այսպես, տարվա սկզբին արդյունաբերության առաջավորների փնջային հավաքում միտք հղացավ՝ սոցիալիստական մրցության հրավիրել եղբայրական Ադրբեջանի Դաշքեսանի արդյունաբերական արտադրական գոտու ձեռնարկությունների կոլեկտիվներին։ Այդ առաջարկն ընդունվեց միահամուռ։ Որոշ ժամանակ անց արտադրության վճռական տեղամասերում աշխատող առաջավորներից կազմված մեր պատվիրակությունը եղավ Դաշքեսանում՝ սոցիալիստական մրցության պայմանագիր կնքելու և մրցակիցների գործունեությանը ծանոթանալու նպատակով։

Հարկ է նշել, որ ադրբեջանցի կոլեգաները մեր մրցահրավերն ընդունեցին



մեծ սիրով։ Պատվիրակությունը Դաշքեսանում ծանոթացավ երկաթի հանքի տեխնոլոգիական մի շարք պրոցեսներին։ Պարզվեց, որ այստեղ հանքաքարի հարստացումը կատարվում է չոր, մագնիսային մեթոդով։ Ղափանցիները խորհուրդ տվին կիրառել իրենց փորձը և անցնել հորատման թաց մեթոդին, որով կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը, կկանխվեն մետաղի կորուստները։ Առաջարկությունն ընդունվեց. նրանք կոնկրետ միջոցառումներ են իրականացնում հորատման այդ առաջավոր մեթոդն իրենց մոտ արմատավորելու ուղղությամբ։ Միաժամանակ Ղափանի լեռնագործներին հիացմունք պատճառեց 8 կմ երկարությամբ ճոպանուղին, որն աշխատում է առանց հենասյուների և ունի բարձր արտադրողականություն։ Այդ մեթոդն, անշուշտ, կկիրառվի Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի ճոպանուղու չորրորդ գիծը կառուցելիս։

Կազմակերպվեց հանդիպման երեկո, ուր իրենց փորձի մասին պատմեցին ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատ, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի խոր փորման հաստոցավար Է. Համբարձումյանը, Ադրբեջանական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ, էքսկավատորավար Հ. Կալինը։ Ադրբեջանի կոմպարտիայի Դաշքեսանի արդյունաբերական արտադրական պարտիական կոմիտեի քարտուղար Հ. Սուլեյմանովն իր ելույթում ասաց.

— Մենք հոգով ու սրտով իրար շատ ենք մոտ։ Ինչ խոսք, որ մեր երկու ժողովուրդների միջև ծնունդ առած մրցությունը կօգնի հաջողությամբ կատարելու արտադրական պլանները, ավելի ամրապնդելու մեր եղբայրությունը։



Վերջերս Ղափանի պղնձահանքային կոմբինատի պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությամբ Լենինի անունը կրող հանքախմբի կուլտուրայի պալատում հրավիրվեց ինտերնացիոնալ երեկո, որին մասնակցեցին մոտ 600 աշխատավորներ։ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը և համագործակցությունը թեմայով զեկուցեց կոմբինատի պարտկոմիտեի քարտուղար Գ. Հովհաննիսյանը։ Զեկուցումից հետո ելույթ ունեցան տարբեր ազգությունների ներկայացուցիչներ, որոնք ջերմորեն էին խոսում մեր ժողովուրդների միջև հաստատված բարեկամության մասին։

— Արդեն տասը տարի է, ինչ ես՝ իմ հայ ու ադրբեջանցի եղբայրների հետ աշխատում եմ նույն հորիզոնականում,— ասաց հորատող Պ. Տիրիֆոնովը,— համատեղ ուժերով կատարում ենք առաջադրանքները։ Հայկական դարավոր հողում ես ինձ զգում եմ ինչպես իմ հարազատ տանը, հայրենի բնօրրանում։

— Ինձ հետ պատահած բոլոր դժվարությունների ու փորձությունների ժամանակ ես միշտ թիկունքիս ունեցել եմ իմ հայ ու ռուս բարեկամներին,— ասաց պայթեցնող Յու. Իսկյանդարովը,— նրանց հետ բաժանել եմ իմ ուրախությունն ու վիշտը։

Երեկոյի գեղարվեստական բաժնում կատարվեցին հայկական, ադրբեջանական և ռուսական երգեր, պարեր։

Ուշագրավ էր Ողջիի կուլտուրայի պալատում կազմակերպված բարեկամության երեկոն, որին մասնակցեցին Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի և «Քաջարանշին» տրեստի 13 ազգությունների՝ թվով 800 ներկայացուցիչներ։ Այստեղ ելույթներ ունեցան չորս լեզուներով, երգեցին ու արտասանեցին 13 լեզուներով։ Եվ բոլորն իրենց լավ էին զգում, բոլորն էլ իրար

լավ հասկանում։ Այդ երեկոն, որ այնքան խնամքով ու մանրակրկիտ նախապատրաստվել էր, մինչև հիմա էլ մի առանձին խանդաղատանքով են հիշում մեր լեռնագործներն ու կառուցողները։

Մենք լուրջ ուշադրություն ենք նվիրում երիտասարդների ու երեխաների շրջանում տարվող աշխատանքին։ Ամեն տարի Հաղթանակի օրը՝ մայիսի 9-ին, Ղափանի գեղատեսիլ Կարմրաքարի կանաչ հրապարակում հանդիպում են Ղափանի, Գորիսի, Սիսիանի և եղբայրական ադրբեջանական ռեսպուբլիկայի Ղուբաթլուի, Զանգելանի շրջանների զինակոչիկները։ Հատկապես հուզիչ էր նրանց հանդիպումն այս տարի։ Երիտասարդները խոսք էին տալիս իրար՝ հավատարմորեն ծառայել հայրենիքին, աչքի լույսի պես պահպանել իրենց ծնողների կռած՝ ժողովուրդների լենինյան բարեկամությունը։ Ամբողջ օրը բնության այդ չքնաղ անկյունում իրենց հանգիստն ու ժամանցն անցկացրին հայ և ադրբեջանցի երիտասարդները։

Եղբայրական սերտ կապերով են կապված մեր դպրոցականները Ադրբեջանի երեխաների հետ։ Օրինակ, Ղափան քաղաքի № 2 և Զանգելանի շրջկենտրոնի միջնակարգ դպրոցների միջև դեռ վաղուց հաստատվել են բարեկամական ջերմ հարաբերություններ։ Դպրոցականները հաճախ այցելում են իրար, փոխադարձաբար օգնում ուսումնական աշխատանքները լավ կազմակերպելու նպատակով։ Վերջերս ղափանցիներին հյուր եկան Զանգելանի մի խումբ աշակերտներ, որոնք եղան իրենց մրցակից դպրոցում. այստեղ կազմակերպվեցին սպորտային զանազան խաղեր, իսկ երեկոյան տեղի ունեցավ հանդիսավոր ժողով, որն անցավ վերացնենք երկտարեցիությունը նշանաբանով։

Աշխատավորների շրջանում մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը և կապերն է՛լ ավելի ամրապնդելու նպատակով գործ պարտիական կոմիտեի աշխատողները, դասախոսական խմբի անդամները պարբերաբար կազմակերպում են հետաքրքրական զրույցներ ու զեկուցումներ։ Ժողովուրդների բարեկամությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի նվաճումն է, Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը ՍՍՌՄ-ում, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը սովետական պետության ուժի և հզորության աղբյուրն է, Միութենական ռեսպուբլիկաների տնտեսական փոխօգնությունը ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման հիմքն է, Սոցիալիստական ազգերի մերձեցումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում և այլ թեմաներով 1963 թ. զեկուցումներ են կարդացվել մեր բոլոր ձեռնարկություններում, կառույցներում, հիմնարկներում ու դպրոցներում։ Բացի այդ, Ղափանի պետական դրամատիկական թատրոնը գաստրոլներով հաճախակի հանդես է գալիս Ղուբաթլուի, Լաչինի, Զանգելանի աշխատավորների առջև։ Փոխադարձաբար մեզ մոտ են գալիս ադրբեջանական երաժշտական խմբերը։

Այն, ինչ կատարված է, չի կարող բավարարել մեր այսօրվա պահանջներին։ Մենք պարտավոր ենք ուժեղացնել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, օրավուր ամրապնդել բարեկամական կապերը սովետական ռեսպուբլիկաների և սոցիալիզմի լագերի երկրների ժողովուրդների միջև։

Բարձր պահած բարեկամության լենինյան դրոշը՝ Զանգեզուրի հանքաշխարհի լեռնագործները, կառուցողները և տրանսպորտայինները հաջողությամբ կկենսագործեն յոթնամյակի հինգերորդ տարվա խնդիրները։



# ՈՐ ՄԵՐ ՄԱՐԴԻԿ ԼԻՆԵՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ, ԳԵՂԵՑԻԿ

Հ. ՈՍԿԱՆՅԱՆ

ՀԿԿ Կիրովականի քաղկոմի քարտուղար

Կիրովական... Դեռ մոտ անցյալում թավ անտառներով, զովաշունչ ձորերով, մանուշակագույն շղարշով պատած մի քաղաք էր այն, ուր գարնանը ծաղկում էին խնձորենիները՝ զարդարելով տների բակերն ու պատշգամբները, իսկ աշնանը ոսկեվորվում բնության պարգևներով։ Դա Կիրովականի եթե ոչ միակ, ապա ամենահիմնական հրապույրն էր, որ մինչև օրս էլ պահպանում է իր թովչանքը։

Սակայն այժմ այցելուին գրավում են ո՛չ միայն բնության շռայլ պարգևները, այլև անտառափեշին փռված վարդագույն նոր քաղաքը՝ իր ճարտարապետական հրաշալի կոթողներով, գեղեցկատես թաղամասերով ու բարեկարգ մայրուղիներով, գիտության ու տեխնիկայի վերջին խոսքով կառուցված բազմաթիվ գործարաններով, ֆաբրիկաներով, որոնք ծնունդ են առել մարդկանց ստեղծագործ մտքի ու ախրագործ բազկի ուժով։ Ստեղծվել են կուլտուրայի տասնյակ օջախներ, գիտահետազոտական հիմնարկներ։ Տնտեսական ու հոգևոր կյանքի չտեսնված զարգացումն ու թափը փոխել են նաև այս ամենին կյանք պարգևող մարդու հոգեկան կերտվածքը, նրա հայացքը, տեսադաշտը, երևույթները գնահատելու չափանիշը, նրա առօրյան ու աշխատանքային հետաքրքրությունները, կյանքն ու կենցաղը։

Շատ էլ վաղուց չէ, ինչ կիրովականցին բավարարվում էր արևելյան գործիքների հաղվադեպ համերգներով, իսկ սիմֆոնիկ համերգները, գիտա-տեխնիկական սովորական միջոցառումը հանդիսավոր երևույթ էին։ Այսօր այդ բոլորը դարձել են առօրյական, սովորական։ Այժմ նրան չի կարելի զարմացնել ոչ գիտական սեսիաներով, ոչ էլ համերգներով ու ակադեմիական ներկայացումներով։

Ամեն օր զարգացող մեր քաղաքի փողոցների ցուցատախտակներից մեզ են նայում նրա հոգևոր կյանքն արտացոլող հայտարարությունները։ Մի տեղ գիտական կոնֆերանս է, մի այլ տեղ՝ միութենական առաջնակարգ գեղարվեստական խմբի ելույթ, մի տեղ ճանաչված գրողի նոր լույս տեսած գիրքն են քննարկում, մի այլ տեղ երիտասարդ, սկսնակ բանվորն իր գրչի առաջին թոթովանքն է կարդում կամ մասնագետների առջև համոզիչ գործիմացությամբ բացատրում ռացիոնալիզատորական իր նոր առաջարկության կարևորությունը։ Սովորական մի օր է դա, որին հետևում են նորերը՝ ավելի բովանդակալից, ավելի հարուստ։

Մեր մարդիկ այսօր ո՛չ միայն ավելի գիտակից են, կյանքի երևույթներն

*ավելի լավ ըմբռնող, ո՛չ միայն ցանկանում են խորանալ ամեն ինչում, հասկանալ ու յուրացնել գիտության, տեխնիկայի, կուլտուրայի հարցերը, այլև անձամբ մասնակցում են բոլոր գործերին։ Այլևս նրանց չեն կարող բավարարել միայն գիտության, տեխնիկայի, կուլտուրայի ակադեմիական հիմնարկներն ու հաստատությունները։ Եվ ներքին մղումով ու անհրաժեշտությամբ, սեփական նախաձեռնությամբ նրանք ստեղծում են նաև իրենցը, ժողովրդականը՝ ավելի մասսայական ու մատչելի։ Ժողովրդական համալսարանը, ֆիլհարմոնիան, գիտական, տեխնիկական, իրավաբանական և այլ ժողովրդական դըպրոցներն ու ինստիտուտները ժողովրդի ինքնագործունեության ու աննախադեպ ակտիվության ծնունդ են, գիտության, տեխնիկայի, արվեստի և գրականության հանդեպ աշխատավոր մասսաների գնալով աճող հետաքրքրության արդյունք. այդ ամենին հիմնականում նպաստում են աշխատանքային օրվա կրճատումը և մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացումը։ Մարդն իր ազատ ժամանակը նվիրում է հոգևոր վայելքներին՝ զբաղվում գիտությամբ, գյուտարարությամբ, գրականությամբ, արվեստով. այդ ժամանակը մարդուն մղում է դեպի նախասիրած մասնագիտությունը, դեպի արտադրության կատարելագործում և նորարարություն։ Իսկ այդ նշանակում է ժողովրդի բազմակողմանի, ներդաշնակ զարգացում, որն ինչպես արտադրողական ուժերի վերելքի, այնպես էլ աշխատավորների հասարակական ակտիվության բարձրացման, ինքնավարության դեմոկրատական հիմունքների զարգացման, կոմունիստական կենցաղավարության արմատավորման կարևոր պայմաններից է։*

*Վաղվա օրվա մասին մտածելիս, պարտիան առաջին հերթին հենվում է այդ հզոր ուժի՝ ժողովրդի վրա, ընթացք և ուղղություն տալիս նրա ստեղծագործական նախաձեռնությանը, ինքնագործունեության ձևերին, որոնք օգնում են ձևավորելու մարդկանց միջև նոր հարաբերություններ և հասարակության բոլոր անդամներին համակելու աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքով։*

●

*Ժողովրդական ինքնագործունեության զարգացման ուղղությամբ որոշակի փորձ են կուտակել Կիրովականի պարտիական կազմակերպությունները։ Չորրորդ տարին է, որ քաղաքում հասարակական հիմունքներով գործում է երիտասարդ ռացիոնալիզատորների և նորարարների ինստիտուտը։ Մեր երիտասարդության, աշխատավորների հայրենասիրական վսեմ զգացմունքների, նրանց ստեղծագործական մտքի արդյունք է այն, ժողովրդական ինքնագործունեության նոր ձև։*

*Ինստիտուտի հիմնադրման առաջին օրերն էին. երկու հարյուր մարդ, հիմնականում երիտասարդները, ցանկություն հայտնեցին սովորելու. կազմակերպվեց երեք ֆակուլտետ՝ մեխանիկական, շինարարական ու թեթև արդյունաբերության, իսկ 1960 թվականից բացվեց նաև առևտրի ֆակուլտետ։ Առաջին օրերին գտնվեցին թերահավատներ, որոնք ասում էին, որ ոչ ոք չի ցանկանա անվճար դասախոսել։ Սակայն ցանկացողներն այնքան շատ էին, որ հարկ եղավ ընտրություն կատարել, դասախոսներ առաջադրել կարող, տեսական և գործնական առավել բարձր պատրաստականություն ունեցող ընկերների։ Դասախոսել էին ցանկանում «Ավտոմատիկա» ինքնուրույն կոնստրուկտորական*



*բյուրոյի գլխավոր կոնստրուկտորի տեղակալ Մարատ Շահբազյանը, ավագ ինժեներ Մարտին Գրիգորյանը, «Ավտոնոմիկա» գիտահետազոտական ինստիտուտի փորձնական արտադրության պետ Լյովա Խաչատրյանը, ավագ ինժեներ Յուրի Մելիքսեթյանը, սարքաշինական տեխնիկումի դիրեկտոր Վոլոդյա Օրդյանը, «Ավտոնոմիկա» գործարանի գլխավոր մեխանիկ Վիլեն Մելիքսեթյանը, մսի կոմբինատի դիրեկտոր Կարլեն Մամյանը, երկաթբետոնե կոնստրուկցիաների հրապարակի պետ Էդուարդ Ասրիևը և արտադրության երիտասարդ շատ հրամանատարներ։ Իսկ երբ շինարարական ֆակուլտետում դասաբաշխում էր կատարվում, ինժեներներ Ս. Շաբոյանի, Է. Ասրիևի և շատ ուրիշների միջև սուր վեճ առաջացավ, նրանցից ամեն մեկն իր դասավանդած առարկայի համար ավելի շատ ժամեր էր պահանջում։*

*Հասարակական հիմունքներով, սեփական ուժերով հիմնել ուսումնական հաստատություն, ուղղություն տալ երիտասարդ, անփորձ բանվորների ձգտումներին, իրենց հարուստ գիտելիքներն ու աշխատանքի փորձը հաղորդել նրանց ու օգնել՝ տիրապետելու գիտությունների հիմունքներին. ահա այս վեհ նպատակն են հետապնդում ինստիտուտի երիտասարդ դասախոսներն ու մյուս աշխատողները։ Եվ այսպես՝ ինստիտուտն ստեղծվեց, հաստատվեցին դասավանդվող առարկաների ծրագրերը՝ ըստ ֆակուլտետների, պարապմունքների տեղերն ընտրվեցին այնպես, որ դրանք (ըստ ֆակուլտետի բնույթի) անցկացվեն համապատասխան բազաներում։ Մեխանիկական ֆակուլտետը տեղավորվեց սարքաշինական տեխնիկումում, շինարարականը՝ «Կիրշին» տրեստում, իսկ թեթև արդյունաբերությանը՝ տրիկոտաժի ֆաբրիկայում։ Առաջին 5—6 ամսվա ընթացքում պարապմունքներն անց էին կացվում ամիսը երկու անգամ, երկուական ժամով։ Հետագայում, ուսանողների պահանջով, վերանայվեց և փոխվեց դասացուցակը։ Այժմ պարապմունքները տեղի են ունենում յուրաքանչյուր շաբաթ՝ չորսական ժամով։*

*Եվ ահա հարյուրավոր մարդիկ ազատ ժամանակ կարողանում են դրսևորել իրենց նորարարական, գյուտարարական ունակությունները, մասնակցել տեխնիկայի, արտադրության կատարելագործմանը։ Այդ ոչ թե սոսկ սովորելու, ինչ-որ բան իմանալու ձգտում է, այլև կյանքի կոմունիստական վերակառուցմանը ակտիվ մասնակցելու արտասովոր մի մղում, որի համար անհրաժեշտ են նաև պրոֆեսիոնալ գյուտարարի ու գիտնականի հատկանիշներ։*

*Հիրավի, այդ հատկանիշներն այժմ անհրաժեշտ են ո՛չ միայն գիտության ու տեխնիկայի բնագավառի, այլև կոմունիզմ կառուցող բոլոր մարդկանց համար։ Այս իսկ առումով ինստիտուտը, ինչպես և ժողովրդական ինքնագործունեության բազմաթիվ այլ ձևեր, միաժամանակ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի և մարդկանց միջև կոմունիստական փոխհարաբերությունների զարգացման լավագույն միջոց են։ Այդ է ապացուցում ինստիտուտի չորսամյա աշխատանքի փորձը։ Ուսանողներն այստեղ ո՛չ միայն ձեռք են բերում տեսական գիտելիքներ, այլև լինում են շինարարական հրապարակներում, արդյունաբերական ձեռնարկություններում, ծանոթանում աշխատանքի առաջավոր ձևերին ու մեթոդներին։*

*Ուսանելիս նրանք սովորում են տեխնիկապես հիմնավորել իրենց ռացիոնալիզատորական առաջարկությունները, ուսումնասիրում են տեխնիկայի և գիտության նորությունները։ Տեսական պատրաստականության բարձրացումը մեծ չափով օգնում է նրանց՝ աշխատանքում զարգացնելու իրենց*

ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը։ Սովորելու ընթացքում ուսանողների 60 տոկոսը դարձել են անվանի ռացիոնալիզատորներ. արտադրության մեջ ներդրված նրանց առաջարկությունների թիվը հասնում է 200-ի։ Քիմկոմբինատի խառատ Սուրեն Թամրազյանը սովորելու ընթացքում արեց ինը, իսկ հետագայում՝ 18 ռացիոնալիզատորական առաջարկություն։ Դասընթացներն ավարտելուց հետո նա արժանացավ ռեսպուբլիկայի վաստակավոր ռացիոնալիզատորի պատվավոր կոչման։ Նրանից ետ չեն մնում քիմկոմբինատի փականագործ Սուլեյման Քյազիմովը, մեքենաշինական գործարանի փականագործներ Պարգև Դարբինյանը, Սերգեյ Բասենցյանը և շատ ուրիշներ, որոնք գերազանց պաշտպանեցին դիպլոմային աշխատանքը։

Ինստիտուտի կանոնադրությամբ ուսանողները որպես դիպլոմային աշխատանք ներկայացնում են ռացիոնալիզատորական առաջարկություններ, որոնք ընդունվում և գնահատվում են հատուկ հանձնաժողովների կողմից։ Որպես կանոն մեկ աստիճանով բարձրանում է ռացիոնալիզատորների ինստիտուտն ավարտողների բանվորական կարգը։

Արդյունավետ են գործում նաև հասարակական հիմունքներով ստեղծված մյուս օջախները։

Ճշգրիտ հաստոցաշինական գործարանում անցյալ տարի ստեղծվեց ինքնագործ կոնստրուկտորական բյուրո։ Այն ղեկավարում է ինժեներ կոնստրուկտոր Հովհաննես Պողոսյանը։ Բյուրոն զգալի աշխատանք է կատարել գործարանի ռացիոնալիզատորների շարքերն ստվարացնելու, բանվոր երիտասարդության գիտելիքները հարստացնելու ուղղությամբ։ Բյուրոյի անդամ ինժեներ-տեխնիկների օգնությամբ միայն այս տարվա անցած ամիսներին շարքային աշխատողներն արել են ռացիոնալիզատորական 14 առաջարկություն՝ 2559 ռուբլու տնտեսական օգուտով. դրանք բոլորն էլ ներդրվել են արտադրության մեջ։ Բյուրոն առանձին ցեխերում ունի իր խմբերը, որոնք առաջարկությունների տեխնիկական ձևակերպման և գծագրությունների կազմման ժամանակ, բանվորներին օգնելուց բացի, նրանց համար կազմակերպում են նաև տեսական պարապմունքներ, սեմինարներ։

«Հայքիմգիտնախագիծ» ինստիտուտում ևս ծնվել է գիտա-տեխնիկական ինքնագործունեության մի նոր ձև՝ նախագծողների ինստիտուտը։ Մեկ տարում ինստիտուտի ինժեներները քաղաքի տարբեր ձեռնարկությունների ու հիմնարկների համար հասարակական կարգով (անվճար) կատարել են 25 նախագծային աշխատանք։ Հասարակական հիմունքներով են կատարվել հացի գործարանի հիմնական ցեխերի ավտոմատացման, քաղաքային այգու, երաժշտական դպրոցի էլեկտրիֆիկացման, յոթ բնակելի շենքերի գազիֆիկացման, № 5 դպրոցի շենքի վերակառուցման, իրենց ինստիտուտի մամլման, սառեցման բաժինների կառուցման և մոնտաժային նախագծերը։ Այդ աշխատանքներին սիրով են մասնակցում ինժեներներ Հրաչիկ Հարությունյանը, Աիդա Միրզոյանը, Ռազմիկ Առաքելյանը, Ռաֆիկ Դիշունցը, Նիկոլայ Պոլովինկինը և շատ ուրիշներ։

Քաղաքի մի շարք ձեռնարկություններում՝ «Ավտոնոմիկա», մեքենաշինական և այլ գործարաններում աշխատավորների նախաձեռնությամբ տեխնիկական ուսուցման դասընթացները դարձել են անվճար։



Այս և վերը նշված աշխատանքները ոչ միայն տնտեսական, այլև գաղափարական-դաստիարակչական մեծ նշանակություն ունեն մարդկանց կոմունիստական բարոյականության սկզբունքների ձևավորման տեսակետից։

Կիրովականում ժողովրդական ինքնագործունեության նոր ձևերը լայն արմատներ են գցում նաև կուլտուրայի և մյուս բնագավառներում։

Արդեն այժմ մենք ականատես ենք լինում մեր կյանքում տեղի ունեցող հետաքրքրական այնպիսի երևույթների, որոնք վկայում են կուլտուրայի, արվեստի, գրականության և ժողովրդի մերձեցման պրոցեսի խորացումը։ Երիտասարդ ռացիոնալիզատորների ինստիտուտի հետ գրեթե ծնվեց կուլտուրայի ժողովրդական համալսարանը՝ կարծես ապացուցելու մեր մարդկանց ներդաշնակ զարգացման օրինաչափությունը. նորարարը ցանկանում է նաև հաղորդակից լինել արվեստի հրաշալիքներին։ Համալսարանի գրականության, թատրոնի, կերպարվեստի, ճարտարապետության և կինոարվեստի բաժիններում ընդգրկված ունկնդիրները (թվով 200 հոգի) տարբեր զբաղմունքի տեր մարդիկ են՝ ինժեներներ, բանվորներ, տնային տնտեսուհիներ։

Սկզբում փորձի բացակայության, որոշ ընկերների կողմից կարևոր գործը թերագնահատելու պատճառով հաճախ ընդհատվում էին համալսարանի պարապմունքները։ ՀԿՊ քաղաքային կոմիտեն ժամանակին քննության առավ ժողովրդական ինքնագործունեության այս նոր ձևում տեղ գտած թերությունները և մշակեց միջոցառումներ դրանք վերացնելու համար։ Քաղաքային կոմիտեին կից ստեղծվեց ժողովրդական համալսարանի և ինստիտուտների աշխատանքը ղեկավարող հանձնաժողով։ Համալսարանի ունկնդիրներն այժմ ծանոթանում են համաշխարհային արվեստին ու գրականությանը, իհարկե, հանգամանորեն անդրադառնալով հայկական մշակույթին և, հատկապես՝ սովետահայ թատրոնի, կերպարվեստի, գրականության, ճարտարապետության հարցերին։ Համալսարանում կազմակերպվում են ուսումնական էքսկուրսիաներ՝ դեպի ռեսպուբլիկայի տեսարժան վայրերը, այցելություններ ցուցահանդեսները, ներկայացումների, կինոնկարների կոլեկտիվ դիտումներ և այլն։

Քաղաքում հասարակական հիմունքներով գործող մեկ այլ հաստատությունում՝ երաժշտական դպրոցում, ընդգրկված են տարբեր մասնագիտությամբ 140 երիտասարդներ։ Դպրոցի աշխատանքները ղեկավարում են երաժշտական ուսումնարանի դասատուները՝ կոմպոզիտոր Էդուարդ Կզարթմյանի գլխավորությամբ։ Ուսանողները սովորում են նոտաներ կարդալ և նվագել նախասիրած գործիքի վրա, խորանում են երաժշտության տեսական հարցերում։ Շնորհալի փորձ են կուտակել նաև քիմկոմբինատի կուլտուրայի պալատի արվեստասերների ակումբը և քաղաքային կուլտուրայի տան ժողովրդական ֆիլհարմոնիան։ Արվեստասերների ակումբում, որտեղ սովորում են 300 մարդ, կազմակերպվում են ո՛չ միայն ներկայացումների ու կինոֆիլմերի քննարկումներ, կտավների ու քանդակների կոլեկտիվ դիտումներ, այլև թեմատիկ զեկուցումներ, դասախոսություններ, որոնց ժամանակ ունկնդիրները վերահասու են լինում արվեստի գործերի ստեղծման «գաղտնիքներին», իմանում են, թե ինչպես են ծնվում ֆիլմերը, ներկայացումները։ Քաղաքում լայնորեն տարածվել են նաև ժողովրդական ինքնագործունեության այնպիսի մասսայական ձևեր, ինչպիսիք են՝ երգի, ծաղկի տոները և այլն։

Ժողովրդական ինքնագործունեության նոր ձևերը մուտք են գործել նաև մարդկանց առօրյա կյանքի, կենցաղի մեջ։ Այժմ Կիրովական քաղաքի 35 կոմունալ բնակելի շենքերում գործում են կոմունիստական կենցաղի խորհուրդներ, որոնք սիստեմատիկաբար օգնում են բնակչության շրջանում կոմունիստական հարաբերությունների արմատավորմանը, կենցաղի կոմունիստական վերակառուցմանը։

Վերը նշված ժողովրդական ինքնագործունեության մյուս ձևերը հանդիսանում են բնակչության կուլտուրական աճման, նրանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորման հզոր միջոցներ։ Բնության մեջ և կյանքում գեղեցիկը ճիշտ հասկանալու ունակության դաստիարակումը, էսթետիկական ըմբռնումների, պատկերացումների, զգացումների, հայացքների և համոզմունքների սիստեմի մշակումը առաջ են բերում գեղեցիկ տարրերը անհատական ու կոլեկտիվ վարք ու բարքում ներդնելու ձգտում։ Եվ հավատում ես, որ իրոք ապագա կոմունիստական հասարակարգը արվեստի աստիճանի կբարձրացնի մարդկանց կենցաղը։ Հասարակական հիմունքներով ծավալված այս ամբողջ գործունեությունը օրեցօր մարդկանց գիտակցության մեջ ավելի ու ավելի է մարմնավորում կոմունիստական նորմերը։ Ինչպես կուլտուրայի, այնպես էլ գիտության, տեխնիկայի և կյանքի այլ բնագավառներում ծնունդ առած այս նոր օջախները ոչ այլ ինչ են, եթե ոչ ժողովրդական ինքնագործունեության, մեր մարդկանց ստեղծագործական մտահղացումների խորացում։

Մարդկանց տեխնիկական, գեղագիտական հետաքրքրությունների, գիտելիքների ու փորձի զարգացումը, որն արտացոլվում է ժողովրդական ինքնագործունեության այս նոր ձևերում, ցույց է տալիս, որ առաջիկայում մեր մարդիկ ավելի են մերձենալու գիտությանն ու արվեստին։ Աշխատանքային օրվա աստիճանական կրճատումը և աշխատավորների ազատ ժամանակի ավելացումը, նյութական բարեկեցության անշեղ վերելքը նրանց հնարավորություն կտան ինքնագործունեության նորանոր ձևեր կիրառելու։ Դեռ քանի՜, քանիսի միտքը կծնի նոր ու բարդ սարքեր, քանի՜, քանի անվարժ մատներ կհպվեն դաշնամուրի ստեղներին կամ առաջին անգամ գունավոր մատիտով կնկարեն ծփացող Սևանն ու նրա լուսաթրթիռ կոհակները։

Մեր պարտիայի Կենտկոմի վերջերս ավարտած պլենումը, որը քննարկեց կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում գաղափարական աշխատանքի կարևորագույն հարցերը, անկասկած, կնպաստի զարգացնելու ժողովրդական ստեղծագործական ինքնագործունեությունն ու նախաձեռնությունը, կօգնի, որ մեր մարդիկ լինեն գաղափարական, գեղեցիկ։



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՅԱՆՔԻ ԿՈ̈ՉԵԼ ԲՈԼՈՐ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

Աշտարակի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության տնտեսություններում դեռևս շատ ցածր է գյուղատնտեսական մթերքների արտադրության մակարդակը։ Վերջին տարիներին հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի միջին բերքատվությունը չի անցել 6—7 ցենտներից. յուրաքանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է միս՝ 28, կաթ՝ 138 և բուրդ՝ 1,3 ցենտներ և 5770 հատ ձու։

Ո՞րն է դրա պատճառը, ի՞նչ կարելի է անել ստեղծված վիճակը շտկելու և հենց ընթացիկ տարում բարձր արդյունքների հասնելու համար։

Անցյալ տարվա արդյունքների ուսումնասիրությունից պարզվեց, որ արտադրական վարչության տնտեսություններում լավ չեն օգտագործվում ներքին ռեզերվներն ու հնարավորությունները։ Կյանքի կոչել այդ ռեզերվները, այնպես կազմակերպել գյուղատնտեսական արտադրությունը, որ կլիմայական բոլոր պայմաններում ստացվեն բարձր բերք և անասնաբուծական շատ մթերքներ։ Հենց այդ էլ դարձավ մեր գյուղական արտադրական պարտիական կոմիտեի գործունեության գլխավոր նպատակը։

Մեզ զբաղեցրեց ջրատնտեսական շինարարության հարցը։ Հրազդանի, Զառի, Գյամրեզի, Ջրաբերի կոլտնտեսությունները և Քյուլլուջայի կաթնաանասնապահական սովխոզն ունեն բերքատու հողեր, որոնցից բարենպաստ կլիմայական պայմաններում ստացվում է հացահատիկային կուլտուրաների բարձր բերք, իսկ անբարենպաստ եղանակներին գրեթե ոչինչ չի ստացվում։ Թեպետ նշված տնտեսություններում մեծ հնարավորություններ կան այգեգործության զարգացման համար, սակայն ոռոգման բացակայության պատճառով դրանք չեն օգտագործվում։ Ուսումնասիրելով ջրատնտեսական շինարարության հնարավորությունները՝ մեր առաջարկությունը ներկայացրինք կառավարությանը։ Որոշվեց այդ տնտեսություններում կառուցել ջրհան կայաններ, որոնց միջոցով ոռոգելի կդառնա շուրջ 1100 հեկտար տարածություն։ Այդ միջոցառման իրականացմամբ 600—700 հեկտար հողատարածության վրա կհիմնվեն պտղատու այգիներ, մոտ 200 հեկտարով կավելանա ծխախոտի ցանքատարածությունը. մնացած հողատարածությունը կզբաղեցվի եգիպտացորենով։

Զառի կոլտնտեսությունը վարչության խոշորագույն տնտեսություններից է, ունի հիանալի հողատարածություններ, լավ ապրանքային ֆերմաներ։ Սակայն նրա ֆինանսական-տնտեսական վիճակն ամուր չէ։ Կոլտնտեսությունը ոչ մի հեկտար ոռոգելի տարածություն չունի։ Եթե 1964 թվականին շահագործման հանձնվի ջրհան կայանը, ապա ոռոգելի կդառնա 150 հեկտար հողատարածություն. այդ հնարավորություն կտա կոլտնտեսությունում մշակելու 50 հեկտար ծխախոտ, որից ստացվելիք եկամուտը

(ամենահամեստ հաշիվներով) կգերազանցի տնտեսության ներկա բոլոր եկամուտները. 50 հեկտար կտրամադրվի այգեգործությանը, 50 հեկտարի վրա էլ կմշակվի եգիպտացորեն, որից կստացվի 1500 տոննա հյութալի կեր, կամ յուրաքանչյուր կովի համար կպատրաստվի 6—7 տոննա սիլոս:

Վերջերս լուծվեց նաև Գառնիի և Թղիթի կոլտնտեսությունների ջրհան կայանների կառուցման հարցը: Հատուկ ուշադրություն ենք նվիրում Արզնի-Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի շինարարության արագացմանը: Այդ հերթի շինարարությունն ավարտելուց հետո հնարավոր կլինի ոռոգել ավելի քան 14 հազար հեկտար տարածություն: Այդ տարածությունների մեծ մասը կզբաղեցնեն այգիներն ու տեխնիկական կուլտուրաները: Արդեն 1965 թվականին վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում կմշակվեն մոտ 6500 հեկտար խաղողի և 3000 հեկտար պտղատու այգիներ: Աշտարակը առաջիկա երկու-երեք տարում կդառնա ռեսպուբլիկայի ամենախոշոր այգեգործական շրջանը:

Ջրատնտեսական շինարարությունը, որը, լայն թափով կծավալվի 1964—1965 թվականներին, գյուղատնտեսական արտադրության զարգացման խոշոր ռեզերվ է: Այն կնպաստի կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես ամրապնդելուն, երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալուն:

Անասնաբուծության զարգացման կարևոր ռեզերվ է ամառային արոտների ճիշտ օգտագործումը: Առանձին տնտեսություններ զուրկ են արոտներից, իսկ մյուսներն իրենց ունեցածը չեն օգտագործում: Աշտարակի և Աբովյանի շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների միավորումը մեկ արտադրական վարչությունում, պայմաններ ստեղծեց ամառային արոտներն արդյունավետ օգտագործելու համար:

Պարտիական կոմիտեի առանձնացրած հանձնաժողովը բազմակողմանի ուսումնասիրեց եղած արոտների ինտենսիվ օգտագործման հարցը: Բացահայտվեցին խոշոր հնարավորություններ: Այսպես. Քանաքեռի այգեգործական սովխոզում լիկվիդացվել է ոչխարաբուծությունը, սակայն նրա 470 հեկտար ամառային արոտները չեն օգտագործվում, մինչդեռ Եղվարդի կոլտնտեսությունը, որի հոտում կա 400 գլուխ խոշոր և 1500 գլուխ մանր եղջերավոր անասուն, ունի ընդամենը 100 հեկտար արոտ, որի հետևանքով էլ նրա համար ստեղծվել է ծանր վիճակ:

Արտադրական վարչության հետ կատարած համատեղ ուսումնասիրության հիման վրա մենք առաջ քաշեցինք արոտների վերաբաշխման հարցը և այդ առթիվ մեր նկատառումները ներկայացրինք ռեսպուբլիկայի կառավարությանը: Ամառային արոտավայրերի վերաբաշխման հարցի լուծումը, ինչ խոսք, բարենպաստ պայմաններ կստեղծի անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար:

Հացահատիկային տնտեսության զարգացման համար խոշոր ռեզերվ է երկրագործության աշխատատար պրոցեսների մեքենայացումը: Վարչության տնտեսություններում հացահատիկային կուլտուրաներից ցածր բերք ստանալու հիմնական պատճառներից մեկն այն է, որ վարի, ցանքի ու բերքահավաքի աշխատանքներն առանձին կոլտնտեսություններում հիմնականում կատարվում են ձեռքով: Դրա հետևանքով ձգձգվում են վարն ու ցանքը, խախտվում դրանց կատարման ագրոտեխնիկական ժամկետները: Այդպես է վիճակը Լեռնարոտի, Ավանի, Օրգովի, Սևաբերդի և այլ կոլտնտեսություններում, որոնք մեկ հեկտարից ստանում են ընդամենը 5—6 ցենտներ բերք: Պարզ է, որ նման ցածր բերքի պայ-



մաններում բարձր կլինի հացահատիկի ինքնարժեքը: Այդ կարող ենք ցույց տալ Ավանի կոլտնտեսության օրինակով, ուր մեկ ցենտներ հացահատիկի ինքնարժեքը 1962 թվականին կազմել է 11 ռուբլի: Ահա թե ինչու դաշտավարությունն այդպիսի տնտեսություններում դեռևս շահավետ չի դարձել:

Մեր կոլտնտեսականներին մտահոգում է այն հարցը, թե մինչև ե՞րբ պետք է շարունակվի ձեռքի աշխատանքը: Նրանք պահանջում էին երկրագործության մեջ լայնորեն կիրառել մեքենաները: Սակայն տնտեսությունների հողատարածությունների այժմյան վիճակը թույլ չի տալիս անցնելու մեքենայական աշխատանքին: Հողերը կտրտված են միջնակներով և ծածկված քարակույտերով. այստեղից էլ բխում է մեքենահարմար հողային մասսիվների ստեղծման անհրաժեշտությունը:

Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ, օրինակ, Կոշի, Ձորափի, Թալիշի, Ագարակի, Փարպիի, Գեղարդի, Գողթի և այլ կոլտնտեսություններում առանձին հողակտորների վրա եղած փոքրիկ քարակույտերը, աննշան միջնակները կարելի է լիկվիդացնել շատ հեշտ՝ առանց լուրջ ներդրումների ու մեծ ջանքերի: Ահա թե ինչու պարտիական կոմիտեն, որպես տնտեսական խիստ կարևոր նշանակություն ունեցող հարց, պարտկազմակերպությունների և տնտեսությունների ղեկավարների ուշադրությունը, հասարակական կարծիքն ուղղեց մեքենահարմար հողատարածությունների ստեղծման և ընդարձակման, երկրագործության մեջ մեքենայական աշխատանքն արմատավորելու վրա:

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը գյուղատնտեսության զարգացման կարևոր ռեզերվ համարեց հողի գիտական և ինտենսիվ օգտագործումը:

Կյանքը ցույց տվեց, որ խոտադաշտային ցանքաշրջանառության կիրառումը լուրջ վնաս է պատճառել գյուղատնտեսության զարգացմանը, առանձնապես հացահատիկային տնտեսությանը: Խոտադաշտային ցանքաշրջանառության վնասակար հետևանքների հաղթահարման ուղղությամբ առաջիկայում ևս պետք է ծավալել լուրջ, հետևողական պայքար: Մեր պայմաններում հողի ինտենսիվ օգտագործման ուղղությամբ լուրջ թերություններ, չլուծված շատ խնդիրներ կան: Մի՞թե նորմալ է, երբ Շամիրամի կոլտնտեսության 740 հեկտար վարելահողից հացահատիկային կուլտուրաները զբաղեցնում են 300, խոտերը և այլ կուլտուրաներ՝ 100 հեկտար, մաքուր ցելի տակ մնում է մոտ 340 հեկտար հող: Կոլտնտեսությունում լայնորեն տարածված է հողը հարոսի թողնելու պրակտիկան, մինչդեռ այնպիսի արժեքավոր կուլտուրա, ինչպիսին եգիպտացորենն է, զբաղեցնում է ընդամենը 10 հեկտար տարածություն: Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը կոնկրետ հետևություն չի արել պարտիայի պահանջներից, ինչպես հարկն է չի զբաղվել հացահատիկային տնտեսության զարգացմամբ, գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների կառուցվածքի բարելավմամբ:

Կոտայքի ջրանցքը շահագործման հանձնելուց հետո Եղվարդի, Նոր Գյուղի, Արամուսի, Մայակովսկու և Ակունքի կոլտնտեսությունների հողատարածությունների մեծ մասը դարձավ ոռոգելի և դրանով իսկ լայն հեռանկար բացվեց այգեգործության զարգացման համար: Բայց, չնայած դրան, այդ կոլտնտեսություններում ոռոգելի հողատարածություններն առաջվա նման զբաղեցնում են հացահատիկային կուլտուրաներն ու բազմամյա խոտաբույսերը, մի բան, որ չէր կարող իր վրա չհրավիրել պարտիական կոմիտեի և

արտադրական վարչության ուշադրությունը։

Հանգամանորեն ուսումնասիրելով ոռոգելի հողատարածությունների իրացման վիճակը, պարզվեց, որ զգալի տարածություններ, չնայած չորս-հինգ տարի է, ինչ ապահովված են ջրով, սակայն կոլտնտեսությունների կողմից ինչպես հարկն է չեն իրացվել և նոր այգիներ չեն տնկվել։ Փաստորեն տնտեսությունների ղեկավարների կողմից թերահավատ վերաբերմունք կա այգեգործության շահավետության նկատմամբ։ Այդպիսի վերաբերմունքի հետևանքով վերջին երկու տարում ձախողվել է այգետնկման պլանը, եղած այգիների մի մասը չմշակելու ու չպաշտպանելու հետևանքով շարքից դուրս է եկել։

Այդպիսի վիճակը հանդուրժելի չէր։ Դրա համար էլ հողերի ինտենսիվ օգտագործման հարցը քննության առնվեց կոմիտեի բյուրոյում և գործնական միջոցառումներ մշակվեցին՝ ստեղծված վիճակից դուրս գալու։ Դրան հաջորդեց կազմակերպական ծավալուն աշխատանքը, որի շնորհիվ հաջողությամբ առաջ գնաց այգետունկը և ժամանակին կատարվեց գարնանային տունկի պլանը։ Միայն Նոր Գյուղի կոլտնտեսությունը գարնանը 30 հեկտար տարածության վրա ստեղծեց խնձորի այգի։

Հողը արդյունավետ օգտագործելու համար կարևոր նշանակություն ունի խոզանի վրա եգիպտացորենի մշակության կազմակերպումը։ Աշտարակի արտադրական վարչության շատ տնտեսություններում դրա համար կան նպաստավոր պայմաններ։ Աշտարակի, Ոսկեվազի, Փարպիի և մյուս կոլտնտեսություններում հունիսի վերջերին սկսվում է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը. միթե չունի և շահավետ չէ դրանից հետո 4—5 ամիս հողը թողնել անօգտագործելի։ Այդ ժամանակամիջոցում ավյալ հողատարածությունների վրա կարելի է եգիպտացորենի խոզանացան կատարել։ Խոզանի վրա եգիպտացորենի ցանքի մշակման լավ փորձ ունի, օրինակ, Աշտարակի կոլտնտեսությունը։ Անցյալ տարի հացահատիկը հնձելուց հետո այստեղ եգիպտացորեն ցանվեց և մեկ հեկտարից, միջին հաշվով, ստացվեց 450 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա։ Հաշվի առնելով այդ, կոլտնտեսությունը որոշել է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքից հետո ջրովի տարածություններում եգիպտացորեն ցանել։ Մենք գործնական միջոցառումներ ենք մշակել՝ կազմակերպելու խոզանի վրա եգիպտացորենի ցանքը, լայնորեն արմատավորելով Աշտարակի կոլտնտեսության փորձը։

Ահա հողի ինտենսիվ օգտագործման մի այլ հնարավորություն։ Աշտարակի և Քանաքեռի սովխոզներում, ինչպես նաև նույն Աշտարակի կոլտնտեսությունում մոտ 1500 հեկտար տարածության վրա պտղատու այգիներ են հիմնվել։ Այգիները բերք են տալու 3—4 տարի հետո։ Նպատակահարմար գտնվեց միջշարային տարածությունները, մինչև ծառերի բերքատու դառնալը, օգտագործել։ Սեր առաջարկությունը՝ միջշարային տարածությունները բանջարաբոստանային կուլտուրաներով զբաղեցնելու վերաբերյալ, արժանացավ բոլորի պաշտպանությանը։ Այս տարի 300 հեկտարի վրա ցանվել է ձմերուկ, սեխ և պոմիդոր։ Այդ տարածությունից կստացվի զգալի լրացուցիչ եկամուտ։

Հարյուր հեկտար հողատարածության դիմաց պահվող անասունների գլխաքանակի և անասնաբուծական մթերքների արտադրության շեշտակի ավելացումը անասնապահության զարգացման խոշորագույն ռեզերվն է։

Աշտարակի արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները անցած տնտեսական տարում 100 հեկտար հողատարածության դիմաց պահել են 27 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 8 կով, ինչպես և 77 մանր եղջերավոր անասուն, 2 խոզ և 191 թև թռչուն. միաժամանակ այդ հողատարածության դիմաց, ինչպես սկզբում ասվեց, արտադրվել են անասնաբուծական քիչ մթերքներ։ Ավելին, առանձին տնտեսություններ արտադրական վարչության միջին ցուցանիշներից ավելի պակաս անասուններ ունեն և ավելի քիչ մթերք են արտադրել։

Հաճախ ենք հանդիպում այնպիսի փաստերի, երբ միևնույն հողակլիմայական պայմաններում գտնվող կոլտնտեսություններն ունենում են զարգացման տարբեր մակարդակ։ Հանգամանորեն ծանոթանալով գործերի վիճակին, դժվար չէ հասկանալ, որ դրա պատճառը տնտեսությունների ղեկավարման մեջ է։ Օրինակ, Սարալանջի կոլտնտեսությունը 100 հեկտար հողատարածության դիմաց ունի 61 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (այդ թվում՝ 16 գլուխ կով), 120 մանր եղջերավոր անասուն. նույն հողատարածության դիմաց կոլտնտեսությունը ստացել է 49 ց. միս, 210 ց. կաթ, 240 կգ. բուրդ։ Միևնույն հողակլիմայական պայմաններում է գտնվում տեականորեն ետ մնացող Արագյուղի կոլտնտեսությունը, որը 100 հեկտար հողատարածության դիմաց ունի 20 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (այդ թվում՝ 6 կով), 60 մանր եղջերավոր անասուն և նույն հողատարածության դիմաց արտադրել է 11 ց. միս, 65 ց. կաթ, 80 կգ. բուրդ։

Ինչպես տեսնում ենք, Սարալանջի և Արագյուղի կոլտնտեսություններում անասնաբուծության զարգացման մակարդակների միջև խիստ տարբերություն կա։ Այդ բնորոշ է նաև մյուս կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Ուրեմն, եթե անգամ հարյուր հեկտար հողատարածության դիմաց վարչության բոլոր տնտեսությունները հասնեն վարչության միջին ցուցանիշներին, ապա խոշոր եղջերավոր անասունների թիվը կավելանա 3019 գլխով, այդ թվում կովերինը՝ 955, մանր եղջերավորներինը՝ 9342 գլխով, թռչուններինը՝ 19 հազարով։ Իսկ եթե բոլոր տնտեսությունները հասնեն Սարալանջի տնտեսության մակարդակին՝ ապա խոշոր եղջերավոր անասունների թիվը կավելանա 18865 գլխով, այդ թվում կովերինը՝ 4441, մանր եղջերավոր անասուններինը՝ 20482-ով։ Միաժամանակ մեծ չափով կավելանա նաև անասնաբուծական մթերքների արտադրությունը. մսի համախառն արտադրությունը կավելանա 7048, կաթինը՝ 49588, բրդինը՝ 324 ցենտներով։

Ետ մնացող կոլտնտեսություններն առաջավորներին հասցնելու համար պահանջվում է եռանդուն աշխատանք, ուժերի մոբիլիզացում, աշխատանքի կազմակերպման մակարդակի բարձրացում։

Կոլտնտեսությունների մասնագիտացումը գյուղատնտեսության զարգացման խոշոր ռեզերվ է:

Տարիների ընթացքում ստեղծվել է այնպիսի վիճակ, երբ թե՛ խոշոր, թե՛ փոքր տնտեսություններում ստեղծվել են անասնապահության բազմապիսի ճյուղեր։ Առանց հաշվի առնելու, թե որ ճյուղի համար զարգացման ինչպիսի պայմաններ ու հնարավորություններ կան, բոլոր տնտեսությունների համար պլանավորվել են և՛ ոչխարաբուծություն, և՛ խոզաբուծություն, և՛ թռչնաբուծություն և այլն։ Սակայն այդ ճյուղերից ոչ մեկն էլ զարգացման անհրաժեշտ մակարդակի վրա չէ, և այդ պատճառով էլ դրանք դեռևս շահութաբեր չեն։

Օրինակ, Կոշի կոլտնտեսությունը, որի տրամադրության տակ կա 1280 հեկտար անջրդի վարելահող, ունի կո-

*վաբուծական ֆերմա՝ 105 գլուխ կովով, ոչխարաբուծական ֆերմա՝ 501 գլուխ մանր եղջերավոր անասունով, խոզաբուծական ֆերմա՝ 60 գլուխ խոզով, թռչնաբուծական ֆերմա՝ 2700 թև թռչունով։ Այսպիսով, հարյուր հեկտար հողատարածության դիմաց այստեղ պահվում է 12 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 5 գլուխ կով, 20 գլուխ մանր եղջերավոր անասուն, 3 գլուխ խոզ և 63 թև թռչուն։ Արտադրըված մեկ ցենտներ տավարի մսի ինքնարժեքը 1962 թվականին կազմել է 147 ռ., մեկ ցենտներ կաթինը՝ 19 ռ. 70 կոպեկ։ Մսի և կաթի ինքնարժեքը զգալի չափով գերազանցում է պետության վաճառքի գներից։ Ահա թե ինչու անասնաբուծությունից ստացվող եկամուտները չեն ծածկում մթերքների արտադրության վրա կատարված ծախսերը և, այդ պատճառով էլ կոլտնտեսությունն այժմ գտնվում է տնտեսական ծանր պայմաններում։*

*Կոշի կոլտնտեսությունում տավարաբուծության և խոզաբուծության զարգացման համար չկան անհրաժեշտ պայմաններ։ Կոլտնտեսությունը, բացի խաղողի այգիներից, չունի ոռոգելի այլ տարածություններ, որի հետևանքով պայմաններ չկան կերի ճակնդեղի, լոբազգի կուլտուրաների մշակության համար։ Հնարավորությունները սահմանափակ են նաև եգիպտացորենի մշակության համար։ Կոլտնտեսությունը չունի բնական խոտհարքներ. ամառային արոտները կովերի համար պիտանի չեն։ Այդ պատճառով էլ նրանց սննդի հիմնական մասը գնովի կերն է։ Մինչդեռ կոլտնտեսությունում անսպառ հնարավորություններ ու պայմաններ կան ոչխարաբուծության զարգացման համար։*

*Օրերս պարտիական կոմիտեն ուսումնասիրեց ոչխարաբուծության և թռչնաբուծության զարգացման հեռանկարները Կոշի կոլտնտեսությունում։ Ի դեպ, մենք նախօրոք այդ հարցի շուրջ խորհրդակցեցինք տարեց կոլտնտեսականների, մասնագետների, կոլտնտեսության ղեկավարների հետ և եկանք այն հետևության, որ անասնաբուծության զարգացումն այնտեղ պետք է ընթանա ոչխարաբուծության և թռչնաբուծության ուղղությամբ. ոչխարների գլխաքանակը առաջիկա երեք տարում պետք է հասցնել 4500—5000-ի, իսկ հավերինը՝ մինչև 10 հազարի։ Արտադրության ճյուղերը մասնագիտացնելու նպատակով նախատեսել ենք առաջիկայում ուսումնասիրել անասնաբուծության վիճակը նաև Ջրափի, Ագարակի, Շամիրամի, Թալիշի կոլտնտեսություններում։*

*Այլ է պատկերը Օշականի, Ոսկեվազի, Աշտարակի, Եղվարդի և այլ կոլտնտեսություններում, որոնք զուրկ են դյուրամերձ արոտներից, բնակավայրերը շրջապատված են այգիներով։ Այնտեղ խիստ երկար է տևում ոչխարների մսուրային շրջանը, բարձր է մեկ ցենտներ բրդի ինքնարժեքը՝ այն հասնում է 450 ռուբլու։ Մինչդեռ վերոհիշյալ տնտեսություններում հիանալի պայմաններ կան տավարաբուծության զարգացման համար։*

*Անհրաժեշտ է հստակ որոշել ու մասնագիտացնել արտադրական ճյուղերը, ճիշտ պլանավորել տնտեսությունների գործունեությունը։ Այսպես, Գետամեջի թռչնաբուծական տոհմային սովխոզն այս տարի հանձնելու է մոտ 1400 հազար հատ ձու և 204 ց. թռչունի միս։ Միաժամանակ պլանավորված է ունենալ 156 խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 76 կով. մինչդեռ սովխոզում տավարաբուծության զարգացման համար անհրաժեշտ պայմաններ չկան. չկան խոտհարքներ, արոտներ, սեփական կերի բազա։ Դրա հետևանքով կովաբուծական ֆերման աշխատում է ո՛չ միայն մեծ վնասով, այլև այն շատ ավելորդ ժամանակ ու ջանքեր է խլում սովխոզի ղեկավարներից։*

*Պարտիական կոմիտեն և վարչությունը այժմ խորապես ուսումնասիրում են տնտեսությունների մասնագիտացման հարցը ըստ տնտեսությունների։ Այդ գործում լուրջ օգնություն պետք է ցույց տա գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտը։ Տնտեսությունների բնակլիմայական պայմանների առանձնահատկություններին և շահութաբերությանը համապատասխան, կորոշվի նրանց զարգացման պրոֆիլը։*

*Արտադրական վարչության կոլտնտեսությունների ու սովխոզների առջև ծառացած տնտեսական խնդիրների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում մեծ է քաղաքական-մասսայական աշխատանքի դերը։ Ուղեցույց ունենալով Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումի որոշումները, կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունները ավելի լայնորեն կծավալեն գաղափարական-քաղաքական աշխատանքը, գյուղի բոլոր մարդկանց կդաստիարակեն աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, ջերմ հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի ոգով, կբարձրացնեն նրանց ակտիվությունը և գաղափարական ամբողջ աշխատանքը ի՛ սպաս կդնեն տնտեսական խնդիրների հաջող լուծմանը։*

Հ. ԻԿԻԼԻԿՅԱՆ

ՀԿՊ Աշտարակի գյուղական արտադրական կոմիտեի քարտուղար

ԵՐԿՐԱԳՆԴԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԹԻՎԸ ԸՍՏ ԼԵԶՎԱ-ԸՆՏԱՆԻՔՆԵՐԻ ԵՎ ԽՄԲԵՐԻ (մլն. մարդ)

Հնդեվրոպական ընտանիք (1456,7)
Հնդկական խումբ — 418,0
Գերմանական խումբ — 365,8
Ռոմանական խումբ — 357,5
Սլավոնական խումբ — 244,7
Իրանական խումբ — 41,0
Հունական խումբ — 9,5
Կելտական խումբ — 9,5
Լեթո-լիտվական խումբ — 4,5
Հայկական խումբ — 3,7
Ալբանական խումբ — 2,5
Չին-տիբեթական ընտանիք (788,7)
Չինական խումբ — 684,2
Տիբեթա-բիրմանական խումբ — 37,5
Թայի խումբ — 36,0
Վիետնամական խումբ — 26,4
Մյաո-յաո խումբ — 4,6
Մալայո-պոլինեզյան ընտանիք (132,0)
Ինդոնեզյան խումբ — 130,3
Մելանեզյան խումբ — 1,1
Պոլինեզյան խումբ — 0,6
Սեմա-քամիթական ընտանիք (115,5)
Սեմական խումբ — 98,5
Կուշիթական խումբ — 11,5
Բերբերական խումբ — 5,5
Դրավիդյան ընտանիք (115,3)
Ճապոնացիներ (95,0)
Բանտու ընտանիք (69,8)
Ալթայական ընտանիք (67,1)
Կորեացիներ (37,0)
Այլ ընտանիքներ և խմբեր (155,9)
Գվինեական խումբ — 25,0
Հնդկացի ժողովուրդներ — 23,0
Ուրալական ընտանիք — 22,4
Արևմտա-բանտոիդական խումբ — 11,2
Հաուսա խումբ — 11,0
Նիլոթական ընտանիք — 8,0
Մոն-քմերական ընտանիք — 8,0
Կենտրոնական բանտոիդական խումբ — 7,8
Մանդե ընտանիք — 7,5
Կենտրոնական և Արևելյան Սուդանի ժողովուրդներ — 7,0
Արևելյան բանտոիդական խումբ — 6,5
Մունդա ընտանիք — 5,8
Կովկասյան ընտանիք — 4,9
Կանուրի խումբ — 2,3
Պապուասյան ժողովուրդներ — 2,0
Բասկեր — 1,0
Սոնգաի խումբ — 0,9
Կոյսանական խումբ — 0,2
Հյուսիս-հալմահերցիներ — 0,18
Էսկիմոսա-ալեուտական ընտանիք — 0,06
Բուրիշի խումբ — 0,05
Ավստրալիացիներ — աբորիգեններ — 0,05
Այնու խումբ — 0,02
Պալեասիական ժողովուրդներ — 0,02
Անհայտ և այլ ընտանիքներ ու խմբեր — 1,02

# ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄ ԵՆՔ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Բուռն անցավ Շամլուղի հանքի կոմունիստների հաշվետու-ընտրական ժողովը, որը տեղի ունեցավ անցյալ տարվա նոյեմբերին։ Կոմունիստների անաչառ ելույթներից, հանքի ղեկավարների հասցեին արված համարձակ ու դիպուկ դիտողություններից զգացվում էր, որ նրանցից ամեն մեկը ոչ միայն խորապես մտահոգված է հանքում ստեղծված ծանր վիճակով, այլև պատրաստ է իր ողջ ջանքերը ներդնել, որպեսզի վճռական բեկում մտնի աշխատանքում։ Այդ բեկումը խիստ անհրաժեշտ էր. թերակատարվել էր պղնձահանույթի 1962 թվականի առաջադրանքը, լեռնա-հետախուզական և լեռնա-նախապատրաստման աշխատանքների պլանը կատարվել էր ընդամենը 60 տոկոսով։

Հիմնական թերությունը արտադրության վատ կազմակերպումն էր, հաճախակի պարապուրդները, բանվորների կողմից նոր տեխնիկայի անբավարար յուրացումը. դրանք արգելակում էին հանքի նորմալ գործունեությունը։ Այդ ամենը հասցրել էր այն բանին, որ շատ բանվորներ թերակատարում էին արտադրանքի նորմաները, պակասել էր առաջատար պրոֆեսիա ունեցողների՝ հորատողների, հանքահանների և հորատանցողների վաստակը։ Այստեղից էլ առաջանում էր բանվորների մեծ հոսունությունը, բրիգադաների ոչ կոմպլեկտավորումը։ Իրենց ելույթներում այս ամենի մասին խոսեցին կոմունիստներ՝ Վ. Շահինյանը, Ա. Անդրեասյանը, Պ. Կսիֆիլինովը, Գ. Գաբանովը և ուրիշներ։

Հաշվի առնելով կոմունիստների քննադատական դիտողությունները և խելացի առաջարկությունները, նորընտիր պարտբյուրոն ձեռնամուխ եղավ դրանց իրականացմանը։

Ամենից առաջ հարկ եղավ զբաղվել արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխման, գործի նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացման հարցերով։ Բանը նրանումն էր, որ մեր պարտիական կազմակերպության 98 անդամ-թեկնածուներից միայն քսանհինգն էին անմիջականորեն զբաղված ստորերկրյա աշխատանքում. բացի 24 թոշակառուներից, մնացած կոմունիստներն օժանդակ բանվորներ ու ծառայողներ էին։ Այսպես, լեռնային երրորդ տեղամասում միայն մեկ կոմունիստ ունեինք, այն էլ հերթափոխի պետն էր։ Այս աննորմալ դրությունը մենք շտկեցինք հաշվետու-ընտրական ժողովից անմիջապես հետո։ Պարտբյուրոյի առաջարկությամբ այդ տեղամասը մշտական աշխատանքի ուղարկվեցին կոմունիստներ՝ հորատող Աշոտ Անդրեասյանը և պայթեցնող Սուրեն Մարտիրոսյանը։ Վերոհիշյալ տեղամասում ստեղծվեց պարտիական խումբ։

Հանքագործ-կոմունիստները գլխավորեցին հորատողների բրիգադաները։



Իր ցանկությամբ ետ մնացող բրիգադան գնաց Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ, կոմունիստ Վասիլ Շահինյանը։ Համալրվեց և ամրապնդվեց երկրաբանական-հետախուզական աշխատանքների ցեխային պարտկազմակերպությունը։

Աշխատանքի կազմակերպումը բարելավելու նպատակով կազմակերպեցինք երիտասարդ լեռնագործների մասնագիտական ուսուցումը, նրանցից շատերը սովորեցին կառավարել մեքենաներն ու սարքավորումները։ Այդ այնքան էլ հեշտ գործ չէր։ Տեղամասի պետ, կոմունիստ Ե. Շալովասովը, հերթափոխի պետեր Ի. Ջոևը, Մ. Դավթյանը, հին հանքագործ-կոմունիստներ Ա. Անդրեասյանը, Վ. Շահինյանը դարձան երիտասարդների առաջին ուսուցիչներն ու դաստիարակները։ Եվ գործը տեղից շարժվեց։

Մեծ ուժ են ներկայացնում թոշակառու կոմունիստները, որոնց ջանքերով սովետական իշխանության տարիներին ավերակներից հառնեց հանքը։ Տասնյակ տարիների հայրենանվեր աշխատանքից հետո հիմա նրանք հանգստանում են։ Նրանցից շատերի տարիքն ու առողջական վիճակը թույլ չեն տալիս այժմ թեկուզ ժամանակավորապես, աշխատելու ստորերկրյա պայմաններում։ Մենք որոշեցինք նրանց ուժերն օգտագործել։ Պարտիական բյուրոյում անկեղծ ու սրտաբաց զրուցեցինք այդ հին հանքագործների հետ։ Բոլորն էլ իրենց սրտին մոտ էին ընդունում այն ամենը, ինչ կատարվում էր այսօր հարազատ հանքում։ Նրանք պատրաստակամություն հայտնեցին օգնելու պարտբյուրոյին, ամեն կերպ աջակցելու արտադրական գործերի բարելավմանը։

Կոմունիստներ Գեորգի Գաբանովը և Պավել Կսիֆիլինովն սկսեցին պարբերաբար լինել բրիգադաներում, հերթափոխերում, զրուցել հանքագործների, մասնավորապես երիտասարդների հետ, օգնել նրանց իրենց խորհուրդներով։ Ավելին, մի քանի թոշակառու կոմունիստներ իրենց իսկ ցանկությամբ ժամանակավորապես աշխատանքի գնացին հանք, սովորեցրին, իրենց փորձը հաղորդեցին երիտասարդներին։

Պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում նշվեց, որ լավ չէր կազմակերպված քաղաքական-դաստիարակչական աշխատանքը երիտասարդների շրջանում. դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ նրանցից ոմանք մեծ դժկամությամբ էին գնում հանքախորշերը։ Այդ ուղղությամբ շնորհակալ գործ կատարեցին թոշակառուները, հատկապես կոմունիստներ՝ հանքի նախկին էներգետիկ Ա. Շահբազյանը և էլեկտրաքարշի նախկին մեքենավար Ն. Աղվանյանը։ Արդյունավետ էին աշխատանքի վետերանների հանդիպումները, անհատական զրույցներն այն երիտասարդների հետ, որոնք բարվոք էին համարում հանրօգուտ գործ չանել և ապրել իրենց ծնողների հաշվին։ Արդյունքը եղավ այն, որ երիտասարդները, ինչպես՝ Վ. Զախարովը, Շ. Սպիրիդոնովը, Ն. Խոշտոլովը, Գ. Հովհաննիսյանը և շատ ուրիշներ, սկսեցին աշխատել հանքախորշերում, ձեռք բերել մասնագիտություն։

Հանքախորշերում աշխատանքի կազմակերպման բարելավումը մեծ չափով նպաստեց պարապուրդների կրճատմանը։ Աշխատանքն աստիճանաբար ավելի արտադրողական դարձավ։ Այսպես, եթե 1962 թվականին աշխատատար ծանր օպերացիաներից մեկի՝ հանքախորշի մաքրման վրա զբաղված էին 5 լեռնամբարձիչ, ապա ընթացիկ տարվա առաջին եռամսյակում դրանց թիվը հասավ 16-ի։ Եթե առաջ շատ հանքագործներ հրաժարվում էին բարդ մեխանիզմների վրա աշխատելուց, ապա այժմ նոր տեխնիկային տիրապետելուց հետո ոչ ոք այլևս չի ցանկանում ձեռ-

# ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄ ԵՆՔ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Բուռն անցավ Շամլուղի հանքի կոմունիստների հաշվետու-ընտրական ժողովը, որը տեղի ունեցավ անցյալ տարվա նոյեմբերին։ Կոմունիստների անաչառ ելույթներից, հանքի ղեկավարների հասցեին արված համարձակ ու դիպուկ դիտողություններից զգացվում էր, որ նրանցից ամեն մեկը ոչ միայն խորապես մտահոգված է հանքում ստեղծված ծանր վիճակով, այլև պատրաստ է իր ողջ ջանքերը ներդնել, որպեսզի վճռական բեկում մտնի աշխատանքում։ Այդ բեկումը խիստ անհրաժեշտ էր. թերակատարվել էր պղնձահանույթի 1962 թվականի առաջադրանքը, լեռնա-հետախուզական և լեռնա-նախապատրաստման աշխատանքների պլանը կատարվել էր ընդամենը 60 տոկոսով։

Հիմնական թերությունը արտադրության վատ կազմակերպումն էր, հաճախակի պարապուրդները, բանվորների կողմից նոր տեխնիկայի անբավարար յուրացումը. դրանք արգելակում էին հանքի նորմալ գործունեությունը։ Այդ ամենը հասցրել էր այն բանին, որ շատ բանվորներ թերակատարում էին արտադրանքի նորմաները, պակասել էր առաջատար պրոֆեսիա ունեցողների՝ հորատողների, հանքահանների և հորատանցողների վաստակը։ Այստեղից էլ առաջանում էր բանվորների մեծ հոսունությունը, բրիգադների ոչ կոմպլեկտավորումը։ Իրենց ելույթներում այս ամենի մասին խոսեցին կոմունիստներ՝ Վ. Շահինյանը, Ա. Անդրեասյանը, Պ. Կսիֆիլինովը, Գ. Գաբանովը և ուրիշներ։

Հաշվի առնելով կոմունիստների քննադատական դիտողությունները և խելացի առաջարկությունները, նորընտիր պարտբյուրոն ձեռնամուխ եղավ դրանց իրականացմանը։

Ամենից առաջ հարկ եղավ զբաղվել արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխման, գործի նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացման հարցերով։ Բանը նրանումն էր, որ մեր պարտիական կազմակերպության 98 անդամ - թեկնածուներից միայն քսանհինգն էին անմիջականորեն զբաղված ստորերկրյա աշխատանքում. բացի 24 թոշակառուներից, մնացած կոմունիստներն օժանդակ բանվորներ ու ծառայողներ էին։ Այսպես, լեռնային երրորդ տեղամասում միայն մեկ կոմունիստ ունեինք, այն էլ հերթափոխի պետն էր։ Այս աննորմալ դրությունը մենք շտկեցինք հաշվետու-ընտրական ժողովից անմիջապես հետո։ Պարտբյուրոյի առաջարկությամբ այդ տեղամասը մշտական աշխատանքի ուղարկվեցին կոմունիստներ՝ հորատող Աշոտ Անդրեասյանը և պայթեցնող Սուրեն Մարտիրոսյանը։ Վերոհիշյալ տեղամասում ստեղծվեց պարտիական խումբ։

Հանքագործ - կոմունիստները գլխավորեցին հորատողների բրիգադները։ Իր ցանկությամբ ետ մնացող բրիգադան գնաց Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ, կոմունիստ Վասիլ Շահինյանը։ Համալրվեց և ամրապնդվեց երկրաբանական-հետախուզական աշխատանքների ցեխային պարտկազմակերպությունը։

Աշխատանքի կազմակերպումը բարելավելու նպատակով կազմակերպեցինք երիտասարդ լեռնագործների մասնագիտական ուսուցումը, նրանցից շատերը սովորեցին կառավարել մեքենաներն ու սարքավորումները։ Այդ այնքան էլ հեշտ գործ չէր։ Տեղամասի պետ, կոմունիստ Ե. Շալովասովը, հերթափոխի պետեր Ի. Զուևը, Մ. Դավթյանը, հին հանքագործ-կոմունիստներ Ա. Անդրեասյանը, Վ. Շահինյանը դարձան երիտասարդների առաջին ուսուցիչներն ու դաստիարակները։ Եվ գործը տեղից շարժվեց։

Մեծ ուժ են ներկայացնում թոշակառու կոմունիստները, որոնց ջանքերով սովետական իշխանության տարիներին ավերակներից հառնեց հանքը։ Տասնյակ տարիների հայրենանվեր աշխատանքից հետո հիմա նրանք հանգստանում են։ Նրանցից շատերի տարիքն ու առողջական վիճակը թույլ չեն տալիս այժմ թեկուզ ժամանակավորապես, աշխատելու ստորերկրյա պայմաններում։ Մենք որոշեցինք նրանց ուժերն օգտագործել։ Պարտիական բյուրոյում անկեղծ ու սրտաբաց զրուցեցինք այդ հին հանքագործների հետ։ Բոլորն էլ իրենց սրտին մոտ էին ընդունում այն ամենը, ինչ կատարվում էր այսօր հարազատ հանքում։ Նրանք պատրաստակամություն հայտնեցին օգնելու պարտբյուրոյին, ամեն կերպ աջակցելու արտադրական գործերի բարելավմանը։

Կոմունիստներ Գեորգի Գաբանովը և Պավել Կսիֆիլինովն սկսեցին պարբերաբար լինել բրիգադներում, հերթափոխերում, զրուցել հանքագործների, մասնավորապես երիտասարդների հետ, օգնել նրանց իրենց խորհուրդներով։ Ավելին, մի քանի թոշակառու կոմունիստներ իրենց իսկ ցանկությամբ ժամանակավորապես աշխատանքի գնացին հանք, սովորեցրին, իրենց փորձը հաղորդեցին երիտասարդներին։

Պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում նշվեց, որ լավ չէր կազմակերպված քաղաքական-դաստիարակչական աշխատանքը երիտասարդների շրջանում. դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ նրանցից ոմանք մեծ դժկամությամբ էին գնում հանքախորշերը։ Այդ ուղղությամբ շնորհակալ գործ կատարեցին թոշակառուները, հատկապես կոմունիստներ՝ հանքի նախկին էներգետիկ Ա. Շահբազյանը և էլեկտրաքարշի նախկին մեքենավար Ն. Աղվանյանը։ Արդյունավետ էին աշխատանքի վետերանների հանդիպումները, անհատական զրույցներն այն երիտասարդների հետ, որոնք բարվոք էին համարում հանրօգուտ գործ չանել և ապրել իրենց ծնողների հաշվին։ Արդյունքը եղավ այն, որ երիտասարդները, ինչպես՝ Վ. Զախարովը, Շ. Սպիրիդոնովը, Ն. Խոշտոլովը, Գ. Հովհաննիսյանը և շատ ուրիշներ, սկսեցին աշխատել հանքախորշերում, ձեռք բերել մասնագիտություն։

Հանքախորշերում աշխատանքի կազմակերպման բարելավումը մեծ չափով նպաստեց պարապուրդների կրճատմանը։ Աշխատանքն աստիճանաբար ավելի արտադրողական դարձավ։ Այսպես, եթե 1962 թվականին աշխատատար ծանր օպերացիաներից մեկի՝ հանքախորշի մաքրման վրա զբաղված էին 5 լեռնամբարձիչ, ապա ընթացիկ տարվա առաջին եռամսյակում դրանց թիվը հասավ 16-ի։ Եթե առաջ շատ հանքագործներ հրաժարվում էին բարդ մեխանիզմների վրա աշխատելուց, ապա այժմ նոր տեխնիկային տիրապետելուց հետո ոչ ոք այլևս չի ցանկանում ձեռ-

քի աշխատանք կատարել: Այս ամենը, ինչպես պետք էր սպասել, բարձրացրեց գործարքով աշխատող բանվորների աշխատավարձը, մարդիկ սկսեցին գնալ հանքախորշերը, կրճատվեց բանվորական ուժի հոսունությունը:

Այս բոլոր միջոցառումների կենսագործման շնորհիվ զգալի չափով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, որն իր հերթին նպաստեց պետական պլանի կատարմանը: Նախկինում ետ մնացող հանքագործների մեր կոլեկտիվը 1963 թ. առաջին եռամսյակի արտադրական պլանը կատարեց բոլոր ցուցանիշներով. անցյալ տարվա չորրորդ եռամսյակի համեմատությամբ կրկնակի ավելացան լեռնահետախուզական և լեռնա-նախապատրաստման աշխատանքները, իսկ պղնձահանույթի արտադրական առաջադրանքը կատարվեց 106 տոկոսով: Հաջողությամբ կատարվեցին նաև ապրիլմայիս ամիսների պետական պլանները: Այսպիսով, պարտիական կազմակերպության ջանքերով վճռական տեղաշարժեր կատարվեցին հանքում:

Կենսագործելով կոմունիստների քննադատական դիտողությունները, պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն որոշակի գործ են կատարում հանքագործների կյանքն ու կենցաղը բարելավելու ուղղությամբ: Օրինակ, երկար տարիներ ձգձգվում էր Շամլուղի բանավանից մինչև Ախթալա կայարան ավտոերթևեկության կազմակերպումը: Ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունը չէր կատարում լեռնագործների արդարացի պահանջը, պատճառաբանելով վատ ճանապարհը: Պետք էր ջարդել բյուրոկրատական արգելքները, կազմակերպել ավտոբուսային երթևեկություն: Կենսագործելով կոմունիստների նակազը, հանքի ղեկավարությունը լուծեց այդ խնդիրը ևս:

Պարտիական վերահսկողության տակ առնվեց բանավանի ջրմուղի շինարարությունը, իր լավ աշխատանքով աչքի ընկավ հանքի կապիտալ շինարարության բաժնի նախկին պետ կոմունիստ Ց. Զոլախսավովը: Շինարարության տեմպերն արագացան: Առևտուրը կանոնավորելու և առևտրական օբյեկտների նկատմամբ բանվորական վերահսկողությունն ուժեղացնելու նպատակով պարտբյուրոն մշտական օգնություն է ցույց տալիս արհմիության տեղական կոմիտեին: Պարտբյուրոն ամեն կերպ աջակցում է բանվորական հսկիչների գործունեությանը, ընթացք տալիս նրանց ահազանգերին:

Մեր աշխատանքներում դեռևս կան լուրջ թերություններ: Այսպես. դեռևս բարեկարգված չեն բանվորական հանրակացարանները, այնտեղ նեղվածք է, չկա կահույք, մահճակալները հին են, սպիտակեղենը՝ վատորակ: Պարտիական կազմակերպությունը միջոցներ է ձեռնարկում այդ անկանոն վիճակը կարգավորելու ուղղությամբ: Խիստ անբավարար են նաև բնակարանային շինարարության ներկա տեմպերը, դանդաղ են ընթանում բանավանի բարեկարգման աշխատանքները, լիովին չեն իրացվում այդ նպատակով բաց թողնված գումարները: Այդ գործում մեզ պետք է օգնի պարտիայի Ալավերդու արտադրական կոմիտեն:

Շամլուղի հանքի պարտիական կազմակերպության բյուրոն կոմունիստներին սիստեմատիկաբար զեկուցում է պարտիական ժողովներում կոմունիստների կողմից արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրականացման ընթացքի մասին, խորհուրդ է հարցնում նրանցից, իսկ անհրաժեշտության դեպքում նրանց ուղարկում ետ մնացող տեղամասերը:

**Ս. ՏԵՐՅԱԵՎ**

Շամլուղի հանքի պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

Պարտիայի ծրագիրը, որ ընդունեց ՍՄԿՊ XXII համագումարը, սովետական ժողովրդի առաջ խոշոր խնդիրներ է դրել մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու ուղղությամբ և նշել է այդ խնդիրների լուծման ուղիները:

Սովետական ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ամենուրեք ստեղծագործական ու լարված աշխատանք է կատարում առաջադրված խնդիրները պատվով կենսագործելու և կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու համար:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը կպահանջի կապիտալ խոշոր ներդրումներ ժողովրդական տնտեսության մեջ: Շինարարության՝ անցյալներում չտեսնված վիթխարի ծրագրի իրականացման գործում կարևոր նշանակություն ունեն շինարարական պրոցեսների առավելագույն մեքենայացման ու ավտոմատացման միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացումը, կապիտալ ներդրումների արդյունավետ օգտագործումը, շինարարության արժեքի իջեցումը և նրա ժամկետների խիստ կրճատումը: Կապիտալիզմի հետ տնտեսական մրցակցության մեջ,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,—բացառիկ կարևոր, կենսական հարց է ժամանակ շահելու հարցը, տնտեսական խնդիրների լուծման ժամկետների հարցը:

Յոթնամյակի անցած չորս տարիները ցույց տվին, որ սովետական ժողովուրդն իրավացիորեն կարող է պարծենալ իր աշխատանքի արդյունքներով: Յոթնամյա պլանի առաջադրանքները ժողովրդական տնտեսության շատ ճյուղեր գերակատարում են: Կապիտալ ներդրումների ծավալը նույնիսկ գերազանցում է յոթնամյակի նախանշումները:

Շինարարության ծավալի աճմանը զուգընթաց զգալիորեն բարձրացել է շինարարական արտադրության տեխնիկական մակարդակը: Հավաքովի երկաթբետոնի արտադրության անընդհատ աճը և նրա արմատավորումը շինարարության մեջ հնարավորություն է տալիս շինարարական արտադրությունը դարձնել շենքերի ու կառույցների՝ գործարաններում պատրաստված մասերի ու կոնստրուկցիաների հավաքման մեքենայացված պրոցես: Մեքենաների պարկի արագ մեծացման շնորհիվ շինարարության մեջ բարձրացել է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը:

Վերջին տարիներս Հայկական ՍՍՌ շինարարական կազմակերպություններն ու շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունները ստացել են մեծ քանակությամբ շինարարական և ճանապարհաշինական մեքենաներ ու մեխանիզմներ, որոնց շնորհիվ հնարավոր դարձավ զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ուժեղացնել կապիտալ շինարարության աճման տեմպերը և ընդարձակել նրա ծավալը:

Ռեսպուբլիկայի շինարարական մեքենաների պարկն 1960 թ. 600-ի դիմաց այժմ ունի ավելի քան 1400 խոշոր մեքենաներ: Առանձնապես նշանակալից չափով աճել է մի քանի կարևոր մեքենաների քանակը: Այդ են ցույց տալիս հետևյալ թվերը.

նախահաշվային գները։ Այդ գները հաճախ անհիմն կերպով բարձրացվում են։ Այսպես, ԲԿՍՄ—5 կռունկի մեկ հերթափոխության աշխատանքի համար գանձվում է Երևանում 24 ռ. 70 կ., Կիրովականում՝ 25 ռ. 97 կ., իսկ Լենինականում՝ 29 ռ. 80 կ.։ «Կիրարդշինի» № 6 տրեստում չկա նույնիսկ գների դիֆերենցիացիան ըստ կռունկների տիպերի։ Այսպես, տարբեր բեռնամբարձությամբ աշտարակավոր կռունկների մեքենահերթափոխության համար պլանա-հաշվառքային արժեքները միանման են։

Վերջին ժամանակներս միության մի շարք շինարարական կազմակերպություններում մեխանիզատորները վարձատրվում են ըստ նատուրալ ցուցանիշների (գլավմոսստրոյ), ըստ մեխանիզմը օբյեկտում գտնվելու մեքենա-օրվա (գլավ-լենինգրադստրոյի), մեքենա-հերթափոխային արժեքի նկատմամբ այն գործակիցների կիրառման, որոնք իջեցնում են մեքենաները երկրորդ և երրորդ հերթափոխություններում շահագործելիս (ՌՍՖՍՌ շինարարության մինիստրություն և գլավռոստովստրոյ), իսկ մեր ռեսպուբլիկայում չի կազմված նույնիսկ մեքենա-հերթափոխային ինքնարժեքի կալկուլյացիան։

Փոխադարձ հաշվարքի այդ պրակտիկան, որով վարձատրությունը կատարվում է ըստ մեքենա-հերթափոխությունների կատարած աշխատանքի, հաշվումներով չհիմնավորված գների կիրառմամբ, չի խթանում նրանց աշխատանքի բարելավմանը, խախտում է տնտհաշվարկի հիմքերը և առաջացնում չարդարացված շահույթներ կամ վնասներ։

Մեքենաների աշխատանքի հատուցման փոխադարձ հաշվարկների սիստեմի կարգավորմանը զուգընթաց անհրաժեշտ է ներդնել մեխանիզատորների աշխատանքի վարձատրման՝ իրենց արդարացրած նորանոր ձևեր, ինչպիսիք են՝ կռունկավարներին կոմպլեքսային բրիգադաների մեջ մտցնելը, ըստ կատարած աշխատանքի ծավալի վարձատրելը, կոմպլեքսային էքսկավատորային բրիգադաներ ստեղծելը և այլն։

Եղած թերությունների պատճառներից մեկն այն է, որ համաշինարարական տրեստների գլխավոր մեխանիկների բաժինները դեռևս չեն գլխավորում մեքենայացման արմատավորման գործը։ Մեխանիկները կատարում են ամենաբազմազան հանձնարարություններ, ընդհուպ մինչև մատակարարման գործը և ամենից ավելի քիչ զբաղվում են իրենց անմիջական ֆունկցիաներով՝ մեքենաների տեխնիկական խնամքով ու նրանց նորոգմամբ, որի պատճառով էլ մեքենաները փաստորեն թողնված են առանց որակյալ տեխնիկական հսկողության։

Անհրաժեշտ է լրջորեն մտածել մեխանիզատորների, ինչպես բանվորների, այնպես էլ ինժեներա-տեխնիկական աշխատողների որակավորման բարձրացման մասին, մեխանիզատորների մեջ լայնորեն ծավալել սոցիալիստական մրցություն, առաջավորների նվաճումները հրապարակել ռեսպուբլիկական թերթերում։

Շինարարական արտադրության այդ կարևորագույն ճյուղում պատշաճ բարձրության վրա չեն գիտահետազոտական աշխատանքները։ Մինչև այժմ չլուծված են մնում հողային և ծեփագործական աշխատանքները արդյունավետ, մեքենայացված ձևով կատարելու պրոբլեմները։

Շինարարության մեքենայացման այս հասունացած հարցերով համարյա չի զբաղվում շինանյութերի հայկական ինստիտուտը, որն ունի շինարարության կազմակերպման, մեքենայացման ու էկոնոմիկայի սեկտոր։ Ներկայումս միության մեջ մեծ նշանակություն են ստանում մեքենաների շահագործման ու նորոգման տեսական շատ հարցեր, նրանց հուսալիության ու երկարակեցության ցուցանիշների բարելավման և բազմաթիվ այլ խնդիրներ, կապված ռեսպուբլիկաների առանձնահատկությունների հետ։ Այս նպատակով անհրաժեշտ է շինանյութերի հայկական ինստիտուտում ստեղծել շինարարական մեքենաների շահագործման ու նորոգման օղակ։

Շինարարության մինիստրությունը, ջրային տնտեսության մինիստրությունը, խճուղային ճանապարհների վարչությունը, ինչպես նաև ռեսպուբլիկայի պետպլանը պետք է ընդհուպ զբաղվեն շինարարական մեքենաների ու մեխա-



նիզմների օգտագործման վերլուծությամբ և բոլոր ջանքերը գործադրեն շինարարության մեքենայացման արդյունավետությունը բարձրացնելու համար։

Ռեսպուբլիկայի Մինիստրների սովետը վերջերս քննության առավ այս կարևորագույն հարցը և ծավալուն որոշում ընդունեց մեխանիզմների օգտագործումն արմատապես բարելավելու և շինարարական աշխատանքների մեքենայացման մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։

Շինարարության մեջ արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը հզոր լծակ են աշխատանքի արտադրողականության բարձրացման, շինարարության ժամկետների կրճատման և ինքնարժեքի իջեցման բնագավառում։ Տարակույս չկա, որ շինարարական կազմակերպությունների աշխատողները, մեխանիզատորները, նախագծային ու կոնստրուկտորական կազմակերպությունները, ինչպես նաև պլանավորող օրգաններն ու պետպլանը ամենավճռական միջոցներ ձեռք կառնեն շինարարության մեքենայացման գործում եղած թերությունները վերացնելու ուղղությամբ, լայնորեն կարմատավորեն պրոգրեսիվ տեխնիկան, որպեսզի հաջողությամբ կատարեն այն վիթխարի խնդիրները, որ առաջադրել է պարտիան կապիտալ շինարարության բնագավառում։

Մ. ՍԱԼԱՎԵՐԴՅԱՆ
ՀՍՍՌ Մինիստրների սովետի
պետպլանի նախագահի տեղակալ

## ԿԱՐԳԱՎՈՐԵԼ ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության՝ վերջին տարիներին ձեռնարկած տնտեսական և կազմակերպչական միջոցառումների շնորհիվ զգալի չափով ընդլայնվել է ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների հանրային արտադրությունը։ Մեքենա-տրակտորային կայանների վերակազմումից հետո կոլտնտեսությունների հիմնական արտադրական միջոցներն ավելացել են գրեթե երկու անգամ։

Հանրային տնտեսության զարգացման և դրամական եկամուտների աճմանը զուգընթաց աճել է նաև կապիտալ շինարարությունների ծավալը։ ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի 1953 թվականի սեպտեմբերյան պլենումի որոշումներից ելնելով, պետական բանկը կոլտնտեսություններին վարկեր տրամադրելիս հատուկ ուշադրություն է նվիրել հանրային անասնապահության զարգացմանը։ 1953—1962 թվականներին պետական բանկը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին տրամադրել է 36,5 միլիոն ռուբլի վարկ, որից անասնապահական շինարարությունների համար՝ 13 միլիոն, կամ վարկերի 36 տոկոսը։ Երկարատև վարկերի օգնությամբ 1959—1962 թվականներին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կառուցված են՝ կովանոցներ՝ 23,4 հազար, հորթանոցներ՝ 17,7 հազար, խոզանոցներ՝ 15 հազար, ոչխարանոցներ՝ 174 հազար, թռչնանոցներ՝ 360 հազար գլխի համար։

Գյուղում մեծ գործ է կատարված կուլտուրական օբյեկտների ցանցն ընդլայնելու ուղղությամբ։ Կոլտնտեսությունների միջոցներով և երկարատև վարկերի օգնությամբ կառուցվել են բազմաթիվ դպրոցներ, հիվանդանոցներ, ակումբներ։ Միայն 1962 թվականին կառուցվել են դպրոցներ՝ 3308 աշակերտական տեղով, ակումբներ՝ 4050 տեղանոց և մանկական հիմնարկներ՝ 495 երեխաների համար։

Սակայն պետք է նշել, որ եղած միջոցներն ու հնարավորությունները ճիշտ հաշվի չառնելու և սխալ պլանավորման հետևանքով վերջին ժամանակներս կոլտնտեսություններում կապիտալ շինարարության առաջադրանքները, հատկապես անասնապահական օբյեկտների շինարարության պլանները, թերակատարվում են։ Այդ առանձնապես ցայտուն կերպով արտահայտվեց 1962 թվա-

կանին։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները կովանոցների շինարարության պլանը կատարել են 30, հորթանոցներինը՝ 34, ոչխարանոցներինը՝ 35, թռչնանոցներինը՝ 37, խոզանոցներինը՝ 48 տոկոսով։ Խիստ թերակատարվել են նաև մյուս օբյեկտների շինարարության պլանները. այսպես, օրինակ, կոլտնտեսությունների գծով դպրոցաշինարարության պլանը կատարվել է 32, ակումբներինն ու կուլտուրայի տներինը՝ 10, բուժհիմնարկներինը՝ 42 և բաղնիքներինը՝ 19 տոկոսով։

Ինչպես նշեցինք, շինարարության պլանների սիստեմատիկ թերակատարումը ոչ ճիշտ պլանավորման հետևանք է։ Հաճախ կոլտնտեսություններն առանց նյութական բազայի պլանավորում են մեծ ծավալի կառուցումներ, դրամական միջոցները ցրում են մի շարք օբյեկտների վրա, որոնք երկար տարիներ մնում են անավարտ, երբեմն էլ մինչև կառուցելը շարքից դուրս են գալիս։ Այսպես, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1962 թվականին կուլտ-կենցաղային օբյեկտների կառուցման համար նախատեսել էին հատկացնել 6,3 միլիոն ռուբլի, կամ կապիտալ ներդրումների համար նախատեսված միջոցների 38 տոկոսը, մի բան, որ բոլորովին հնարավոր չէր, որովհետև 1960—1961 թվականներին բոլոր հանրային օբյեկտների կառուցման համար ծախսվել է ներդրման կապիտալ միջոցների միայն 21—24 տոկոսը։ Սխալ պլանավորման և նյութատեխնիկական բազան անբավարար հիմնավորելու հետևանքով անցյալ տարի կոլտնտեսությունները կուլտուրական օբյեկտների շինարարությանը կարողացան հատկացնել կապիտալ ներդրումների միայն 8,5 տոկոսը։

Առանձին շրջաններում ու կոլտնտեսություններում դրությունն ավելի վատ է։ Ապարանի արտադրական վարչության բոլոր կոլտնտեսությունները 1960—1961 թվականներին կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման համար ծախսել են 4—12 հազար ռուբլի, իսկ 1962 թվականին միայն 3 կոլտնտեսություններում այդ նպատակի համար նախատեսված էր ծախսել 55 հազար ռուբլի, մինչդեռ նրանք այդքան միջոց չունեն այդ նպատակի համար։

Ղուկասյանի արտադրական վարչության Թորոս գյուղի կոլտնտեսության կապիտալ ներդրումների փոնդը տարեկան կազմում է ընդամենը 25—30 հազար ռուբլի, այնինչ 1962 թվականին միայն դպրոցների շինարարության համար նախատեսված էր ծախսել 30 հազար ռուբլի։ Իսկ թե ինչ միջոցներից պետք է դպրոցա-շինարարություն կատարեին հայտնի չէր, որովհետև կոլտնտեսությունն անցյալ տարիներից կուտակած ոչ մի միջոց չուներ։ Նույնը Ալավերդու արտադրական վարչության Ջիլիզա գյուղի կոլտնտեսությունը։ Նրա տարեկան դրամական եկամուտը կազմում է 15 հազար ռուբլի, մինչդեռ նախատեսված է 1963 թվականին դպրոցի շինարարության համար ծախսել 10 հազար ռուբլի։ Այսպիսով իր ռեալ հնարավորություններից ելնելով՝ այդ կոլտնտեսությունը 2—3 տարի ոչ մի այլ նպատակի համար կապիտալ ներդրում չպետք է կատարի, որպեսզի կարողանա 10 հազար ռուբլի կուտակել դպրոցի շինարարության համար։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1962 թվականին պլանավորել էին ճանապարհաշինարարության վրա ծախսել 2376 հազար ռուբլի, կամ կապիտալ ներդրումների 23 տոկոսը. մինչդեռ անցյալ տարիների փորձը ցույց է տվել, որ նրանք այդպիսի հնարավորություն չունեն և իրոք նրանք թերակատարեցին ճանապարհաշինարարության պլանները, անհրաժեշտ քանակի դրամական միջոցներ չունենալու հետևանքով։

Աշտարակի արտադրական վարչության Գոմթ գյուղի կոլտնտեսության տարեկան դրամական եկամուտը կազմում է 27—30 հազար ռուբլի, կոլտնտեսությունը պլանավորել էր 1962 թվականին կառուցել ոչխարանոց, թռչնանոց, գարաժ և խոզանոց, այն դեպքում, երբ միայն խոզանոցի նախահաշվային արժեքը կազմում է 30—32 հազար ռուբլի։

Կապիտալ ներդրումների գծով կատարվող ծախսերի դինամիկան ցույց է տալիս որ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները բոլոր տեսակի կապիտալ շինարարությունների համար տարեկան ծախսում են անբաժանելի ֆոնդի լրացման համար առանձնացված դրամական միջոցների 27 տոկոսը, այնինչ Բասարգեչարի արտադրական վարչության կոլտնտեսությունները նախատեսել են 1963 թ. միայն էլեկտրական լուսավորության համար ծախսել կապիտալ ներդրումների մոտ 70—75 տոկոսը, իսկ առանձին կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացիայի համար նախատեսված ծախսերը մի քանի անգամ գերազանցում են նրանց փաստացի միջոցներից։ Իհարկե, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացումը խիստ կարևոր է, բայց որպեսզի այն հաջող ընթանա և ժամանակին կատարվի, անհրաժեշտ է պլանավորել ռեալ հնարավորություններից ելնելով և ունեցած դրամական միջոցները հաշվի առնելով։

Պետական բանկը կոլտնտեսությունների կապիտալ շինարարությունների համար մեծ գումարի երկարատև վարկեր է տրամադրում։ Բավական է նշել, որ միայն 1963 թվականին անասնապահական օբյեկտների կառուցման համար հատկացված է վարկերի 38 տոկոսը։ Վարկերը տրամադրելիս բանկն, առաջին հերթին, ապահովում է փոխանցիկ շինարարությունները։ Նոր օբյեկտների կառուցման համար վարկեր են տրամադրում միայն այն դեպքում, երբ թերավարտ օբյեկտներն ապահովված են լինում դրամական և նյութական միջոցներով։ Սակայն առանձին կոլտնտեսություններ միանգամից սկսում են կառուցել մի քանի օբյեկտներ և միջոցների բացակայության պատճառով դրանք ժամանակին շահագործման չեն հանձնվում, որի հետևանքով լինում է փոխանցիկ շինարարության ծավալի տարեցտարի աճ։

Ժամանակն է, որ արտադրական վարչությունները մոտիկից զբաղվեն կոլտնտեսությունների կապիտալ շինարարությունների պլանավորման աշխատանքով, պլանավորեն այնպիսի օբյեկտների կառուցումը, որոնք հանրային տնտեսության համար անհրաժեշտ են և ապահովված են նյութական ու դրամական միջոցներով։

Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Պետբանկի հայկական գրասենյակի կոլտնտեսությունների վարկավորման բաժնի պետ



# ՄԱՐՏԵՐԻ ԲՈՎՈՎ

(Հաղպատի պարտիական կազմակերպության հիմնադրման 60-ամյակի առթիվ)

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

Ռևոլյուցիոն մարտերի ու փորձությունների արշալույսին, պատմական վիրխարի իրադարձություններով հարուստ XX դարի սկզբին ծնունդ առավ Հայաստանի բոլշևիկյան հնագույն կազմակերպություններից մեկը՝ Հաղպատի կոմբջիջը: Այն ժամանակվա Հայաստանի իրականության խավար երկնակամարում առկայծող փոքրաթիվ աստղերից մեկն էր բոլշևիկների Հաղպատի կազմակերպությունը, որն իր գոյության առաջին իսկ օրվանից ցուցաբերեց ժողովրդի շահերին ծառայելու իր անսահման նվիրվածությունն ու պատրաստակամությունը: Թե՛ 1905—1907 թթ. և թե Հոկտեմբերյան ռևոլյուցիաների շրջանում, ինչպես նաև Անդրկովկասում ու Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար մղվող մարտերում, սոցիալիստական շինարարության տարիներին իրենց փառով պսակեցին Հաղպատի կոմունիստները:

Հաղպատի կոմբջջի առաջացման ու գործունեության տարեգրությունն անխզելիորեն կապված է Անդրկովկասի առաջին մասսայական ռևոլյուցիոն շարժումների և լենինյան իսկրայական առաջին կազմակերպությունների պատմության հետ:

Մարքսիզմը Հայաստան թափանցեց Ռուսաստանից Կովկաս աքսորված մարքսիստների, Ռուսաստանում և արտասահմանում ուսանող մարքսիստ երիտասարդների ու բանվորների միջոցով, ռուսական ռևոլյուցիոն ու բանվորական շարժումների անմիջական ազդեցությամբ: Հայաստանում առաջին մարքսիստական խմբակը ստեղծվեց 1899 թվականին Ջալալ-օղլիում (Ստեփանավան), Լենինի հավատարիմ աշակերտ Ստ. Շահումյանի ղեկավարությամբ:

XX դարի սկզբներին ամբողջ Կովկասում ու Հայաստանում ստեղծվել էր այնպիսի իրադրություն, երբ երկրամասում արդեն առկա էին մարքսիզմի հետագա տարածման և ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջացման համար անհրաժեշտ բոլոր պայմանները: Այդ շրջանում արագորեն տարածվում էր լենինյան Իսկրայի ազդեցությունը. Իսկրան թափանցում էր Անդրկովկաս, հատկապես, բանվորական շրջաններ, ինչպես Երևան, Ալեքսանդրապոլ, Լոռի և այլուր: Մեկը մյուսի հետևից իսկրայական էին դառնում Անդրկովկասի մարքսիստական սոցիալ-դեմոկրատական խմբերն ու կազմակերպությունները:

1901—1903 թթ. լենինյան իսկրայական կազմակերպություններ ստեղծվեցին Երևանում (1901 թ.), Ալեքսանդրապոլում (1901 թ.) ու նրա կայազորում (1902 թ.): Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ա. Զուրաբյանի և այլոց ջանքերով 1902 թ. Թիֆլիսում ստեղծվեց Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը, որը շուտով սկսեց հրատարակել իր տպագիր օրգանը՝ Պրոլետարիատ թերթը: Այս բոլոր խմբակները կապված էին ՌՍԴԲՊ տեղական կոմիտեների



հետ և գործում էին նրանց օգնությամբ: Իսկ Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը, որի երևան գալը և հրատարակած մանիֆեստը Իսկրայի էջերում ողջունել էր Վ. Ի. Լենինը, հետագայում ձուլվեց ՌՍԴԲՊ Թիֆլիսի կոմիտեին:

ՌՍԴԲՊ կովկասյան միության ու նրա կոմիտեի ձևավորումից (1903 թ. մարտ) հետո ավելի ուժեղացավ և ավելի կազմակերպված բնույթ ընդունեց Անդրկովկասի ու Հայաստանի լենինյան իսկրայական կազմակերպությունների գործունեությունը: Միության ղեկավարությամբ ու նախաձեռնությամբ ստեղծվեցին լենինյան իսկրայական բազմաթիվ նոր կազմակերպություններ, այդ թվում և ՌՍԴԲՊ Հաղպատի կազմակերպությունը:

Երկրում ծավալվող ռևոլյուցիոն շարժումների հորձանուտի մեջ էր մտել նաև Հաղպատը, որի կեղեքվող, երբեմնի անտառունչ աշխատավոր գյուղացիությունն արդեն սկսել էր պայքարել իր ազատության համար: Հայտնի է, որ Հաղպատի գյուղացիների մի որոշ մասը դեռ անցյալ դարի վերջերին օրվա հաց վաստակելու համար աշխատում էր Ալավերդու պղնձահանքերում ու գործարաններում, մի որոշ մասն էլ՝ Երկաթուղում: Այստեղ էլ հենց նրանք առաջին անգամ Լոռի թափանցած ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատների միջոցով ծանոթացան մարքսիզմին, սկսեցին գիտակցել իրենց շահերը և ըմբոստացան տիրող կարգերի դեմ: Հենց այդ բանվորների միջոցով էլ ազատության գաղափարները թափանցեցին Հաղպատ և արթնացրին իրենց վշտերի ու տառապանքի բեռի տակ կքած աշխատավոր գյուղացիներին: Այդ գործում խոշոր ծառայություններ մատուցեցին Ստ. Շահումյանը, նշանավոր բանվոր ռևոլյուցիոներներ Մելիք Մելիքյանը (Դեդուշկա) և Աստուր Կախոյանը: Վերջինս բնիկ հաղպատցի էր և ամեն անգամ գալով իր հարազատ գյուղը, զրույցներ էր ունենում գյուղացիների հետ, օգնում նրանց՝ ըմբռնելու իրենց շահերը:

Այդ ժամանակ Հաղպատում արդեն կար տիրող կարգերից դժգոհ երիտասարդ գյուղացիների մի փոքրիկ խումբ, որը ծարավ էր ազատության և ռևոլյուցիոն գաղափարների: Շփվելով երկաթուղային և պղնձագործ բանվորների ու նրանց պայքարի կոչող ռևոլյուցիոներների հետ, այդ երիտասարդները աշխատում էին ընդօրինակել նրանց և օգնել գյուղացիությանը՝ ազատվելու կալվածատիրական շահագործումից և ֆեոդալական իրավազուրկ վիճակից: Այդ երիտասարդներից էին՝ Մարտիրոս Թանդիլյանը, Սիմոն Իսրայելյանը, Սայադ Շամբարյանը, Արզուման Սոխակյանը, Եգոր Մաթևոսյանը և ուրիշներ, որոնք կապեր էին հաստատել ՌՍԴԲՊ Թիֆլիսի կազմակերպության հետ:

1903 թ. գարնանը նրանք գյուղացիներին դրդեցին պայքարի դուրս գալ կալվածատեր Բարաթովի կամայականությունների դեմ, հետագա գործողությունները միասնական ու կազմակերպված դարձնելու նպատակով դիմեցին ՌՍԴԲՊ կովկասյան միության օգնությանը: Այդ նպատակով ապստամբ գյուղացիները իրենց երեք ներկայացուցիչներին՝ Սիմոն Իսրայելյանին, Մարտիրոս Թանդիլյանին և Արզուման Սոխակյանին ուղարկեցին Թիֆլիս, որտեղ նրանք կապվեցին ՌՍԴԲՊ կովկասյան միութենական կոմիտեի հետ, պատմեցին Հաղպատի իրադարձությունների, իրենց գալու նպատակների մասին, ապա խնդրեցին կոմիտեին՝ պրոպագանդիստ ուղարկել Հաղպատ՝ տեղում անհրաժեշտ աշխատանք տանելու ու ռևոլյուցիոն գյուղացիությանը կազմակերպելու համար: Շուտով, հունիսի սկզբներին, Հաղպատ եկան անվանի ռևոլյուցիոն-մարքսիստներ Մելիք Մելիքյանը (Դեդուշկա) և Աստուր Կախոյանը:

Կապվելով տեղի ռևոլյուցիոն տրամադրությամբ համակված երիտասարդ գյուղացիների հետ, նրանք 1903 թ. ամռանը հիմնադրեցին ՌՍԴԲՊ Հաղպատի կազմակերպությունը: Կազմակերպության հիմնադիր անդամներից էին՝ Մարտիրոս Թանդիլյանը, Սիմոն Իսրայելյանը, Սայադ Շամբարյանը, Եգոր Մաթևոսյանը, Արզուման Սոխակյանը և ուրիշներ: Դրանից կարճ ժամանակ անցնելուց հետո կազմակերպություն մտան Սիմոն Էվոյանը, Արզուման Փիրուզյանը, Արամ Կախոյանը և ուրիշներ, որոնք զգալի դեր կատարեցին կազմակերպության հետագա ամրապնդման գործում:

Այսպես է ստեղծվել Անդրկովկասի ու Հայաստանի կոմունիստական հնա-

գույն կազմակերպություններից մեկը՝ Հաղպատի կոմբջիջը, որի քսանամյա հոբելյանը ՀԿՊ կենտկոմի որոշմամբ տոնվեց 1923 թ. հունիսի 10-ին*):

ՌՍԴԲՊ II համագումարից հետո, Անդրկովկասի ու Հայաստանի լենինյան իսկրայական կազմակերպություններն ավելի ամրացան: Քննարկելով այդ համագումարի որոշումները, նրանք մեկը մյուսի հետևից ողջունեցին նրա լենինյան որոշումները և կանգնեցին բոլշևիզմի դիրքերում: Հայաստանի իսկրայական կազմակերպությունների մեծ մասը, այդ թվում և Հաղպատի կազմակերպությունը կանգնեց Լենինի կողմը և մնաց բոլշևիզմի դիրքերում:

ՌՍԴԲՊ բոլշևիկների Հաղպատի կազմակերպությունը շուտով մասսայական բացատրական լուրջ գործունեություն ծավալեց կալվածատերերի ու ցարական իշխանության կամայականություններից զայրացած գյուղացիության շրջանում: 1903 թ. ամռանը և աշնան սկզբներին, Հաղպատում նա գլխավորեց ցարի հունիսի 12-ի օրենքի դեմ ուղղված գյուղացիական մասսայական հուզումները և կալվածատեր Բարաքովի դեմ նույն թվականի ուշ աշնանը բռնկված նոր ապստամբությունը:

1903 թ. նոյեմբերի 8-ին գավառային իշխանության ղեկավարները մի խումբ ոստիկանների, ստրաժնիկների և կոզակային մի ջոկատի ուղեկցությամբ մտան Հաղպատ: Այս անգամ, Հաղպատի կազմակերպության ակտիվ գործունեության շնորհիվ գյուղացիներն ավելի կազմակերպված ելույթ ունեցան: Երբ գյուղ եկած այդ անկոչ հյուրերը դատական և գավառային պրիստավի գլխավորությամբ գյուղացիներից պահանջեցին վճարել ընթացիկ տարվա կապալավարձն ու նախորդ տարվա պարտքը՝ մոտ 5000 ռուբլի գումարի չափով, գյուղացիները մերժեցին. Երբ նրանք բռնությամբ սկսեցին վերցնել գյուղացիների ունեցվածքը և փորձեցին սարերից ու գյուղից քշել նրանց անասուններն՝ շուկայում վաճառելու նպատակով, այն ժամանակ բոլորովին սպառվեց գյուղացիների համբերությունը: Նրանք ո՛չ միայն հրաժարվեցին տալ իրենց գույքն ու անասունները, այլև զինված քարերով ու դագանակներով՝ հարձակ-

*) Բարձր գնահատելով Հաղպատի կոմբջջի ծառայությունները և գործունեության առանձին դրվագներ, Ասք. Մռավյանը 1923 թ. Խորհրդային Հայաստան թերթում հրատարակած «Հաղպատի կոմբջիջը» խորագիրը կրող հոդվածում գրում էր. «Հաղպատի կոմբջիջը քսանամյա իր կյանքում հեղափոխության արթուն պահակն է եղել Լոռվա լեռներում, Հաղպատի կոմբջիջը Հայաստանի կոմունիստական կուսակցության ամենահին բջիջն է (ընդգծումը մերն է — Վ. Ն.): Նրա անունը ոսկե տառերով է գրված Հայաստանի բանվորա-գյուղացիական պատմության մեջ»: Շատ բարձր է գնահատել Ասք. Մռավյանը Հաղպատի կազմակերպության աշխատանքը: Սակայն 1923 թվականից մինչև այսօր սովետական պատմագրության ձեռք բերած նվաճումներն այժմ մեզ թույլ են տալիս մի փոքր այլ ձևով դնելու Հաղպատի կազմակերպության առաջացման ժամանակի հարցը: Ավելի լավ կլինի ասել, Հաղպատի կոմբջիջը Հայաստանի կոմպարտիայի ամենահին բջիջներից մեկն է, ավելի ճիշտ՝ ՌՍԴԲՊ Անդրկովկասի ու Հայաստանի հնագույն կազմակերպություններից, լենինյան-իսկրայական առաջին կազմակերպություններից մեկը: Եվ այդ հասկանալի է, մանավանդ, որ Հայաստանում Հաղպատի կազմակերպություններից առաջ նրա նման ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական խմբեր էին ստեղծվել Երևանում (1901 թ.), Ալեքսանդրապոլում ու նրա կայազորի զինվորների մեջ (1901—1902 թթ.), Ջալալօղլիում (որի մարքսիստական խումբը 1901—03 թթ. լուրջ ուժ էր դարձել) և այլն: Նկատենք, որ այդ բոլոր խմբերն էլ լենինյան իսկրայական կազմակերպություններ էին, որոնք կապված էին ՌՍԴԲՊ Թիֆլիսի, Բաքվի և այլ կոմիտեների հետ, հաղորդակից էին լենինյան Իսկրային և իսկրայական ուղղության գրականությանը: Ուստի առանձին աշխատություններում տեղ գտած այն պնդումը, թե իբր Հաղպատի կազմակերպությունը Հայաստանի ամենահին կոմբջիջն է, նրա հիմնադիրը միայն Մելիք Մելիքյանն է, իսկ Աստուր Կախոյանը նրա սոսկ աջակիցը, ճիշտ չէ: Իրականում այդ կազմակերպության պաշտոնական հիմնադիրներն են Մելիք Մելիքյանը (Դեդուշկա) և Աստուր Կախոյանը: Հաղպատի կազմակերպությունը ՌՍԴԲՊ կովկասյան միութենական կոմիտեի գիտությամբ ու նրա ներկայացուցիչների անմիջական ղեկավարությամբ ստեղծված առաջին պարտիական կազմակերպությունն է, որը դառնում է ՌՍԴԲՊ Կովկասի բոլշևիկյան կազմակերպության բջիջներից մեկը, սերտորեն կապվում ՌՍԴԲՊ Թիֆլիսի կոմիտեի հետ, ղեկավարություն է ստանում կոմիտեից, ինչպես նաև Կովկասյան միութենական կոմիտեից:



վեցին պրիստավների ու նրանց ուղեկցող զինված ուժերի վրա և դուրս քշեցին գյուղից: Տեղի ունեցավ արյունալի ընդհարում գյուղացիների և իշխանության զինված ուժերի միջև: Կոզակների ու ստրաժնիկների համազարկերից սպանվեցին 5, վիրավորվեցին 3 գյուղացիներ: Սակայն զայրացած գյուղացիները չըհանձնվեցին: Նրանք շարունակեցին դիմադրություն ցույց տալ այդ գազազած կողոպտիչներին: Գյուղացիների դիմադրությունը ճնշվեց միայն նոյեմբերի 11-ին, այն բանից հետո, երբ գավառի իշխանություններին հաջողվեց կոզակների լրացուցիչ մի հարյուրյակ և ոստիկանական նոր ուժեր ուղարկել այնտեղ: Մոտ 200 գյուղացու ձերբակալելուց և 14 հոգու Մետեխի բանտն ուղարկելուց հետո կատաղած ոստիկաններն ու կոզակները դաժան հաշվեհարդար տեսան մնացածների հետ, խլելով նրանց գույքը, թալանելով կանանց զարդերը, անասելի ծեծի ու անարգանքի ենթարկելով գյուղացիներին: Մոտ երկու շաբաթ էկզեկուցիա էր Հաղպատում... Նրանց հաջողվեց վերցնել գյուղացիների ունեցվածքը և կատարել կալվածատեր Բարաքովի բոլոր պահանջները: Պարտվեց հաղպատցիների այդ ռևոլյուցիոն մարտական ելույթը: Սակայն այն ուժեղ ազդեցություն գործեց գավառի գյուղացիների վրա, բարձրացրեց նրանց մարտական ոգին և ռևոլյուցիոն պայքարի վառ օրինակ դարձավ նրանց համար:

Ռուսական առաջին ռևոլյուցիայի սկզբներին երկրամասում ծավալվող բանվորա-գյուղացիական շարժումների հենց նախօրյակին, բոլշևիկների Անդրկովկասյան կենտրոնից Հայաստան և Լոռի գործուղված ընկերների՝ Ստ. Շահումյանի, Մ. Մելիքյանի, Ա. Կախոյանի և ուրիշների ղեկավարությամբ ու օգնությամբ վերականգնվեցին արդեն քայքայված կամ խիստ թուլացած բոլշևիկյան կազմակերպությունները, ստեղծվեցին նորերը, բարելավվեց կենտրոնի ու տեղերի բոլշևիկյան կազմակերպությունների փոխադարձ կապը:

1905 թ. գարնանը Ստ. Շահումյանը գալիս է Լոռի, օգնում գավառի բոլշևիկյան կազմակերպությունների աշխատանքի վերակառուցմանը: Հաղպատում նրա ղեկավարությամբ տեղի ունեցավ գավառի բոլշևիկների խորհրդակցություն, որտեղ ընտրվեց գավառային կոմիտե, որի մեջ մտան Աս. Կախոյանը, Ս. Էվոյանը և ուրիշներ: Ստ. Շահումյանի ղեկավարությամբ Հաղպատի կազմակերպությունը ևս ընտրեց կոմիտե. որոշեց կատարել մայիսյան տոնակատարությունը և իր ներկայացուցիչներն ուղարկեց Ալավերդի՝ բանվորների մայիսյան ցույցին մասնակցելու: Տոնակատարությունն անցկացվեց Մանեսի գործարանի հրապարակում, որտեղ ելույթ ունեցան Ստ. Շահումյանը, բանվոր բոլշևիկ, հաղպատցի Սերգո Փիրուզյանը և ուրիշներ: Հաղպատի բոլշևիկների կապերը իրենց երկրամասային կենտրոնի հետ ավելի ամրացան, ստացվեցին մեծ քանակությամբ բոլշևիկյան թռուցիկներ, գրքեր ու բրոշյուրներ, որոնք տարածվեցին ոչ միայն Հաղպատի, այլև շրջակա գյուղերի աշխատավորության շրջանում: Շուտով Հայաստան թափանցեցին նաև ՌՍԴԲՊ III համագումարի որոշումները, հատկապես Կովկասի գյուղացիական շարժումների վերաբերյալ որոշումները, որոնք մեծապես օգնեցին տեղական կազմակերպությունների գործունեության հետագա ուժեղացմանը: Բոլշևիկների կոչով Լոռվա գյուղերի, հատկապես Հաղպատ, Սանահին, Որնակ (Ակներ) և այլ գյուղերի գյուղացիները կալվածատերերին ու տեղական իշխանություններին ստիպեցին նահանջել և տնտեսական ու քաղաքական զիջումների դիմել: Հաղպատի գյուղացիները, բոլշևիկների ղեկավարությամբ 1905 թ. սկզբներին արդեն կալվածատիրոջ դեմ գործադրում էին բոյկոտի տակտիկան, հրաժարվում նրա համար աշխատելուց, բռնագրավում և օգտագործում էին կալվածատիրոջ հողերի ու արոտավայրերի մի մասը, հրաժարվում կալվածատիրոջ ու պետության կողմից իրենց վրա դրված բազմաթիվ պարտավորություններից, հարկեր վճարելուց, երբեմն հրդեհում ու փչացնում կալվածատիրական ունեցվածքը և այլն:

Հաղպատի բոլշևիկների ազդեցությունը խիստ մեծացել էր: Նրանց ղեկավարությամբ գյուղացիները ռևոլյուցիայի առաջին իսկ օրերից փաստորեն իրենց ձեռքն էին վերցրել գյուղի իշխանությունը: 1905 թ. կեսերին Հաղպատում արդեն ձևավորվել էր գյուղացիների կողմից ընտրված մի կոմիտե, որը փաստորեն կատարում էր տեղական իշխանության ֆունկցիաները:

ռևոլյուցիոն կառավարությունները, պարտիական գործունեության համար պայմանները դարձան խիստ անբարենպաստ:

Սակայն նույնիսկ դաշնակների ու նրանց օտարերկրյա տերերի արյունոտ ռեժիմի շրջանում Հաղպատի բոլշևիկները չթուլացրին սովետական իշխանության համար մղվող պայքարը:

1919—21 թթ. Լոռու և Հաղպատի գյուղացիները մղձավանջային օրեր էին ապրում դաշնակների և մենշևիկների, ինչպես նաև անգլո-ամերիկյան օկուպանտների համատեղ տիրապետության շրջանում, երբ վերջիններիս կամքով Լոռին դարձել էր, այսպես կոչված, Չ ե զ ո ք  գ ո տ ի:

Մայիսյան ապստամբությունից հետո Լոռու և Հաղպատի բոլշևիկներն սկսեցին ակտիվ նախապատրաստվել՝ Չեզոք գոտում տիրող ռեժիմը տապալելու: Այդ նպատակով նրանք ստեղծեցին զինված ջոկատներ, կուտակեցին զենք ու զինամթերք: Լոռի եկան պարտիական ղեկավար գործիչներ: Այդ գործի հաջող նախապատրաստմանը նպաստեց Բաքվում 1920 թ. սեպտեմբերին հրավիրված Արևելքի ժողովուրդների համագումարը, որին մասնակցում էին նաև Հաղպատի ներկայացուցիչները: Համագումարի Լոռու դելեգատներն ընդամենը 15 հոգի էին, որոնք ընտրվել էին 1920 թ. հուլիսին, Հաղպատում տեղի ունեցած գավառային ընդհատակյա կոնֆերանսներում: Դելեգատների թվում էին՝ Ս.ս. Կախոյանը, Երվանդ Միկոյանը, Սիմոն Խուրայելյանը, Եգոր Մաթևոսյանը, Բագրատ Ալիխանյանը, Սայադ Շամբարյանը, Սարգիս Խուրայելյանը, Պյոտր Բոլոտնիկովը, Գրիշա Առուստամյանը և ուրիշներ: Համագումարի հաղպատցի դելեգատների մասին Ասք. Մռավյանն ասում է. «Պատռելով դաշնակցական սահմանապահ գործի շղթան, հաղպատցիները Աստուրի առաջնորդությամբ գալիս են Բաքու ճնշվածների համագումարին Հայաստանի գյուղացու կոչը հնչեցնելու»: Բաքվում հանդիպումներ ունենալով Ս. Մ. Կիրովի, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ա. Միկոյանի հետ, Լոռու և Հաղպատի դելեգատները հրահանգներ և խորհուրդներ են ստանում Չ ե զ ո ք  գ ո տ ո ւ ազատագրման մասին:

Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո, ավելի ռեալ հիմքերի վրա դրվեց Չ ե զ ո ք  գ ո տ ո ւ ազատագրության հարցը: ՌԿԿ(բ) Կովկասյան բյուրոյի և ՀԿԿ Կենտկոմի ու ՀՍՍՌ կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ Չեզոք գոտու զինված ապստամբության նախապատրաստական աշխատանքներն ավարտվեցին 1921 թ. փետրվարի 11-ին, իսկ նույն ամսի 12—16-ը Լոռին դարձավ սովետական: Լոռու աշխատավորությունն ազատագրվեց իրեն կեղեքողների դարավոր ճնշումից:

Հաղպատի բոլշևիկներն ակտիվ մասնակցեցին այդ հաղթական ապստամբությանը: 1921 թ. փետրվարի 6-ին նրանք մասնակցեցին Լոռու բոլշևիկների խորհրդակցությանը, որտեղ քննվեց զինված ապստամբության կոնկրետ պլանը, ընտրվեց Ալավերդու շրջանային ռևկոմ և նրա շրջակա ավելի քան քսան գյուղերի ռևկոմների կազմը, որոշվեց դիմել Բարանայի շրջանային կոմիտեին՝ Ղազախից զինված պարտիզանական ջոկատներ ուղարկել Լոռի՝ ապստամբ աշխատավորությանը օգնելու նպատակով: Խորհրդակցությունում Ալավերդու շրջանային ռևկոմի կազմում ընտրվեցին՝ Սիմոն Էվոյանը (նախագահ), Մելիք Ալիխանյանը, Գրիշա Քարյանը, իսկ Հաղպատի ռևկոմի կազմում՝ Սայադ Շամբարյանը, Արամայիս Պարանյանը և Արզուման Փիրուզյանը:

Հաղպատի 140 հոգուց բաղկացած պարտիզանական զինված ջոկատն արդեն կազմ ու պատրաստ էր, երբ նրան օգնության հասան Ղազախից եկած մոտ 100 զինված պարտիզաններ: Փետրվարի 11-ի լույս 12-ի գիշերը սկսվեց Լոռու զինված ապստամբությունը: Հաղպատի պարտիզանները Ղազախի և հարևան Որնակ գյուղի պարտիզանների օգնությամբ շեշտակի գրոհով կոտորեցին գյուղում գտնվող ավելի քան երեք հարյուր հոգուց բաղկացած մենշևիկյան կայազորի դիմադրությունը և ազատագրեցին գյուղը: Այնուհետև հետապնդելով թշնամուն, նրանք օգնության հասան Ալավերդու, Բորչալուի և մյուս գյուղերի հայ, ադրբեջանցի, վրացի աշխատավորությանը՝ թոթափելու մենշևիկների լուծը:

Այսպիսով, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար Հաղպատի բոլշևիկյան կազմակերպության մղած երկարատև պայքարը պսակվեց



հաղթանակով: Սովետական իշխանությունն ազատություն բերեց Հաղպատի աշխատավորությանը, որն իր փառապանծ կոմբջջի ղեկավարությամբ մեծ սխրանքներ կատարեց նաև սոցիալիզմի կառուցման շրջանում:

Հաղպատի կոմբջիջը, Ասք. Մռավյանի արտահայտությամբ, հեղափոխության արթուն պահակն էր Լոռվա լեռներում, իսկ սովետական իշխանության տարիներին նա շարունակեց ընթանալ Լոռվա բոլշևիկյան կազմակերպությունների առաջին շարքերում: Կ ա ր մ ի ր  Հ ա ղ պ ա տ ը դասակարգային թշնամու դեմ մղվող պայքարում, գյուղի սոցիալիստական վերակառուցման, երկրի ինդուստրացման և կուլտուրական ռևոլյուցիայի վիթխարի խնդիրների իրականացման գործում դարձյալ օրինակ էր հանդիսանում գավառի գյուղացիության համար:

Այժմ Հաղպատը սոցիալիստական ծաղկող և բարեկարգ գյուղ է, իսկ պարտիական սկզբնական կազմակերպությունը հաջողությամբ գլխավորում է կոմունիզմ կառուցող հաղպատցիների աշխատանքային սխրագործությունները:

Շատ բանով է փոխվել պատմական Գուգարաց աշխարհի վաղեմի գեղեցկուհին՝ կարմիր Հաղպատը: Իզուր չի անցել երջանիկ, կոմունիստական ապագայի համար պայքարող նրա քաջարի զավակների առատորեն թափած արյունը: Սովետական կենարար արևի տակ, անցած ավելի քան չորս տասնամյակի ընթացքում Հաղպատը դարձել է սոցիալիստական բարեկարգ գյուղ: Հաղպատցին դուրս է եկել երբեմնի աղքատիկ, անշուք հյուղակներից ու խրճիթներից և կառուցել նոր, քարակերտ, լուսավոր ու գեղեցիկ բնակարաններ: Միայն վերջին հինգ տարում Հաղպատում կառուցվել է ավելի քան քառասուն բարեկեցիկ բնակարան: Գնալով փոխվում է գյուղի արտաքին տեսքը: Գյուղը ծածկված է նորանոր այգիներով ու բուրաստաններով, հարուստ է կուլտուր-կրթական հաստատություններով, ունի իր ութամյա դպրոցը, գրադարանը, ակումբը, կինոկետը: Բոլոր դպրոցահասակ երեխաները հաճախում են դպրոց. շատ վաղուց գյուղում վերացված է անգրագիտությունը: Հաղպատն այսօր ունի իր էլեկտրաղացը, հացի փուռը, բաղնիքը, խանութը, կոշկի արհեստանոցը, ինչպես նաև բուժմանկաբարձական կետը: 172 տնտեսությունից բաղկացած այդ գյուղի բոլոր բնակարաններում էլ կան ռադիոընդունիչներ կամ ռադիոբարձրախոսներ. բոլոր տներում և հասարակական ու արտադրական շենքերում վառվում են Իլյիչի լամպերը:

Հաղպատում կառուցվել է ռևոլյուցիոն մարտերում զոհված գյուղացիների հիշատակին նվիրված աղբյուր-հուշարձան, որն այսօրվա հաղպատցիների սիրո ու երախտագիտության արտահայտությունն է իրենց քաջարի նախորդների նկատմամբ: Հաղպատն ունի նաև ռևոլյուցիայի թանգարան, որտեղ ուշագրավ փաստաթղթեր ու տեղեկություններ են պահպանվում տեղի բոլշևիկյան կազմակերպության ու նշանավոր ռևոլյուցիոներների կյանքի ու գործունեության մասին: Այնտեղ է պահվում նաև այն թավշյա կարմիր դրոշակը, որը ՀԿԿ Կենտկոմի կողմից 1923 թ. աշնանը հանձնվեց Հաղպատի կոմունիստական կազմակերպությանը նրա քսանամյակի առթիվ:

Հաղպատը տվել է շատ արժանավոր զավակներ, որոնց մի մասն իր կյանքը չխնայեց ժողովրդի ազատագրության, սոցիալիզմի ու կոմունիզմի համար մղվող մեծ պայքարում, մյուս մասն այժմ սխրանքներ է գործում կոմունիստական շինարարության տարբեր ճակատներում:

Հաղպատն այսօր ապրում է իր բուռն տնտեսական, քաղաքական ու կուլտուրական վերելքը: Թող դարեր ապրեն Հաղպատի կոմբջջի պայծառ անունն ու նրա կատարած անմահ գործերը:



# ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ



## ԱՌԱՋԱՎՈՐ ԲՆԱԳԾՈՒՄ

— Ո՞վ է ձեր գործարանի ամենաառաջավորը,— իմ հարցին անմիջապես չպատասխանեց պարտբյուրոյի քարտուղար Գրիգոր Մարկոսյանը։ Բայց մի պահ խորհելուց հետո նա ասաց.

— Մեզ մոտ առաջավորներ շատ կան, դժվարանում եմ ընտրություն կատարել։ Զգիտեմ դրանցից ում տալ առաջնությունը։ Օրինակ, խառատ Դրաստամատ Թադևոսյանը, փականագործ Խաչիկ Էմիկսեզյանը, նրանց հետ հավասար քայլում են Ռաֆիկ Բաղդասարյանն ու Օնիկ Իգիթյանը և ուրիշներ։

Այո՛, Լենինականի դարբնոցամամլիչային սարքերի գործարանում շատ-շատերն են արտադրության առաջավորներ. համերաշխ, ստեղծագործական աշխատանքով նրանք ձգտում են ավելի լավ, կատարյալ ու բարձր արտադրողականությամբ սարքեր տալ երկրին՝ ի փառս հայրենական մեքենաշինության։

Ձեռնարկության արտադրական բաժնի պետ ընկ. Վահան Գյուրջյանն այսպես բնութագրեց այդ սարքերը։

— Մեր գործարանն արտադրում է 6,3 տոննայից մինչև 25 տոննա ճնշման կարողություն ունեցող կիսավտոմատ մամլիչներ, որոնք մամլում են կեսից մինչև երեք միլիմետր հաստություն ունեցող մետաղներ և դրանց տալիս արտադրության պրոֆիլին համապատասխան դետալների ձև։

Այդ մամլիչները հարկավոր են թե՛ էլեկտրատեխնիկական գործարաններին, թե՛ լայն սպառման առարկաներ արտադրող ձեռնարկություններին և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի։ Դրանց կարողությունն ու օգտավետությունն այնքան մեծ է, առավելությունները շատ, որ դրանց կարիքն զգում են ո՛չ միայն մեր երկրի արդյունաբերական ձեռնարկությունները, այլև հայրենիքի սահմաններից դուրս բազմաթիվ երկրներ։



Պարտբյուրոյի քարտուղարի թված ընկերներից մեկին՝ խառատ Դրաստամատ Թադևոսյանին, ես հանդիպեցի գործիքաշինական ցեխում. նա աշխատում էր կատարել հերթական առաջադրանքը։ Փայլուն մետաղի կտորը ձեռքին շուռ ու մուռ էր տալիս, չափում՝ դրանից գործիք պատրաստելու համար։

Թադևոսյանը գործարան է մտել պատանի հասակում, տասնչորս տարին նոր բոլորած, որպես խառատի աշակերտ։ Նրա առաջին վարպետը, աշխատանքային դաստիարակը եղել է խառատ Պյոտր Տիտովը, որին այժմ էլ երախտագիտությամբ է հիշում Դրաստամատը։ Այդ ժամանակաշրջանում մեր երկրի վրա սև ամպեր էին կուտակվել, Սովետական Միությունն ապրում էր ծանր օրեր։ Ռազմաճակատում Կարմիր բանակը արիաբար մարտնչում էր ֆաշիստական ոսոխի դեմ՝ մեր հայրենիքի ազատությունն ու պատիվը պաշտպանելու համար։

Ամե՛ն ինչ ռազմաճակատի համար, ամե՛ն ինչ հաղթանակի համար. պարտիայի այս կոչին արձագանքելով գործարանի մարդիկ աշխատանքային սխրանքներ էին գործում պետական հատուկ պատվերի առաջադրանքներն անթերի կատարելու համար։

— Եվ այդ կատարում էին գլխավորապես կանայք ու աղջիկները,— ասում է բանվորներից մեկը,— նրանք փոխարինում էին պատերազմի դաշտ մեկնած տղամարդկանց, գործելով առանց ջանք ու եռանդ խնայելու։

Պատանի Դրաստամատը, գործարանի բոլոր աշխատողների հետ, իր հայրենասիրական պարտքն էր համարում օգնել վարպետին ո՛չ միայն կատարելու, այլև գերակատարելու օրվա առաջադրանքները։ Հաճախ կիսաքաղց, նույնիսկ ուժասպառ՝ նրանք հաստոցից չէին հեռանում մինչև հարյուր երեսուն, հարյուր հիսուն տոկոսով չկատարեին պլանները։ Խոհեմ աշակերտն ուշադիր ընդօրինակում էր վարպետին, օր-օրի հմտանում գործի մեջ։

Ջանասիրությամբ ու համեստությամբ պատանին շուտով աչքի է ընկնում գործարանում, կոլեկտիվի ժողովներում ղեկավարները հաճախ գովեստով նշում էին նրա անունը և խորհուրդ տալիս մյուսներին հետևել նրա օրինակին։ Գործարանի պատանիներից ու երիտասարդներից շատերը բարի նախանձով էին նայում Դրաստամատին, իրենք էլ ձգտում հմտանալ գործում, լինելով օրինակելի։

Մի անգամ Թադևոսյանն աշխատանքի եկավ խիստ տխուր։ Աշակերտի թախիծը չվրիպեց վարպետի ուշադրությունից։ Ձեռքը դնելով Դրաստամատի ուսին՝ հարցրեց.

— Ի՞նչ է պատահել, որդիս, ինչո՞ւ ես տրտում։

Դրաստամատն իր հուզմունքը չկարողացավ զսպել, նրա այտերի վրայից գլորվելով ցած թափվեցին արցունքի կաթիլները...

— Ինչո՞ւ ես լռում,— շարունակեց վարպետը,— գուցե ձերոնց դժբախտությո՞ւն է պատահել...

— Ռազմաճակատից լուր ենք ստացել, եղբայրս՝ Վազգենը, զոհվել է...

Ցավալի լուրը կսկիծով լցրեց վարպետի սիրտը, հայրաբար գուրգուրելով նրան, նա հառաչանքով ասաց.

— Ոչինչ չես կարող անել, տղա՛ս... պատերազմ է, իսկ պատերազմ նշանակում է զոհաբերություններ, զրկանք ու թշվառություն և այլ չարիքներ...

Այդ օրն աշխատանքի ժամը լրանալուց հետո ինչպես Պյոտրն ու իր աշակերտը, այնպես էլ շատերը ցանկություն հայտնեցին գործը շարունակել՝ ռազմաճակատին լրացուցիչ զինամթերք տալու նպատակով։ Միայն Տիտովն ու Թադևոսյանը պլանից ավելի պատրաստեցին երեսուն դետալ։

Վարպետի ու աշակերտի համար սովորություն դարձավ՝ ամեն օր պլանից ավելի արտադրանք տալը։ Այսպես Պյոտրն ու Դրաստամատը, ինչպես նաև

միլիոնավոր սովետական մարդիկ թիկունքում, իրենց հայրենասիրական գործերով ապահովում էին հաղթանակը ռազմաճակատում։

***

Մեկը մյուսին հաջորդեցին օրեր, ամիսներ ու տարիներ։ Գործարանն անընդհատ ընդարձակվելով փոխեց իր պրոֆիլը, այն լայն սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունից դարձավ արտադրության միջոցներ արտադրող գործարան, Լենինականի ծանր արդյունաբերության օջախներից մեկը, հագեցված նորագույն տեխնիկայով՝ կիսավտոմատ և ավտոմատ հաստոցներով։

Գործարանի հետ աճեց ու կյանքի հատակից վեր բարձրացավ Դրաստամատը։ Նա աճեց ո՛չ միայն տարիքով, այլև գիտելիքներով, խորացավ իր մասնագիտության մեջ։

Նորագույն տեխնիկան, առաջավոր գիտությունը, արտադրության ավտոմատացումն ու մեքենայացումը բանվորից պահանջում են բարձրացնել իր ընդհանուր կրթական մակարդակը, կատարելագործել տեխնիկական գիտելիքները, վարպետորեն տիրապետել իրեն վստահված մեքենայի կամ հաստոցի վարման գործին։ Առանց մաթեմատիկայի, գծագրության, քիմիայի, ֆիզիկայի կանոնները գիտենալու, հնարավոր չէ արտադրության մեջ դրսևորել բոլոր ընդունակություններն ու կարողությունները։ Գիտակցելով այդ՝ Դրաստամատն զգաց, որ իր ունեցած գիտելիքներով (միայն վեցերորդ դասարանի կրթությունը) ինքը չի կարող շարունակել իր առաջընթացը։

Թադևոսյանն ընդունվում է բանվոր երիտասարդության դպրոց։ Ցերեկը հաստոցի մոտ կանգնած նա մետաղ էր տաշում և հղկում, գործիքներ պատրաստում, երեկոյան աշակերտական նստարանին նստած ուշադիր լսում դասատուներին, գրառումներ կատարում տետրում։ Հաջորդ օրվա դասերին պատրաստ ներկայանալու համար Դրաստամատը հաճախ պարապում էր մինչև ուշ գիշեր։ Ինչպես աշխատանքում, այնպես էլ կրթության գործում ուսման ծարավն ու ջանասիրությունն օգնեցին նրան՝ հաջողությամբ ավարտելու միջնակարգ դպրոցը։

Շուտով Թադևոսյանին մենք տեսնում ենք խառատային հաստոցի առջև իբրև վարպետ։ Իսկ երբ բացակայում է գործիքաշինական ցեխի ավագ վարպետը, գործարանի ղեկավարները համոզված լինելով, որ նա հիանալի կկատարի գործը, նրան փոխարինելը վստահում են Թադևոսյանին։

Սկզբում Դրաստամատն աշխատում էր Красный пролетарий գործարանի թողարկած 1—А—62 հաստոցի, իսկ այժմ՝ 1—К—62 հաստոցի վրա։

— Հիանալի հաստոց է,— գոհունակությամբ ասում է վարպետը,— կիսավտոմատ է, մեկ րոպեում մինչև երկու հազար պտույտ է կատարում։ Նախկին հաստոցով մեկ ժամում կարելի էր պատրաստել 6, նորով՝ տասնից-տասներկու դետալ։

Այդ հիանալի հաստոցը Թադևոսյանը մեծ հոգատարությամբ է պահպանում և լրիվ կարողությամբ օգտագործում։ Առավոտյան, երբ նա աշխատանքի է գալիս, մինչև գործն սկսելը զննում է հաստոցը, վերացնում նկատած թերությունները, մաքրում, հետո շարժման մեջ դնում։ Այսպիսի խնամքի շնորհիվ հմուտ վարպետի հաստոցը երբեք պարապ չի կանգնել որևէ մասը փչանալու, կամ հիմնական նորոգման պատճառով։

***

Անընդհատ որոնումներով է զբաղված Թադևոսյանի միտքը։ Նա միշտ ձգտում



է գտնել և օգտագործել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղիներ, ավելացնել արտադրանքի թողարկումը, բարձրացնել որակը։ Գործարանի գյուտարարների և ռացիոնալիզատորների հետ միասին նա արտադրության նորարար է, ամեն ջանք գործադրում է պետական առաջադրանքներն անթերի կատարելու, ձեռնարկության պատիվը բարձր պահելու համար։

Դրաստամատին և ցեխի ավագ վարպետ Հովհաննես Էյրամջյանին խիստ մտահոգում էր խառատային հաստոցների կապիչի բռունցքներ պատրաստելու խնդիրը։ Գործարանը սահմանափակ քանակությամբ էր ստանում կապիչի բռունցքներ և երբ դրանք կոտրվում էին, կամ ուշացումով էին ստացվում, հաստոցները հաճախ պարապուրդ էին տալիս։ Դրանից տուժում էր թե՛ ձեռնարկությունը, թե՛ հաստոցի վրա աշխատող բանվորը։ Մի անգամ ընկերական զրույցի ժամանակ Էյրամջյանն ասաց Թադևոսյանին.

— Ի՞նչ ես կարծում, մենք չե՞նք կարող մեր ցեխում պատրաստել կապիչի բռունցքներ։

— Ես էլ շատ եմ մտածել այդ մասին, վարպետ, թվում է, թե հնարավոր է այդ անել,— պատասխանեց Թադևոսյանը։

Եվ ավագ վարպետն ու բանիմաց խառատը երկար խորհելուց, մանրազնին հաշվարկումներից, ձևել չափելուց հետո համոզվեցին, որ իրենց ցեխում կարելի է պատրաստել կապիչի բռունցքներ։ Նրանց այդ հիանալի նախաձեռնությունը պաշտպանեցին և խրախուսեցին գործարանի պարտիական կազմակերպության բյուրոն ու տեխնիկական ղեկավարությունը։

Էյրամջյանի և Թադևոսյանի մտահղացմամբ պատրաստված բռունցքները սկզբնական շրջանում ունեին որոշ թերություններ։ Բայց այդ չվհատեցրեց նորարարներին, նրանք աստիճանաբար կատարելագործեցին իրենց պատրաստած գործիքը։ Այժմ գործիքաշինական ցեխն իր պատրաստած բռունցքներով լիովին բավարարում է գործարանի պահանջները, որի շնորհիվ խառատային հաստոցները պարապուրդ չեն տալիս, իսկ գործարանը դրանից մեծ օգուտ է ստանում։

Անցյալում, գործարանի հավաքման ցեխում դարբնոցա-մամլիչային սարքերի հավաքումը հաճախ ձգձգվում էր զսպանակների անկանոն մատակարարման պատճառով։ Գործարանի մի խումբ ընկերների, ինչպես և Դրաստամատի ձեռներեցությամբ գործիքաշինական ցեխում սկսեցին պատրաստել զսպանակներ, որոնք իրենց որակով ոչնչով չեն զիջում ուրիշ տեղերից ստացվածներին։

Այսպիսի նորարարություններով և նախաձեռնություններով Թադևոսյանն իր ընկերների հետ միասին գործիքաշինական ցեխում պատրաստել և պատրաստում է բազմատեսակ այդպիսի գործիքներ ու դետալներ, որոնք անցյալում բերվում էին այլ քաղաքներից։ Գործի նկատմամբ նրանց այդ ազնիվ, գիտակից վերաբերմունքը ձեռնարկության արտադրողականության աճի անսպառ աղբյուր է։

***

Կար ժամանակ, որ Դրաստամատն աշակերտ էր և ընդօրինակում էր վարպետ Պյոտրի և արտադրության այլ առաջավորների աշխատասիրությունն ու բնավորության լավագույն գծերը։ Այժմ Թադևոսյանն ինքն է վարպետ, սովորեցնում ու դաստիարակում է աշակերտներ, որոնց աշխատանքային ու բարոյական դաստիարակության համար պատասխանատվությամբ լի մեծ

կորով է գործադրում։ Արտադրության պրոցեսում վարպետը իր կոմունիստական վարքագծով՝ աշխատասիրությամբ, կարգապահությամբ, հանրային ունեցվածքի նկատմամբ ցուցաբերած հոգատարությամբ, համեստությամբ լավագույն հատկություններ է պատվաստում աշակերտների հոգում, ազդում նրանց աշխարհհայացքի վրա։ Աշխատանքից դուրս, հասարակական վայրում էլ, երբ տեսնում է աշակերտներից մեկն ու մեկի սխալ քայլը, անտարբեր չի անցնում, այլ մոտենում է, նախազգուշացնում, խորհուրդ տալիս՝ պարկեշտ լինել։ Թադևոսյանի դաստիարակած խառատներից շատերն այժմ բանում են իրենց գործարանում և քաղաքի արդյունաբերական այլ ձեռնարկություններում։

Ինչպես աշխատանքում, այնպես էլ ընտանիքում ու կենցաղում Դրաստամատն օրինակելի է իր պարկեշտությամբ։ Ակտիվ մասնակցելով կոմունիզմի կառուցմանը, դրան նվիրելով իր ուժն ու եռանդը, նա ճշտությամբ պահպանում է սոցիալիստական համակեցության կանոնները։ Ընտանիքը սրբություն է նրա համար և ամեն ինչ անում է իր ընտանիքի բյուրեղյա մաքրությունը, հոգեհարազատությունը հարատևելու համար։ Մեծ հոգատարությամբ նա հետևում է իր երեխաների դաստիարակության, հանգստի կազմակերպման գործին։ Իր լավ վարքագծով մեծ հեղինակություն է ձեռք բերել հարևանների շրջանում, որոնց հիացմունքին է արժանանում նրա ընտանիքի փոխադարձ սերն ու համերաշխությունը։

***

Գործարանը Դրաստամատ Թադևոսյանի երկրորդ ընտանիքն է, կոլեկտիվը՝ դաստիարակը։ Այստեղ անցկացնելով իր պատանեկան ու երիտասարդական տարիները, հետևելով առաքինի մարդկանց օրինակին, նա համոզվել է, որ աշխատասիրությունը, ազնվությունը, համեստությունն են զարդարում, գեղեցկացնում մարդուն, բարձրացնում նրա պատիվն ու հեղինակությունը։ Մարդը չի կարող ապրել առանց հանրօգուտ աշխատանքի, առանց հասարակության համար բարիքներ ստեղծելու, հետևաբար հայրենիքին օգտակար լինելու համար պետք է հանդես բերել մեծ եռանդ, ստեղծագործական ակտիվություն։ Գործարանում ընկերների հետ զրուցելիս հաճախ կարելի է լսել նրա հետևյալ խոսքերը. ժողովրդի երջանկության, կոմունիզմի կառուցման համար հարկավոր է պայքարել, նրան նվիրել բոլոր ուժերը։ Ո՛չ միայն խոսքով, այլև գործով նա հետևում է իր այս նշանաբանին։

Աշխատասիրությամբ ու լավ բնավորությամբ Թադևոսյանն արժանացել է իրենից ավագների ուշադրությանն ու ընկերների համակրանքին։ Եվ երբ նա դիմեց կոմերիտական կազմակերպությանը՝ խնդրելով իրեն ընդունել ՀԼԿԵՄ շարքերը, իր երիտասարդ ընկերները սիրով կատարեցին նրա խնդրանքը, համոզված լինելով, որ Դրաստամատը բարձր կպահի մեծ Լենինի անունը կրող երիտասարդական կազմակերպության անդամի պատվավոր կոչումը, կգործի ավելի եռանդուն և ակտիվ կմասնակցի հասարակական աշխատանքներին։

Նա արդարացնում է նրանց հույսերը. իր նվիրական գործերի շնորհիվ շուտով պարգևատրվում է ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով, արժանանում այլ խրախուսանքների, ընտրվում գործիքաշինական ցեխի կոմերիտական կազմակերպության քարտուղար։

1954 թվականի օգոստոսին կատարվեց Դրաստամատ Թադևոսյանի ամենաբաղձալի ցանկությունը. նա ընդունվեց պարտիայի շարքերը, ոգեշնչվելով նրա վեհ գաղափարներին։ Պարտիա, որն ազնիվ է, ռևոլյուցիոն և մարդկության երջանիկ ապագայի լուսաշող ուղին է ցույց տալիս։ Գիտակցելով իր վրա դրված նոր պարտականությունների ողջ պատասխանատվությունը, որպես կոմունիստ, նա օրեցօր կատարելագործում է իր արտադրական որակավորումը, ձգտում տիրապետել նորագույն տեխնիկային, բարձր պահել աշխատանքային կարգապահությունը, ապահովել պարտիայի որոշումների կատարումը։

Լենինականի պարտիական կազմակերպության 1959 թվականի կոնֆերանսը բարձր պատվի արժանացրեց Թադևոսյանին, նրան ընտրեց Հայաստանի կոմունիստական պարտիայի XX համագումարի պատգամավոր՝ վճռական ձայնի իրավունքով։

«Շարքային խառատ, և այսպիսի մեծ մի համաժողով, ուր քննվում են ռեսպուբլիկայի ներքին ու ապագային վերաբերող խիստ էական ու գործնական հարցեր»,— այս միտքը հպարտությամբ էր լցնում համեստ վարպետի սիրտը. մտքով նա սլանում էր հեռու, վառ պատկերացնում յոթնամյա պլանը ու՝ «Որքա՜ն շատ անելիքներ, բարդ խնդիրներ կան լուծելու»,— մտածում էր նա։

Համագումարից Թադևոսյանը տուն վերադարձավ մեծ խոհերով, վեհ ձգտումներով։ Նրա նպատակն էր՝ քայլել յոթնամյա պլանի կատարման համար մարտնչողների առաջին շարքերում։ Եվ անդուլ ու մշտապես գերակատարելով իր առաջադրանքները՝ նա արդեն աշխատում է 1964 թվականի հաշվին։

— Թադևոսյանը քայլում է կոմունիզմ կառուցող անվեհեր մարտիկների առաջավոր շարքերում,— մեծագույն հպարտությամբ և ուրախությամբ լի՝ ասում են նրա ընկերներն ու գործարանի ղեկավարները։

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

---

## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ ԲՅՈՒՐՈՅՈՒՄ

Արտադրության առաջավորների փորձը ընդհանրացնելու և տարածելու նպատակով Կրասնոսելսկի գյուղական արտադրական պարտիական կոմիտեի բյուրոն լսեց առաջավոր ծխախոտագործուհիներ Լիզա Ջիլինգարյանի (Ն. Բաշգյուղ) և Գյուլամբար Թաղիևայի (Արդանիշ) զեկուցումներն իրենց աշխատանքի մասին։

Լ. Ջիլինգարյանը, կիրառելով կոմպլեքս միջոցառումներ, վերջին երկու-երեք տարում ստացել է ծխախոտի բարձր բերք. անցյալ տարի նա մեկ հեկտարից միջին հաշվով հավաքել է 32,8 ցենտներ ծխախոտ։ Ջհանգստանալով ձեռք բերածով՝ անվանի ծխախոտագործուհին պայքարում է 1963 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստանալու 35 ցենտներ բերք։

Պարտիական կոմիտեում ընկ. Թաղիևան պատմեց, թե ինչպես է 1962 թվականին մեկ հեկտարից ստացել 42 ցենտներ ծխախոտի հումք։

Պարտիական կոմիտեն բոլոր սկզբնական պարտիական կազմակերպություններին հանձնարարեց՝ ուսումնասիրել և զրույցների, զեկուցումների միջոցով լայնորեն տարածել ու արտադրության մեջ արմատավորել անվանի ծխախոտագործուհիների աշխատանքի դրական փորձը և նրանց օրինակով ընթացիկ տարում հասնել ծխախոտի բարձր բերքատվության։

Շ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԻՐԱՔՅԱՆ ՔՐԴՍՏԱՆԸ ԲՈՑԵՐԻ ՄԵՋ

Արդեն երկու տարի է, ինչ Իրաքի կառավարությունը, որոշ ընդմիջումներով, պատերազմ է մղում քրդերի դեմ։ Ինքնաթիռներով ու տանկերով զինված իրաքյան բանակն այրում ու հողին է հավասարեցնում քրդական գյուղերը, ոչնչացնելով խաղաղ բնակչությանը։

Ազգային ազատագրության համար քուրդ ժողովրդի պայքարը, որն սկսվել է XIX դարի վերջերին, առանձնապես ուժեղացավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Սոցիալիզմի հզոր լագերի առաջացումը և համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխությունը ի վնաս իմպերիալիզմի, բարենպաստ նոր պայմաններ ստեղծեցին գաղութային և կախյալ երկրների ազգային-ազատագրական պայքարի համար, հերոսական մի պայքար, որը վերջին տասնամյակում պսակվեց բազում հաղթանակներով։ Գաղութակալությունը փշրող այդ հորձանուտի մեջ մտավ նաև քուրդ ժողովուրդը, որի ազգային դեմոկրատական շարժումն ուղղված է ինչպես ներքին ռեակցիայի, այնպես էլ իմպերիալիզմի ոտնձգությունների դեմ։

Քրդական հարցի լուծման արգելակող գլխավոր մեղսագործներն իմպերիալիստական տերություններն են, առաջին հերթին՝ ԱՄՆ-ի ու Անգլիայի իմպերիալիստները, որոնք պատասխանատու են երկրագնդի այս շրջանում ստեղծված լարված իրադրության համար։ Նրանք էին պաշտպանում Թուրքիայի, Իրանի ռեակցիոն շրջանների ու Իրաքի տապալված ռեժիմը, օգնելով նրանց քուրդ ժողովրդի ստրկացման գործում։

Իրաքի ներկայիս կառավարողներն իրենց չարագործությունններն արդարացնելու նպատակով, ճգնում են ապացուցել, թե իբր քրդերը նպատակ ունեն անջատվել Իրաքից և ձեռք են բարձրացրել պետության ամբողջականության վրա։ Նման հերյուրանքները հարկավոր են նրանց, ովքեր չեն ցանկանում, որ Իրաքը ընթանա անկախության և ազգային ազատության ուղիով, փորձում են քողարկել իրենց արյունոտ հակաժողովրդական քաղաքականությունը։

Քուրդ ժողովուրդը պայքարում է իր ազգային իրավունքների կենսագործման համար։ Քրդերի հիմնական պահանջն է՝ ձեռք բերել ազգային ավտոնոմիա Իրաքի ռեսպուբլիկայի կամ պլանավորվող արաբական ֆեդերացիայի (Եգիպտոս, Իրաք և Սիրիա) շրջանակներում։ Քրդերը ձգտում են իրավահավասարության հասնել երկրի կուլտուրական, քաղաքական և տնտեսական կյանքի բնագավառներում։ Այս պահանջներն արդարացի են։ Իրաքի բնակչության մեկ քառորդը կազմող քրդերն իրենց բախտը կապել են արաբ ժողովրդի հետ և միշտ էլ համատեղ պայքարել երկրի ռեակցիոն ուժերի դեմ։

Քուրդ ժողովուրդը ակտիվ մարտնչեց Իրաքի միապետական ռեժիմի տապալման (1958 թ. հուլիս) ժամանակ։ Նա կարևոր դեր խաղաց Իրաքի ռեսպուբլիկայի անկախության պահպանման գործում՝ ընդդեմ իմպերիալիզմի և նրա գործակալների, այդ թվում նաև դավաճան քուրդ ֆեոդալների ոտնձգությունների։ 1958 թվականի հուլիսյան ռևոլյուցիայի հաղթանակը քրդերին հավատ ներշնչեց, որ հնարավոր է վերջ տալ ազգային ճնշմանը Իրաքում և ամրապնդել արաբ ու քուրդ ժողովուրդների դաշինքը դեմոկրատական հիմունքներով։ Քաջ հայտնի է, որ միապետության տապալումից հետո առաջին տարում, երբ երկիրը թևակոխեց դեմոկրատական զարգացման ուղին, երբ դեռ Կասեմը չէր անցել դիկտատորական, ռեակցիոն քաղաքականության, պայմաններ ստեղծվեցին քրդական պրոբլեմի լուծման համար։ Իրաքի ռեսպուբլիկայի ժամանակավոր կոնստիտուցիան նույնիսկ ճանաչեց քրդերի ու արաբների հավասար իրավունքները։ Այդ կոնստիտուցիայի երրորդ հոդվածում ասված էր. «Արաբները և քրդերը այս երկրում համարվում՝ են պարտնյորներ, և նրանց ազգային իրավունքները կոնստիտուցիայով ճանաչվում են միասնական Իրաքի սահմաններում»։



Իրաքի կոմունիստական պարտիան և Քուրդստանի դեմոկրատական պարտիան * (որի նախագահն է Մուստաֆա ալ Բարզանին), դեմոկրատական մյուս ուժերի հետ պայքար ծավալեցին այդ հոդվածի կենսագործման համար։

Սակայն հետագա իրադարձությունները ցույց տվեցին, որ կառավարության կողմից այդ իրավունքների ճանաչումը մնաց թղթի վրա։ Դա սոսկ մանևր էր՝ ժամանակ շահելու համար։ Մեկ տարի անց՝ 1959 թվականին, Իրաքի կառավարությունը հռչակեց «ասիմիլացնել քրդերին» լոզունգը և սկսեց նրանց ազգային ճնշման քաղաքականությունը և ավելի հրեշավոր, քան միապետական ռեժիմի օրոք։

1961 թվականի գարնանից Իրաքի կառավարությունն սկսեց ավելի դաժան քաղաքականություն վարել քրդերի նկատմամբ։ Քրդական որոշ ցեղերի ռեակցիոն առաջնորդների միջոցով կազմակերպվեց մի շարք զինված պրովոկացիաներ, որոնք առիթ ծառայեցին ռազմական ուժերի կենտրոնացման և քրդերի առաջնորդ Մուստաֆա Բարզանիի կողմնակիցներին ջախջախելու համար։

Արդեն 1961 թվականի սեպտեմբերին Իրաքի կառավարությունն սկսեց ռազմական գործողությունները։ Ինքնաթիռներով ռմբակոծվեցին քրդական գյուղերը, որի հետևանքով զոհվեցին հարյուրավոր անզեն բնակիչներ։ Մեծ թվով մարդիկ նետվեցին բանտերը։

ՍԵՆՏՕ-ի իմպերիալիստական շրջանները և, հատկապես, նավթային ընկերությունները փորձեցին Իրաքում ստեղծված իրադրությունը ծառայեցնել իրենց շահերին։ 1961 թվականի վերջին Անգլիայի և մյուս երկրների իմպերիալիստները Իրաքի ափերի մոտ ուղարկեցին ռազմական նավատորմ, սպառնալով նրա անկախությանը։ Միայն այդ ժամանակ Կասեմը հայտարարեց, որ ներում է շնորհվում Քրդստանի դեպքերի մասնակիցներին և կոչ արեց նրանց՝ միավորվել իմպերիալիստական ագրեսիայի դեմ։ Միաժամանակ նա խոստացավ վերացնել հողային հարկը և վերականգնել պատերազմական գործողությունների ընթացքում ավերված գյուղերը։ Սակայն այդ հայտարարությունն ու խոստումը խաբեություն էին և նպատակ ունեին ժամանակ շահել։

Հենց որ աշխարհի խաղաղասեր ուժերի հաստատակամ ջանքերով վերացավ իմպերիալիստների ուղղակի ագրեսիայի սպառնալիքը, քրդերին ճնշելու ընդհատված քաղաքականությունը շարունակվեց։

---

* Ազգային բուրժուազիայի և լիբերալ մանր կալվածատերերի պարտիա։ Դրա մեջ մտնում են նաև քաղաքային բուրժուազիայի և ինտելիգենցիայի մի մասը։

1962 թվականի գարնանը կառավարությունը կենտրոնացրեց իր ռազմական ուժերը և սկսեց զինված պայքարը քրդերի դեմ։ Իրաքի կառավարությունն անուշադրության մատնեց քրդերի խաղաղության կոչերը, անտեսեց Մուստաֆա Բարզանիի հայտարարությունը, որտեղ նա առաջարկում էր կառավարության հետ սկսել բանակցություններ՝ քրդերի ինքնավարության հարցի շուրջը։

Կասեմի կառավարությունը տարիուկես շարունակ փորձում էր զենքի ուժով ծնկի բերել քուրդ ժողովրդին։ Սակայն նա չկարողացավ այդ անել։

Այժմ այդ անարգ գործը շարունակում է Իրաքի ներկայիս կառավարությունը, որն իշխանության գլուխ անցավ 1963 թվականի փետրվարի 8-ին պետական հեղաշրջումից հետո։ Երկրում սկսվեց ռեակցիայի արյունոտ օրգիան։

Առաջին հարվածը տեղաց կոմունիստների վրա։ Հկտի կամայականության զոհ դարձան Իրաքի կոմպարտիայի առաջին քարտուղար Սալյամ Ադիլը, Խաղաղության համաշխարհային խորհրդի անդամ Թեֆիկ Մունիրը և իրաքյան ժողովրդի անձնվեր շատ զավակներ։ Բավական է ասել, որ չորս ամսվա ընթացքում սպանվեցին մոտ 10 հազար մարդ և գրեթե 100 հազարը նետվեցին զնդանները։

Անցնելով իշխանության գլուխ, Իրաքի ներկայիս կառավարողները խոսքով դատապարտում էին քրդերի նկատմամբ Կասեմի վարած քաղաքականությունը, խոստանում կարգավորել քրդական պրոբլեմը. նրանք նույնիսկ բանակցություններ սկսեցին քրդական շարժման ղեկավարների հետ։ Սակայն այդ նույնպես խաբեություն էր։ Իրաքի բաասական պարագլուխները մերժեցին քրդերի արդարացի պահանջները և ժամանակ շահելով կենտրոնացրին իրենց ռազմական ուժերն ու այս տարվա հունիսի 10-ին վերսկսեցին պատերազմական գործողությունները քուրդ ժողովրդի դեմ։ Կառավարական կանոնավոր բանակը, զինված ինքնաթիռներով ու տանկերով նորից ավերում է քրդական գյուղերը, ոչնչացնում խաղաղ բնակչությանը։

Քրդերի ազատագրական շարժումը վայելում է Իրաքի ժողովրդի լայն շրջանների ու ամբողջ աշխարհի խաղաղասեր, դեմոկրատական ուժերի հարգանքը։ Այսօր ամբողջ երկրագնդի խաղաղասեր մարդիկ պահանջում են դադարեցնել Իրաքում սանձազերծված արյունոտ պատերազմը։

Իրաքի կոմպարտիայի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ Անվարա Մուստաֆան «Ռուդե պրավո» թերթի ներկայացուցիչների հետ ունեցած զրույցի ժամանակ ասել է. «Իրաքի ներկայիս կառավարությունն ի վիճակի չէ ճնշել քուրդ ժողովրդի

ազգային շարժումը։ Բաղդադի կառավարող շրջանները կարող են հույսը դնել հարևան մի քանի երկրների օգնության վրա, բայց կարելի է ենթադրել, որ այդ երկրների կառավարությունները չեն կամենա անմիջականորեն միջամտել քրդական հարցին, քանի որ այդ չափազանց կբարդացներ դրությունը։ Անշուշտ, չի կարելի բացառել այն որոշակի վտանգը, որ ներկայացնում են ամերիկյան ու անգլիական իմպերիալիստները՝ քուրդ ժողովրդի ամենից մոլի թշնամիները»։

Բաղդադի կառավարողները և իմպերիալիստական շրջանները վախենում են իրադրության բարդացումից։ Թերևս այդ է պատճառը, որ բաասի ղեկավարները ձգտում են ամրապնդել կապերը Իրանի և Թուրքիայի ռեակցիոն շրջանների հետ, ցանկանալով ընդհանուր ճակատ ստեղծել ինչպես այդ երկրների դեմոկրատական ուժերի, այնպես էլ քրդական շարժման դեմ մղվող պայքարում։

Իրադրության բարդացումից է վախենում անգլիական «Դեյլի տելեգրաֆ» թերթը, երբ գրում է. «Միջազգային բարդացումներ միշտ հնարավոր են, որովհետև... հաջող ապստամբությունն Իրաքում ոտքի կհանի Թուրքիայի և Պարսկաստանի քրդական փոքրամասնությանը»։ Ահա իմպերիալիստների մտավախության և Իրաքի գործերին նրանց ակտիվ միջամտության պատճառը։

Իրաքյան ողբերգության գլխավոր դերակատարը իմպերիալիստական նավթային մոնոպոլիաներն են, որոնց շահերին լուրջ սպառնալիք է ներկայացնում քրդական շարժումը։ Նույնիսկ բուրժուական մամուլը ստիպված է խոստովանել, որ «նավթի արքաները» անմիջական և ուղղակի մասնակցություն ունեցան Իրաքի փետրվարի 8-ի հեղաշրջմանը, իսկ այժմ Քրդստանը պատած ծխացող բոցերից նավթի հոտ է գալիս։

Իրաքյան Քրդստանի՝ խաղաղ ժողովրդի նկատմամբ կիրառվող արյունոտ գատաստանների և այդ իրադարձություններին ցույց տրվող օտարերկրյա միջամտության կապակցությամբ հուլիսի 9-ին Սովետական կառավարությունը հայտարարություններով դիմեց Իրաքի, Իրանի, Թուրքիայի և Սիրիայի Արաբական Ռեսպուբլիկայի կառավարություններին, որտեղ նշված է. «ՍՍՌՄ կառավարության ունեցած տեղեկությունների համաձայն, Իրաքի ժողովրդի կողմից մերժված ՍԵՆՏՕ ռազմադաշնության բլոկի մասնակից պետությունները բռնել են Իրաքի հյուսիսում տեղի ունեցող իրադարձություններին միջամտելու ուղին, ընդհուպ մինչև ռազմական բռնության միջոցառումների իրագործումը»։ Այդ քաղաքականությունը «հղի է լուրջ հետևանքներով»։

Սովետական ժողովուրդը տագնապով ու ցավով է հետևում Իրաքի, հատկապես, Քրդստանում ծավալվող դեպքերին։ Այլ կերպ լինել չի կարող։ Չէ՛ որ այդ զայրացուցիչ իրադարձությունները տեղի են ունենում ՍՍՌՄ-ի սահմաններին անմիջականորեն մոտ մի երկրում, որն իմպերիալիստները դիտում են հարմար պլացդարմ սոցիալիստական երկրների դեմ ագրեսիվ գործողությունների համար։ Այս կապակցությամբ հունիսի 16-ի ՏԱՍՍ-ի հայտարարության մեջ ասված է. «Այս ամենը չի կարող չհետաքրքրել յուրաքանչյուր պետության, որը կողմնակից է ժողովուրդների խաղաղությանն ու բարեկամությանը, առանձնապես այն պետություններին, որոնք գտնվում են Մերձավոր ու Միջին Արևելքի շրջանում և հարում են այդ շրջանին։ Սովետական մարդկանց հիշողության մեջ մնացել են ոչ քիչ օրինակներ, երբ այն պլացդարմները, որ իմպերիալիստներն իրենց ձեռքն են գցել սովետական սահմանների մոտակայքում, օգտագործել են սովետական պետության և խաղաղասեր մյուս երկրների անվտանգության դեմ։ Ահա թե ինչու Սովետական Միությունը չի կարող խոր հետաքրքրություն չցուցաբերել այն ամենի նկատմամբ, ինչ որ այսօր տեղի է ունենում Իրաքում»։

Իրաքի բաասական ղեկավարության ռեակցիոն, շովինիստական քաղաքականությունը քրդերի նկատմամբ լուրջ վտանգ են ստեղծում խաղաղության համար, սրում Մերձավոր Արևելքի իրադրությունը։ Աշխարհի բոլոր խաղաղասեր ուժերը պետք է սանձեն արյունոտ խաղերի սիրահարներին և քուրդ ժողովրդին հնարավորություն տան իրականացնելու իր նվիրական իղձերը։

## ՌԱՍԻԶՄԸ ՄՈԼԵԳՆՈՒՄ Է

Հարյուր տարի է անցել այն ժամանակներից, երբ վերացվեց ստրկությունը ԱՄՆ-ում։ Սակայն այսօր, ԱՄՆ-ի ձևականորեն ազատ ստրուկները՝ 18 միլիոն նեգրերը, նոր թափով ոտքի են ելել հանուն իրենց իրավունքների պաշտպանության։

Երբ այս տարվա գարնանը Ալաբամա նահանգի Բիրմինհեմ քաղաքում բողոքի ցույցեր սկսվեցին ընդդեմ սեգրեգացիայի, ո՛չ Միացյալ Նահանգների կառավարությունը, ո՛չ էլ Ալաբամայի իշխանությունները չէին ենթադրում, թե ԱՄՆ-ի համար սովորական այդ ցույցերը կընդունեն այդպիսի թափ ու ծավալ։

Բիրմինհեմի ռասիստներն իրենց արյունոտ գործն սկսեցին մայիսի 12-ի առավոտյան. երեք ռումբ նետեցին դոկտոր Մարտին Լյութեր Քինգի եղբոր՝ հոգևորական Ա. Դ. Քինգի՝ սպիտակամորթների ու նեգրերի հավասարության համար շարժման լիդերներից մեկի տան, ինչպես և այդ շարժման շտաբի շենքի վրա։



Նեգրերի համբերության բաժակը լցվեց։ Նրանք դուրս եկան փողոց և ընդհարվեցին ոստիկանության ու ազգային գվարդիայի զինվորների հետ։ Նեգրերը պաշտպանվում էին բռունցքներով, քարերով, փայտերով։ Ավելի քան 50 մարդ ծանր վիրավորվեցին, այրվեցին մի քանի տներ։

Նեգրերի դեմ նետվեցին Ալաբամայի ազգային գվարդիայի ավտոմատներով ու նռնակներով զինված 600 զինվորներ, 300 ոստիկաններ՝ սևամորթների վրա հարձակվելու վարժեցված շներով, Մաքսուել ռազմաօդային բազայից բերվեցին ֆեդերալ զորքեր, գնդացիրներով զինված զրահապատ մեքենաներ, այդ ամբողջ ռազմական ուժը ոտքի հանվեց Բիրմինհեմի նեգրերի դեմ, Քեննեդիի արտահայտությամբ, «կարգ ու կանոնը պահպանելու համար»։

Ալաբամայի արյունոտ դեպքերի մասնակիցների համար այդ «կարգ ու կանոնը» երկակի իմաստ ունի։ Սպիտակամորթ ռասիստների համար այն նշանակում է սոցիալական և ռասայական անհավասարության հավերժացում, իսկ նեգրերի համար սպիտակների հետ հավասար իրավունքների ապահովում։ Ահա այս երկու հակադիր ըմբռնումները բախվեցին Ալաբամայում, առաջացնելով այնպիսի պայթյուն, որի ալիքները տարածվեցին ամբողջ երկրում։

«Ամերիկան կանգնած է ռասայական ամենասուր ճգնաժամի առջև, մի ճգնաժամ, որն արդեն սոսկ դատարկ և ակադեմիական հասկացություն չէ»,— ասել է Նյու-Յորքի կոլեջի հոգեբանության պրոֆեսոր Քեննետ Կլարկը։ «Այսօրվա ճգնաժամը, ասում է Կլարկը,— արտացոլում է հուսահատության և անելանելիության ուժեղացող զգացումը և նեգրերի այն հույսերի լիակատար խորտակումը, որ նրանք երբևիցե կկարողանան արդարության, հավասարության և դեմոկրատիայի հասնել ամերիկյան սիստեմի շրջանակներում։

Առաջվա նման դպրոցներում, ինչպես հյուսիսում, այնպես էլ հարավում, գոյություն ունի սեգրեգացիա։ Լայնորեն տարածված է խտրականությունը աշխատանքի ընդունելիս։ Դա նորմա է դարձել ամերիկյան էկոնոմիկայի համար։ Սպիտակամորթ և նեգր միջին ընտանիքների վիճակի տարբերությունն այժմ անհամեմատ ավելի մեծ է, քան երեսնական թվականների ճգնաժամի ամենածանր ժամանակներում։

Նեգրերը ոչինչ ձեռք չեն բերել ո՛չ միայն տնտեսական, այլև հասարակական տեսակետից... անդունդը նրանց և սպիտակամորթների միջև ավելի է խորացել։ Նեգրը դեռևս դասվում է բնակչության ճնշված կատեգորիային, իսկ նրա մարդկային արժանապատվությունը սիստեմատիկաբար ոտնահարվում է ո՛չ միայն հարավում, այլև Ամերիկայի ուրիշ շատ շրջաններում։ Բայց ամենաաղաղակող փաստն այն է, որ այդ ամենը կատարվում է այն մարդկանց գիտությամբ ու թույլտվությամբ, որոնք հրապարակայնորեն չեն պաշտպանում սեգրեգացիան»։

Ռասիզմի ու տեռորի սանձարձակությունը ԱՄՆ-ում հարուցել է աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց զայրույթն ու բողոքը։ «Քաղաքացիական պատերազմ» բառերը, որոնք սփռված են բուրժուական մամուլում, սարսափ ու անհանգստություն են պատճառում «ազատ աշխարհի» կառավարողներին։ Ստրկության վերացումից 100 տարի հետո ամերիկյան սևամորթ քաղաքացիներին սպանում, նետում են բանտերը, նրանց պատառոտում են շները, գազանաբար ծեծում ու այրում տները միայն այն բանի համար, որ նրանք ուզում են պաշտպանել իրենց մարդկային արժանապատվությունը, օգտվել քաղաքացիական տարրական իրավունքներից։

Այսօր Ամերիկայում միլիոնավոր նեգրեր հայտարարում են՝ կամ պետք է հաղթանակի արդարությունն ու հավասարությունը ամերիկյան նեգրերի համար, կամ մենք պատրաստ ենք ամեն մի զոհողության, այն ժամանակ քաղաքացիական պատերազմն անխուսափելի կլինի։

Ամերիկյան նեգրերի պայքարը նոր թափ ու բովանդակություն է ստացել։ ԱՄՆ-ի ռասիստների տրադիցիոն նախկին միջոցները՝ արցունքաբեր ռումբերը, դագանակները, բանտերը, կու-կլուկս-կլանի խարույկները, սպանությունները ու ոստիկանական բռնությունները, այլևս չեն կարողանում տալ առաջվա արդյունքը։ Որովհետև նեգրերի պայքարը թևակոխել է նոր փուլ՝ գիտակցված, կազմակերպված պայքարի փուլը։

Այդ պայքարի կազմակերպված բնույթի մասին է վկայում այն փաստը, որ նեգրական շարժման լիդերները կարողացան հարկադրել Բիրմինհեմի խոշոր բիզնեսմեններին՝ բանակցությունների մեջ մտնել իրենց հետ և կնքել «զինադադար»։ Քաղաքի արդյունաբերական ու առևտրական շրջանների ներկայացուցիչները «խոստացան» աստիճանաբար «պակասեցնել» խտրականությունը և «մեղմացնել» սեգրեգացիան։ Սակայն այդ ժամանակավոր դադար էր, շուտով ռասիզմը նոր ուժով մոլեգնեց։

Թեև ամերիկյան նեգրերի ռևոլյուցիոն պայքարը քաղաքացիական իրավունքների համար վաղուց է սկսվել, բայց այս տարվա գարնանը բռնկված շարժումը իր թափով ու ծավալով աննախադեպ էր և անսպասելի Միացյալ Նահանգների համար։ Այժմ ԱՄՆ-ի կառավարությունը կանգնած է ներքին սուր ճգնաժամի առջև։ Պետական քարտուղար Դին Ռասկը ստիպված է խոստովանել, որ այդ «ամենալուրջ ցնցումն է,

որը երկիրը կրել է 1865 թվականից ի վեր»։

Ամերիկյան մի խումբ առաջադիմական մեկնաբաններ նեգրերի արդի պայքարի մասին ասել են. «Միացյալ Նահանգներն այժմ գործ ունեն սևամորթների ռևոլյուցիայի հետ՝ միակ իսկական ռևոլյուցիայի, որը երբևիցե կատարվել է երկրում և որը պետք է հաղթանակի»։

Ռևոլյուցիոն հուզումների կենտրոնը Միացյալ Նահանգների հարավն է, Բիրմինհեմը, Ջեկսոնը, Գրինսբորոն և մյուս քաղաքները։ Սակայն նրանք, ովքեր ԱՄՆ-ի հյուսիսում կարծում էին, թե Հարավի ցնցող իրադարձություններն արձագանք չեն գտնի մյուս նահանգներում, չարաչար սխալվեցին։ Միայն մայիսի վերջին շաբաթում տեղի ունեցան ավելի քան 30 մասսայական ցույցեր՝ ընդդեմ ռասայական սեգրեգացիայի։ Ամբողջ երկրում ստեղծվեց լարված վիճակ։ Հզոր ցույցեր եղան Չիկագոյում, Լոս-Անժելոսում 30 հազար սևամորթներ հավաքվեցին քաղաքային ստադիոնում՝ ցույց տալով իրենց համերաշխությունը Բիրմինհեմի նեգրերին։ Ֆիլադելֆիայում նեգրերի պիկետները մարտնչում էին ոստիկանների դեմ։ Այսպիսի փաստեր կարելի է շատ բերել։ Սակայն անտեսելով բազմաթիվ նմանօրինակ փաստերը, ԱՄՆ-ում հաճախ ասում են, թե նեգրերի նկատմամբ խտրականության քաղաքականություն է վարվում միայն հարավում, իսկ հյուսիսում այդ աննշան է։ Այդ կեղծիք է։

Ահա՛ տեսեք։ ԱՄՆ-ի մայրաքաղաք Վաշինգտոնում ապրում է 764 հազար մարդ, որոնց 53,9 տոկոսը նեգրեր են։ Վերջին 20 տարում հարավային նահանգների նեգրերը տեղափոխվեցին մայրաքաղաք, հուսալով, թե այնտեղ կգտնեն աշխատանք և կխուսափեն ահավոր անարդարությունից և խտրականությունից։ Բայց ավա՜ղ։ «Նեգրերը շուտով գիտակցեցին,— գրում է «Գանիեն Թայմս» թերթը,— որ աղքատությունն ու սեգրեգացիան կապ չունեն աշխարհագրության հետ. ամենից առաջ դրանք քաղաքական հարցեր են։ Նրանք հասկացան, որ Սպիտակ տան դեմագոգիկ կոչերն ու քարոզներն ի վիճակի չեն փոխելու երկրի քաղաքական տրադիցիաները»։ «Ազատ աշխարհի» ամենահարուստ երկրի մայրաքաղաքում նեգր բնակչությունը ծանր դրության մեջ է։ Այդ քաղաքը հանցագործությունների թվով երկրում գրավում է առաջին տեղը։ Այդ բացատրվում է նրանով, որ Վաշինգտոնում մեծ տոկոս է կազմում գործազրկությունը։ Նեգր երեխաների համար չեն բավարարում դպրոցները, իսկ ովքեր ավարտում են դրանք, չեն կարող աշխատանք գտնել։ «Գործազուրկները,— գրում է նույն թերթը,— լքում են բնտանիքները, որովհետև իրենց կանայք այն ժամանակ կկարողանան ստանալ խղճուկ նպաստներ։

Աղքատությունը, որի մեջ ապրում են նեգրերը, բացատրվում է ո՛չ միայն երկրի ընդհանուր կրիտիկական դրությամբ։ Այդ հետևանք է նաև դաժան խտրականության»։

«Նեգրերի պատերազմը» խիստ իրարանցում է ստեղծել Սպիտակ տանը։ Պրեզիդենտ Քեննեդին և նրա եղբայրը՝ արդարադատության մինիստր Ռոբերտ Քեննեդին լրջորեն անհանգստացած են և ուղիներ են որոնում ստեղծված փակուղուց դուրս գալու համար։ Թերթերը խոստովանում են, որ երկիրը կանգնած է արյունահեղ նոր ընդհարումների եզրին։ Եվ ահա, այդ անդունդի եզրին հավասարակշռությունը պահպանելու համար, պրեզիդենտը հանդես եկավ ռասայական խտրականության մասին ճառով, շարադրելով քաղաքացիական իրավունքների բնագավառում «խաղաղ ռևոլյուցիայի» իր ծրագիրը, այն է՝ քաղաքներում ստեղծել «ռասայական բախումները վերացնելու» միջռասայական հանձնաժողովներ, վերացնել սեգրեգացիա պահանջող տեղական օրենքները, սահմանել աշխատանքի ընդունվելու իրավահավասարություն, հավասար հնարավորություններ բնակարանային հարցում, կրճատել գործազրկությունը՝ «դպրոցներից չափահասների հեռանալը կանխելու» միջոցով։ Այս կետերը որպես «առաջարկներ» հրամցվում են քննարկման։

Սակայն նեգրերին այլևս պետք չեն դատարկ խոսքեր, այնպիսի միջոցառումներ, որոնք երբեք չեն կենսագործվում։ Նեգրական շարժման լիդեր Մարտին Լյութեր Քինգն այդ առնչությամբ հայտարարել է, որ կառավարության ծրագրած միջոցառումները «խղճուկ» են։

ԱՄՆ-ի կառավարության հապճեպ կազմված այդ օրինագիծը պրեզիդենտի բառերով ասած, նպատակ ունի «ռասայական խտրականությունը փողոցներից տեղափոխել դատարաններ»։ «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթի խոստովանությամբ ԱՄՆ-ի կառավարության «մտքով անգամ չի անցնում, որ այդ օրենքը կկարողանա լուծել ամբողջ պրոբլեմը, եթե նույնիսկ այն ընդունվի»։ Բացի այդ, կասկածելի է, կընդունվի՞ արդյոք այդ օրենքը, քանի որ կառավարությունը մեծ ճիգերից հետո միայն կարող է կոտրել սենատի ռեսպուբլիկականների դիմադրությունը և ստանալ բոլոր ձայների երեք քառորդը։

Ուստի պատահական չէ, որ նեգրերի լիդերները հայտարարում են, թե այդ ռեկլամային օրինագծի նպատակն է ռասիզմի դեմ ծավալված շարժումը խեղդել դատարանների լաբիրինթոսներում։ Ահա թե ինչու ԱՄՆ-ի սևամորթ քաղաքացիները վճռականորեն շարունակում են իրենց ռևոլյուցիոն պայքարը, ամբողջ երկրով մեկ ազդարարելով՝ «Ազատությունը մենք կնվաճենք սեփական ձեռքերով»։

Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

---

# ԱՇԽԱՐՀԻ ՏԱՐԲԵՐ ԾԱՅՐԵՐԻՑ

## ԼԵՀԱՍՏԱՆ.

● Երկրի գյուղատնտեսական ցանքատարածությունների 12 տոկոսը կամ 2,4 միլիոն հեկտար հող մշակում են պետական տնտեսությունները: Լեհաստանի միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմը որոշել է ավելացնել կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ:

● Ստորագրվել է համաձայնագիր՝ Լեհաստանի մայրաքաղաքում հիմնել ԳՖՌ-ի առևտրական ներկայացուցչություն և ընդլայնել առևտուրը Արևմտյան Գերմանիայի ու Լեհաստանի միջև:

## ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱ

● 1962 թվականին երկրի արդյունաբերական արտադրանքն ավելացել է 7 տոկոսով:

● Վերջին հինգ տարվա ընթացքում կապիտալ ներդրումները Հարավսլավիայում կազմել են գրեթե 1.559 միլիարդ դինար: Կապիտալ ներդրումների տարեկան միջին աճը եղել է մոտ 20 տոկոս: Այդ ժամանակամիջոցում արդյունաբերական արտադրանքի թողարկումը աճել է 66 տոկոսով, ըստ որում արտադրության միջոցների արտադրությունն ավելացել է 68 տոկոսով: Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 22 տոկոսով:

## ՖՐԱՆՍԻԱ

● Ինչպես գրում է «Յումանիտե» թերթը, երկրի պետական բյուջեի 32 տոկոսը ծախսվում է ռազմական նպատակների վրա:

● Վերջին չորս տարվա ընթացքում կենսամակարդակը Ֆրանսիայում թանկացել է 40 տոկոսով:

● Լոթարինգիայի երկաթահանքերը ճգնաժամ են ապրում: Չնայած «ընդհանուր շուկայի» առկայությանը, Ֆրանսիայի պարտնյորները, ինչպես, օրինակ, Բելգիան, այժմ գերադասում են մետաղի ավելի մեծ բաղադրություն ունեցող երկաթահանք ստանալ Շվեդիայից կամ Աֆրիկայից:

## ԳՖՌ

● «Ներկայումս Արևմտյան Գերմանիայում գոյություն ունեն ռևանշիստական նպատակներ հետապնդող ավելի քան 560 միլիտարիստական միություններ, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի 11600 դատավորների երեք քառորդը իրենց գործունեությունը ծավալել է Հիտլերի օրոք և պատկանել նացիստական պարտիային»: Այս հայտարարությունը մարտի 21-ի Բեռլինում կայացած պրեսկոնֆերանսում արել է Գերմանիայի միացյալ սոցիալիստական պարտիայի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ Ալբերտ Նորդենը:

## ՀՈՒՆԱՍՏԱՆ

● «Ավգի» թերթի պաշտոնական տվյալների համաձայն, օտարերկրյա մոնոպոլիաները 1962 թվականին Հունաստանից շահույթների ձևով տարել են 202 միլիոն դրահմ, իսկ նրանց կապիտալ ներդրումները երկրում նույն տարում կազմել են 300 միլիոն դրահմ: Նշանակում է՝ օտարերկրյա մոնոպոլիաները վերադարձնում են իրենց կապիտալ ներդրումները մեկուկես տարում և այնուհետև ստանում մաքուր շահույթ:

● «Էլեֆտերիա» թերթը հայտարարել է, որ արտագաղթը Հունաստանից աղետալի բնույթ է կրում: Միայն 1962 թ. աշխատանք որոնելու համար երկրից հեռացել են 215 հազար մարդ, մեծ մասամբ երիտասարդներ: 1959 թվականի համեմատությամբ արտագաղթն ավելացել է երեք անգամ, որը գերազանցում է Հունաստանի բնակչության աճին:

## ԻՏԱԼԻԱ

● Ընթացիկ տարվա երեք ամսում իտալական կոմպարտիայի շարքերն ընդունվել են 62500 մարդ: Նույն ժամանակամիջոցում Իտալիայի երիտասարդական կոմունիստական ֆեդերացիան համալրվել է 30 հազար նոր անդամներով:

պայքարին, ինչպես և այն արվեստը, որը բացահայտորեն է մասնակցում դրան և չի թաքցնում իր դասակարգային էությունը» (էջ 15)։

Հիմնավորելով աբստրակցիոնիզմի բուրժուական, դասակարգային բնույթը, մերկացնելով դրա հակադեմոկրատական, հակահումանիստական էությունը, Յա. Խաչիկյանը այնուհետև անցնում է նրա փիլիսոփայական, տեսական հիմունքների վերլուծությանը։ Հեղինակի արդարացի պնդմամբ աբստրակցիոնիզմի փիլիսոփայական հիմքերը կազմում են սուբյեկտիվ իդեալիզմն ու աբստրակցիոնիզմը։ Այս տեսակետից հեղինակն իր միտքը հիմնավորելու համար հաճախ դիմում է հենց իրենց՝ աբստրակցիոնիստներին, որոնց գործերի մեջ ցայտունորեն դրսևորված է ճշմարիտ արվեստից խուսանավելու մարմաջը։



Յուրաքանչյուր գեղագետ, անշուշտ, ձգտում է առավելագույն արտահայտչականության։ Եվ պետք է ուղղակի նշել, որ բոլոր ժամանակների իսկական արվեստագետները այս առումով հասել են զգալի հաջողությունների։ Սակայն աբստրակցիոնիստների կարծիքով, մինչև իրենց հրապարակ իջնելը, իբր արվեստի մեջ արտահայտչականության հանգամանքը խիստ թերի է եղել։ Ընդգծելով այն, որ արտահայտչականության մոմենտը միայն իրենց ստեղծագործությունների մեջ է հասել իր կատարյալ բարձրության, նրանք իրենց ներկայացնում են որպես «նորարարներ» արվեստի մեջ և մեծ ապլոմբով են խոսում իրենց սեփական «վաստակի» մասին։ Իսկ ինչպե՞ս են նրանք հասել նման բարձր «արտահայտչականության»։ Իրենց իսկ աբստրակցիոնիստների հայտարարությամբ, այդ բանին իրենք հասել են նատուրայի կենդանի գծերի արտացոլման օրենքների ոտնահարման, այն սուբյեկտիվորեն դեֆորմացիայի ենթարկելու ճանապարհով։

Այսպիսով, նրանց կարծիքով բարձր արտահայտչականության հասնելու համար պետք է առարկաներն արտապատկերել ո՛չ թե այնպես, ինչպես դրանք կան իրականության մեջ, այլ միայն սուբյեկտիվ կամայականությամբ դեֆորմացիայի ենթարկելով։ Աբստրակցիոնիստների այն տեսակետը, որ ոչ թե պետք է արտապատկերել, այլ միայն վերաբերմունք արտահայտել, վկայում է հենց նրանց գեղագիտական մեթոդի սուբյեկտիվ իդեալիստական էության մասին։ Եթե արվեստագետները հետևեն աբստրակցիոնիստների այդ նշանաբանին, ապա մարդու փոխարեն կարելի է նկարել մի հին կրկնակոշիկ, կամ էլ հովանոցի բռնակի նման ինչ-որ մի բան։ Այս իմաստով կերպարվեստը նրանց մոտ դիտվում է որպես սոսկ ինքնաբավ մի բնագավառ, որը չափազանց հեռու է կանգնած իրականության բուն խնդիրներից։

Սակայն պետք է նշել, որ գեղարվեստական ստեղծագործության պատկերային արտացոլման օրենքների ոտնահարումը միայն աբստրակցիոնիստներից չի գալիս։ Այն իր սկիզբն է առնում դեռևս էքսպրեսիոնիզմից, և իր վերջնական խեղաթյուրման է հասնում աբստրակցիոնիստների մոտ։ Աբստրակցիոնիստների պատկերայնության և արտահայտչականության պրոբլեմի մասին ունեցած նման ոչ գիտական հայացքների քննադատությունը Յա. Խաչիկյանը տվել է հիմնավոր կերպով։

Քննադատելով աբստրակցիոնիստներին, հեղինակը ցույց է տալիս, որ թեև սրանք հանդես են գալիս գեղարվեստական ստեղծագործության արտահայտչականության անունից, այնուամենայնիվ, նրանք վերջինիս կողմնակիցներ չեն։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Իրոք, որպեսզի նկարիչը արտահայտի իր վերաբերմունքը որևէ բանի նկատմամբ, անհրաժեշտ է, որ նախ՝ ընդունի այդ որևէ բանի ռեալ գոյությունը և երկրորդ, արտահայտի այդ որևէ բանը որոշակի կերպարի, պատկերի միջոցով։ Այլ կերպ ինչպես կարելի է հասկանալ այն, թե ի՞նչ է ուզում արտահայտել տվյալ նկարիչը, կամ ինչպիսի՞ մտքեր, զգացմունքներ է նա դնում տվյալ նկարի կամ քանդակի մեջ։ Իսկ քանի որ աբստրակցիոնիստները բացի ինչ-որ անհասկանալի, անվերծանելի նշաններից որոշակի ոչինչ չեն արտահայտում, ուստի չի կարելի խոսել նրանց ստեղծագործությունների արտահայտչականության մասին։ Այսպիսով, միանգամայն ճիշտ է հեղինակը, երբ նշում է, թե աբստրակցիոնիստներն անկերպ կերպարվեստի կողմնակիցներ են։

Աշխատության վերջում Յա. Խաչիկյանը քննության է առնում նաև աբստրակցիոնիզմի և կյանքի ճանաչողության հարցը։ Քանի որ աբստրակցիոնիստների միտումն է, կանգնել գիտության և արվեստի պոզիտիվիստական համահարթման ուղու վրա, ուստի գրքի հեղինակը, նրանց այդ նկրտումները հերքելու համար, անդրադառնում է գիտության ու արվեստի փոխհարաբերության հարցերին և այս կապակցությամբ կանգ է առնում դրանց միջև գոյություն ունեցող ինչպես ընդհանուր, այնպես էլ տարբերիչ կողմերի բնութագրման վրա։

Գիտության ու արվեստի միջև ընդհանրությունը կայանում է նրանում, որ երկուսն էլ հանդիսանում են իրականության ճանաչման ձևեր։ Ինչպես արվեստը, այնպես էլ գիտությունը կատարում են ընդհանրացումներ, արտացոլում իրենց մեջ երևույթների տիպականը, էականը, գլխավորը, ընդհանուրը և այլն։ Սակայն, ինչպես նշում է Յա. Խաչիկյանը, իմացական այս երկու ձևերի միջև եղած ընդհանրությունը երբեք էլ չի նշանակում նրանց նույնությունը։ Եթե գիտության նպատակն ընդհանուր հասկացության ստեղծումն է, որը զուրկ է զգայական փայլից, ապա արվեստի նպատակը կենդանի կերպարների կերտումն է, որոնք աչքի են ընկնում իրենց էմոցիոնալ, կոնկրետ զգայական հատկանիշներով։ Սակայն, հեղինակի պնդմամբ, գեղարվեստական պատկերի կոնկրետ բնույթից երբեք էլ չի կարելի հետևցնել, որ իբր այն իր մեջ չի արտացոլում ընդհանուրը։ Եթե գեղարվեստական պատկերը իր մեջ չարտացոլեր ընդհանուրը, իրոք, էլ ինչո՞ւմ կկայանար արվեստի հասարակական նշանակությունը, նրա ճանաչողական դերը։ Գեղարվեստագետը նկարագրելով որևէ մարդու ճակատագիրը, նրա ապրումներն ու խոհերը, միաժամանակ այդ եզակի կոնկրետը բարձրացնում է մինչև համընդհանրության աստիճան, այսինքն՝ այդ կոնկրետ կերպարների միջոցով արտահայտում է մի ամբողջ հասարակական խավի ընդհանուր հոգեվիճակը, տրամադրությունը։ Արվեստի մեջ ընդհանուրը եզակիի մեջ կոնկրետացնելու կամ կոնկրետ զգայականի միջոցով ընդհանուր հայտարկման ու արտացոլման պրոցեսը կոչվում է տիպականացում։

Վեր հանելով գեղարվեստական կերպարի առանձնահատկությունները, նրա ստեղծման օբյեկտիվ նախադրյալները, այս բոլորից հետո Յա. Խաչիկյանը բարձրացնում է մի օրինական հարց. այն, թե ինչի՞ կհանգեինք, եթե գեղարվեստական երկերի մեջ անտեսեինք կերպարի հարցը։ Այդ դեպքում, ինչպես ճիշտ նկատում է գրքի հեղինակը, կվերացվեր արվեստը, այն կզրկվեր իր ճանաչողական, դաստիարակչական ֆունկցիայից։ Հեղինակի նման եզրակացության հետ չի կարելի չհամաձայնել։

Իրոք, արվեստի այն ստեղծագործությունների մեջ, ուր թերագնահատվում է գեղարվեստական պատկերը, բնավ չի կարող խոսք լինել նրանց իմացական, ճանաչողական դերի մասին։ Անդրադառնալով այս կապակցությամբ աբստրակցիոնիստներին, Յա. Խաչիկյանը ցույց է տալիս, թե քանի որ նրանք հրաժարվել են օբյեկտիվ իրականության պատկերային արտացոլման սկզբունքից, ապա նրանք փաստորեն ժխտում են արվեստի ճանաչողական դերը, կանգնած են ագնոստիցիզմի ու սուբյեկտիվիզմի դիրքերում։

Սրանք են Յա. Խաչիկյանի աշխատության դրական կողմերը։ Սակայն գիրքը զերծ չէ նաև թերություններից։

Չգիտես ինչու հեղինակը չի խոսում աբստրակցիոնիզմի մասին երաժշտության մեջ։ Մինչդեռ հայտնի է, որ այն դրսևորվել է ոչ միայն կերպարվեստի, այլև երաժշտության բնագավառում, խախտելով արվեստի այդ ճյուղի հիմնական սկզբունքները, լադոտոնալությունը, մելոդիան, հարմոնիան և այլն։ Դոդեկաֆոնիայի՝ որպես աբստրակցիոնիստական արվեստի, ուսումնասիրությունը հեղինակին հնարավորություն կտար լիովին բացահայտել աբստրակցիոնիզմի նողկալի էությունը։ Աշխատության թերություններից մեկն էլ այն է, որ հեղինակի մոտ չկա հատուկ գլուխ գեղարվեստական պատկերի էսթետիկական նշանակության մասին։ Հայտնի է, որ արվեստի ճանաչողական և էսթետիկական էությունը հիմնվում է գեղարվեստական պատկերի վրա։ Իսկ քանի որ աբստրակցիոնիստների ստեղծագործությունների մեջ բացակայում է կերպարը, ապա նրանք արվեստի մի շարք արժանիքների թերագնահատմամբ ժխտում են նաև ամենագլխավորը՝ գեղեցիկը։

Սակայն նման բացերը չեն նսեմացնում աշխատության արժանիքը։ Գլխավորն այն է, որ հեղինակը հասել է իր նպատակին, կարողացել է փաստական հարուստ տվյալների վրա բացահայտել աբստրակցիոնիզմի ռեակցիոն էությունը։

Ա. ԹԵՎՈՍՅԱՆ
Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ



# ՄԱՐԴԿԱՆՑ ԱՊՐԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔԸ ՍՐԲԱԶԱ՜Ն Է

Սիրելի ընթերցո՛ղ, կարդա՛ Պոլ դը Կրայֆի Պայքար կյանքի համար գիրքը[1] և կիմանաս, թե որքա՞ն տարբեր է առողջապահության գործի դրվածքը սոցիալիստական և կապիտալիստական երկրներում, մասնավորապես ԱՄՆ-ում։ Մարդկային կյանքի ամենավտանգավոր ոլորտների այս կենդանի խրոնիկան իր աշխույժ, հետաքրքրական գրելաձևով, պատկերավոր ոճով, կյանքից առնված խոսուն օրինակներով կարող է դասվել գեղարվեստական ստեղծագործությունների շարքը։

Որպիսի՜ սրտացավությամբ է հեղինակը խոսում տառապող ու մեռնող մարդկանց և կյանքի համար պայքարողների մասին, որոնք փողի տիրակալության պայմաններում ոչ առանց երկյուղի ու տարակուսանքի, անհունորեն հավատալով գիտության ուժին, հերոսական, գերմարդկային ճիգեր էին գործադրում, անձնվիրաբար, մինչև վերջին շունչը մարտնչում հանուն մարդկային կյանքի։

Գիտնականներն ու բժիշկները, որոնք միկրոբածին բոլոր մահերը համարում են կանխելի, կապիտալի աշխարհում ապրում ու գործում են մեծ դժվարություններ կրելով, մեռնում են ամենքի կողմից մոռացված։ Բայց նրանք ապրում են առողջացած հիվանդների, նրանց ծնողների ու սերունդների երախտապարտ հոգիներում, նրանց բուժված ու բուժվող վերքերի սպիներում, խելագարանոցներից տուն վերադարձողների հրճվալից բացականչություններում, նորածին մանկանց առաջին ճիչերում, մահվան երկունքն ապրած մայրերի բերկրալից ժպիտներում։

Գիրքը բաղկացած է չորս մասից և մարտնչողների մասին նախերգից։

Նախերգում հեղինակը գրում է միկրոբ որսացողների, միկրոբների առաջին որսորդ Լևենհուկի, քահանա հետազոտող Սպալանցիի, այդ ասպարեզում «անգերազանց, անհամեմատելի հանճար» Պաստյորի, Ռոբերտ Կոխի մասին։ Հեղձուցիչ լաբորատորիաներում կատարած փորձերը նրանց հանգեցնում են այն եզրակացության, որ բոլոր միկրոբներն ունեն ծնողներ. ահա Պաստյորի մարտակոչը՝ նետված բոլոր միկրոբածին հիվանդություններին. «Մարդու կամքն է աշխարհի երեսից ջնջել բոլոր պարազիտային հիվանդությունները»։ Այս է դառնում կյանքի համար մարտնչողների գործունեության նշանաբանը։ Իսկ ի՞նչն է խանգարում դրան— մարդկային ագահությունը և անխոհեմությունը, փողին գերի դառնալը։

Վիճակագրական տվյալներով հեղինակը ցույց է տվել, թե որքան մարդկային զոհեր է պատճառել, 1928, 1929 և 1935 թվականներին բռնկված պելագրան։ Հեղինակը նկարագրում է այն դժվարին պայքարը, որ մղել են գիտնականներն ու Կարմիր խաչի ընկերությունը Ամերիկայում, մի երկիր, որը չի կամենում օրական երկու սենթ տրամադրել հանուն մարդկային կյանքի փրկության։

Երբ գիտության անխոնջ մարտիկ, նշանավոր Գոլդբերբերգերի ջանքերով հայտնի դարձավ, որ սննդի, դիետայի միջոցով միայն հնարավոր է փրկել մարդկանց, աշխարհի երեսից ջնջել այդ հիվանդությունը, ժողովրդի կառավարիչներն սկսեցին վախենալ գիտությունից և նույնիսկ փորձեցին ժխտել այն։ Նրանք գտնում էին, որ ավելի լավ է թողնել, որ մեռնեն այդ հիվանդները։ Լսելով պելագրայով հիվանդ մի երեխայի մասին, որին կարող էր փրկել մի քանի օրվա ուժեղ դիետիկ սնունդը, մի բարեկիրթ մայր ասել է. «Ավելի լավ չի՞ լինի արդյոք այդ երեխային թույն տանք խմի»։

Մարդկանց կյանքի ու մահվան հարցերը լուծողների կարծիքն էլ համընկնում է այս տիկնոջ կարծիքին. երբ հյուսիսային հարուստ արդյունաբերողին հայտնում են պելագրայի դեմ տարված հաղթանակի մասին, նա բացարձակորեն ասում է. «Գիտության բոլոր այդպիսի հաղթանակները միայն մեծ թվով մարդկանց փրկություն են նշանակում, մինչդեռ Հարավում առանց այն էլ անհամաչափություն է նկատվում կենդանի ուժի ավելցուկի ու հողային տարածության և այլ բնական ռեսուրսների միջև»։ Ահա թե ինչու ԱՄՆ-ում չեն ուզում մահվան ճանկերից խլել մարդուն և մահվան դատավճիռ են արձակում գիտության նկատմամբ, մի երկիր, ուր ամեն ինչ ծառայում է ոչ թե մարդկային կյանքին, նրա բարօրությանը, այլ շահույթի կուտակմանը։

Պայքար կյանքի սկզբի համար— այս է վերնագիրը գրքի առաջին մասի, որը նվիրված է մեր կյանքի պաշտպանությանը։ Այստեղ համառոտակի նկարագրվում է «մահն ատող, աշխարհին նոր կյանք պարգևող կանանց համար մարտնչող» Ջոզեֆ դը Լիի 45-ամյա գործունեությունը։ Դը Լին խիստ աննորմալ է համարում այն երևույթը, որ Ամերիկայում ամեն տարի հազարավոր մայրեր են մեռնում ծննդաբերությունից, տասնյակ հազարավոր երեխաներ՝ ծնվելու ժամանակ, հարյուր հազարավոր կանայք ամեն տարի դառնում են հաշմանդամներ, հազարավոր երեխաներ աշխարհ են մտնում որպես այլանդակներ, կույրեր և ապուշներ։ Դը Լին նշում է, որ 1915—1940 թվականների ընթացքում առանձնացված ծննդատների բացակայության, մանկաբարձության վատ դրվածքի հետևանքով մահացել են 375 հազար ամերիկուհիներ։

Հեղինակը ցույց է տալիս, թե ինչպիսի անմխիթարական վիճակում էր մանկաբարձությունը Ամերիկայում. հարյուր անգամ ավելի քիչ փորձված մանկաբարձներ կային, քան անհրաժեշտ էր այնտեղ տարեկան երկու միլիոն ծնունդ ընդունելու համար։ Իսկ ինչո՞ւ չէին պատրաստվում այդպիսիք, չէ՞ որ այդ կփրկեր շատ մայրերի և երեխաների կյանքը։ Ահա այդ հարցի խիստ օբյեկտիվ պատասխանը. «...մեր հասարակարգի պայմաններում առաջին պլանում դրված է ոչ թե մայրերի ու երեխաների առողջապահության պաշտպանությունը, այլ բժիշկների վաստակը»։ Որքան շատ բժիշկներ, այնքան քիչ վաստակ։

Բերենք միայն մի օրինակ ցույց տալու համար, թե կապիտալիստական աշխարհում որքա՞ն ողբերգական ու հակասական է կյանքի համար մարտնչող խիզախների վիճակը։ Վիկտորյա թագուհուն հեշտությամբ ծննդաբերելու համար անձամբ օգնող Սիմպսոնը ազնվականի կոչում է ստանում։ Մինչդեռ Զեմմելվեյսը՝ ծննդատենդի դեմ համառ պայքարողը, որը ո՛չ միայն մանկաբարձությունը, այլև ողջ վիրաբուժությունը հակամիկրոբային պայքարի միջոցով անվտանգ դարձրեց, այդ նույն ժամանակ մահանում էր Վիեննայի հոգեբուժական հիվանդանոցում, ամենքի կողմից ծաղրված...

Բժիշկ Հեյնց Զիգենտոպֆը գտնում է, որ ծննդաբերությունից մահացող մայրերը «մեր տնտեսակարգի զոհերն են»։ Անհրաժեշտ է կառուցել առանձնացված, մասնագիտացված ծննդաբերական հիվանդանոցներ՝ հատուկ անձնակազմով, որոնք կփրկեն շատ կանանց ու երեխաների։ Անշուշտ, այդպիսիք կան Ամերիկայում, բայց դրանք շատ քիչ են, և շատ քչերը կարող են օգտվել դրանցից։ «Իդեալում, իհարկե, կա այդպիսի շենքերի կառուցում»։ Հեղինակը սարկազմով նկատում է. ««Իդեալ» ամերիկյան լեզվով նշանակում է նպատակ, որին երբեք չի կարելի հասնել»։ Ամերիկյան բժիշկները պետք է անեն միայն այն, ինչ թույլ է տալիս ամերիկյան տնտեսական սիստեմը։ Ո՛չ բժիշկները, ոչ էլ ժողովուրդը իրենց հիվանդանոցների տերը չեն։ Բժիշկները տերը չեն նույնիսկ իրենց գիտության։ Այստեղ հեղինակը կոչ է անում ժողովրդին՝ հանուն կանանց և երեխաների փրկության կառավարիչներից ու տերերից պահանջեն կառուցել համապատասխան շենքեր՝ անհրաժեշտ սարքավորումներով և բժշկական մասնագետ անձնակազմով։

Ավա՜ղ, երբ դը Լին հանդես եկավ անվտանգ ծննդատներ կառուցելու առաջարկով, բոլոր ելույթ ունեցողները շեշտում էին այդ գործի միայն ֆինանսական կողմը՝ «Ջափազանց թանկ արժե»։ Ոչնչով չէր օգնում մարդկային կյանքի լավագույն պաշտպանի՝ դը Լիի այն պնդումը, թե «Մարդկային կյանքը թանկ է ամեն բանից»։

Դը Լիի «տնտեսագիտությունը» սնանկ է շահագործողական հասարակարգում, որտեղ մարդկային կյանքը կապիտալի ոլորտում ոչինչ է, իսկ բիզնեսը, շահույթը ամեն ինչ։ Դը Լին, թերևս, չէր կարող հասկանալ այդ ճշմարտությունը։ Ահա թե ինչու նա դիմում էր կապիտալիստական աշխարհի տնտեսական արքաներին՝ բարելավել մոր և մանկան բուժհսկողությունն ու խնամքը, միամտորեն կարծելով, թե նրանք կընդառաջեն իր ազնիվ մղումներին։

Քսաներկու տարի է անցել այդ ժամանակներից, բայց ի՞նչ չափով է փոխվել վիճակը։

Ամերիկյան կառավարությունը մինչև օրս էլ զլանում է օգնել, անմխիթար վիճակից հանել «հատակի» մարդկանց։ Այդ են ցույց տալիս 1963 թ. փետրվարին Քեննեդիի՝ ամերիկյան կոնգրեսմեններին հղած ուղերձները «լուսավորության հարցերի», «բուժսպասարկման բարելավման» վերաբերյալ և հոգեկան խանգարում ունեցողներին բուժելու մասին որոշումը։

Խոսելով բուժսպասարկման մասին, պրեզիդենտը նշում է, որ դեռևս ողբալի է ժողովրդի առողջական մակարդակը։ Բժիշկների տոկոսը մեր երկրում շատ ցածր է,— խոստովանում է նա,— 100000 բնակչին ընկնում է 137 բժիշկ. բուժման վարձը շատ շատերի, հատկապես ծերերի համար անմատչելի է դարձնում այն։ 6 միլիոն մեծահասակներ տառապում են լիփ-լեցուն խելագարանոցներում, ուր համարյա ոչ մի բուժում չեն ստանում։ Հոգեկան հիվանդություն-

1 Պոլ դը Կրայֆ, Պայքար կյանքի համար, Հայպետհրատ, 1962, 264 էջ։

ների թվի մեծացման պատճառը պրեզիդենտը համարում է մայրերի և երեխաների նկատմամբ բժշկական հսկողության բացակայությունը, հատկապես, չունևոր ընտանիքներում։ Մասամբ այդ ճիշտ է։ Բայց պատճառը միայն այդ չէ։ Կապիտալիստական հասարակարգում հնարավոր չէ պակասեցնել թաքնված աղքատությունը, վերացնել բոլոր չարիքները։ Միայն այդ չարիքները ծնող կապիտալիստական կարգերի վերացմամբ կվերանա այդ ամենը, կվերանան քչերի հարստությունն ու միլիոնների աղքատությունը։

Առատության հասարակություն են համարում ամերիկացիներն իրենց երկիրը։ Սակայն կա նաև մի այլ Ամերիկա՝ աղքատության, հուսահատության ու կեղեքման Ամերիկան է այդ։ Ինչ խոսք, այն աղքատ չէ, ինչպես կապիտալիստական հետամնաց երկրները։ Սակայն այնտեղ հոգեպես ու ֆիզիկապես խեղված միլիոնավոր մարդիկ՝ ոչ որակյալ բանվորներ, հիվանդանոցների աշխատողներ, ազգային փոքրամասնության ներկայացուցիչներ, տնային սպասավորներ և սպասուհիներ, լվացքատների բանվորներ, խորին ծերության հասածներ ապրում են տնտեսական ծանր պայմաններում, չունեն մարդավայել տներ, զուրկ են սովորելու հնարավորությունից, բուժսպասարկումից։

Ահա թե ինչ է ասում այդ մասին պրեզիդենտ Քեննեդին 1963 թ. հունվարի 14-ի Երկրի վիճակի մասին իր ուղերձում։ «Բժշկական բոլոր հայտնագործությունները շատ փոքր արժեք կունենան, եթե մենք չկարողանանք հաղթահարել ամբողջ երկրում տիրող բժիշկների և բուժքույրերի, հիվանդանոցների, այդ թվում և քաղաքային հիվանդանոցների օրեցօր ավելացող պակասը»։

Գրքում հանդես է գալիս բժիշկ Ջարլզ Ռոբերտ Էլիոտը՝ ծննդատենդը, անբուժելի սուսանակը միայն տաք ջրով բուժելու իր մեծ ծախսեր չպահանջող մեթոդով. ինչպիսի՜ հարձակում նրա դեմ. «Կառապանական ժամանակներում ախոռներ ունեցողները, հավանաբար, նույնպիսի ատելությամբ էին նայում հենց նոր երևան եկած ավտոմոբիլներին», գրում է հեղինակը։ Հազարավոր դոլարներ են մարդիկ ծախսել գինեկոլոգ, վիրաբույժ դառնալու համար, և հանկարծ տաք ջուրը նրանց պետք է զրկի եկամտի աղբյուրից։ Որքան դժվար ու աշխատատար էր այդ էժան բուժումը, այնքան ուժգին էր հալածանքը Էլիոտի դեմ. բժշկական փառքի փոխարեն նրան դիմավորում էին սվինները. նրա վիճակը հեղինակը նմանեցնում է խեղդվող երեխային փրկող շան հետ, որը համեղ ոսկորի փոխարեն աքացի է ստանում։ Ստիպված նա թողնում է Սան-Ֆրանցիսկոն, գնում Սիետլ, որտեղ ևս նրա վիճակը մխիթարական չի լինում. այդտեղից էլ նա հեռանում է։ Էլիոտի մեթոդը, սակայն, միշտ չի մնում այդպես հալածված. այն սկսում է տարածվել ու տարածվել, և այն ժամանակ, երբ նրան պետք է պսակեր փառքի դափնին, հեղինակն ականատես է լինում միկրոբներ այրողի ողբերգական մահվանը. նրան ճխլել էր բեռնատար մեքենան. նա պառկած էր Նյու-Յորքի լավագույն հիվանդանոցներից մեկում, ձախ ուսը ջարդված, կողերը կոտրված, գլուխը խեղված. այդ վիճակում նրան պահել էին վիրահատական սեղանին այնքան ժամանակ, մինչև պարզել էին, թե նա կարո՞ղ է արդյոք վճարել բուժման, սննդի ու մահճակալի համար։

Այսպիսի խայտառակությունը միանգամայն օրինական է այնպիսի սիստեմի օրոք, որի համար «...մարդկային կյանքը մի գրոշ չարժե, իսկ գթություն է ցույց տրվում միայն նրանց, ովքեր կարող են վճարել դրա համար», այն սիստեմի օրոք, ուր հատկացվող միջոցները բավականացնում են միայն հիվանդանոցները չփակելու համար։

Գրքի երկրորդ մասը՝ Հիվանդություն, որը ծընում է հաշմանդամներ, նվիրված է մանկական պարալիչին՝ պոլիոմիելիտին։ Նկարագրված են կապիկների, մկների վրա Շուլցի, Կարլ Լանդըշտեյների և այլոց կատարած բազում հետաքրքրական փորձերը, ցույց է տրված կյանքի համար մարտնչողների համառ պայքարը երեխաների կյանքի փրկության, նրանց հաշմանդամությունից ազատելու համար։ Այստեղ ևս ընթերցողը տեսնում է այն բոլոր արգելքներն ու խոչընդոտները, որ ստիպված են հաղթահարել գիտնականները։

Գրքի երրորդ մասը՝ Մեռնելը փող արժե, սկսվում է Դետրոյտը տուբերկուլյոզի դեմ մղվող պայքարում գլխով, ուր նկարագրվում է դետրոյտցիների գերմարդկային պայքարը կյանքն ու մահը դոլարներով գնահատողների դեմ։ Դետրոյտի մարտիկները կապիտալիստական աշխարհի առաջ պարզեցին այն «ճշմարտությունը», որ «Տուբերկուլյոզն արմատախիլ անելը դա ամենևին մարդասիրական զբաղմունք չէ։ ...Դա հարկավոր է ոչ թե ժողովրդի տառապանքների բաժակը պակասեցնելու», այլ միայն կապիտալիստների տնտեսական շահերի համար։

Միայն այդ միջոցով նրանք կկարողանային իրենց պայքարին մասնակից դարձնել փողի տերերին, որի կարիքն այնքա՜ն մեծ էր սոցիալական ծագում ունեցող այդ հիվանդությունը վերացնելու գործում։ Նրա վարակիչ լինելը մեծ տագնապ է առաջացնում և ունևորների շրջանում. միկրոբը խտրություն չի դնում հարուստների և աղքատների միջև։

Ծայրահեղ հուսահատության պահին բժիշկ Օ՚ Բրիենը գրում է. Արժե՞ արդյոք նրանց ապրել գիրքը, ուր մեծ կրքոտությամբ ցույց է տըրված, որ տուբերկուլյոզի դեմ մարտնչողներն ամեն ինչ կանեն այն ոչնչացնելու համար. միայն դետրոյտցիները պետք է փոքր-ինչ բացեն իրենց քսակները. և այդ ժամանակ ավելի շատ փող կտնտեսվի, քան եթե ամենուրեք վխտան տուբերկուլյոզի բացիլները։

Դետրոյտ նյութի երիտասարդ խմբագիրը ճաշի է հրավիրում բժիշկներ Օ՚ Բրիենին, Վոգենին, Դուգլասին, իր թերթը դնում նրանց տրամադրության տակ, խոստանում ամեն ինչ անել այդ գործի հաջողության համար։ Եվ ի՞նչ եք կարծում, մարդասիրությո՞ւնն է արդյոք մղում նրան այդպիսի գործարար առատաձեռնության, ամենևին։ «Մարդկային կյանքը՝ գրողի ծոցը։ Բանը նրանումն է, որ քաղաքի համար ահագին փող արժե, երբ թոքախտավորները փտում են տուբերկուլյոզից»։ Միայն տնտեսական նկատառումներն են մղում Դետրոյտի հարուստներին՝ մասնակցելու այդ պայքարին։

Գրքի վերջին՝ Անավոր շենդություն մասում նկարագրված է պայքարը վեներական հիվանդությունների, մասնավորապես սիֆիլիսի դեմ։ Այդ հիվանդությունները մի քանի միլիարդ դոլար են նստում կապիտալիստական աշխարհին։ Բուժման մեթոդներն ընտրելիս էլ, թե՛ բուժվողի և թե բուժողների, գործարանատերերի համար կարևորը տնտեսական նկատառումներն են. այսպես՝ սիֆիլիսի բուժման նպատակով արհեստական տենդ առաջացնելու համար օգտագործվում է մալարիայի միկրոբը, բայց քանի որ մալարիան մարդուն մի քանի շաբաթով զրկում է աշխատունակությունից, այն պակաս ընդունելի է, քան արհեստական տենդ առաջացնելու մյուս մեթոդները։ Իրենք հիվանդներն էլ չեն ցանկանում այդ մեթոդով բուժվել, քանի որ քաջ գիտեն, որ իրենց տերերը մեկ օր իսկ չեն հոգա իրենց մերձավորների մասին։

Նկարագրված է գիտության անվարան մարտիկի՝ Ռւենչերի և նրա օգնականների անխոնջ աշխատանքը, նրանց ապրումներն իրենց պացիենտների առողջական վիճակի հետ կապված։ Նրան խիստ մտատանջում է առողջացող հիվանդների ապագան. ո՞ւր են գնալու, ի՞նչ են անելու նրանք, արդյո՞ք նրանց չի սպասում նույն ճակատագիրը։ Ֆիզիկական հիվանդությունը բուժելուց հետո ո՞վ պետք է զբաղվի նրանց «կարգին մարդ» դարձնելու գործով։ Անհրաժեշտ է հոգալ այդ մասին, պայմաններ ստեղծել, որպեսզի մարդը նորից չմխրճվի կյանքի ճահիճը։

Այս գրքույկով հեղինակը կոչ է անում ժողովրդին գործնական քայլեր պահանջել երկրի կառավարիչներից, որոնց կարծիքով ավելորդ տառապանքների ու մահերի դադարեցումը օգտակար չի լինի մարդկության համար։ Ավելի լավ է մեռնեն նրանք, կպակասի մարդկությունը, կհեշտանա ապրելը, հեղինակը գտնում է այս ձևով մտածողներին՝ միայն խնայողություն պահանջող միլիոնատերերին, ահաբեկելու միակ միջոցը. նա գոչում է՝ «Մեռնելը փող արժե»։

Հեղինակն անձամբ ծանոթ է եղել իր հերոսհերոսուհիներից շատերին, ներկա է եղել շատ փորձերի, մասնակցել բուժմանը, հետևել դրա ընթացքին, անքուն գիշերներ անցկացրել հիվանդի սնարի մոտ, իսկ հեռու եղած ժամանակ նամակագրական կապ է ունեցել բժիշկների, գիտնականների հետ։ Հեղինակը եղել է Ջիկագոյի հետնախորշերի խղճուկ հյուղակներում, Սպիտակ տանը լսել պրեզիդենտի դատողությունները, եղել է հիվանդանոցներում, տեխնիկական լաբորատորիաներում, առողջապահության աշխատողների՝ վիրաբույժների և սիֆիլիսի դեմ մարտնչողների հետ միասին կազմել է համարձակ պլաններ, եղել է սևամորթ ու սպիտակամորթ վարձակալների կիսաքանդ խրճիթներում, տեսել ու խորապես զգացել է, որ «...ապրելու ձգտումը միշտ էլ ավելի ուժեղ է այնտեղ, որտեղ կյանքը վտանգի մեջ է»։ Այդ ամենին ականատես լինելով, իր նկարագրած և չնկարագրած ողբերգական պահերն ապրելով, մարդասեր հեղինակը եկել է այն եզրակացության, որ «Մարդկանց տառապանքների թեթևացումը և մահվան դեմ մղվող պայքարը երբեք իրենց բարձրության վրա չեն լինի, քանի դեռ ժողովրդի և նրա կյանքի համար մարտնչողների միջև գոյություն ունեն դրամական փոխհարաբերություններ»։

Պոլ դը Կրայֆը լավ գիտե ԱՄՆ-ը ու խորապես ուսումնասիրել է հասարակական կյանքի մի բնագավառը՝ առողջապահությունը։ Հենց այդտեղ էլ նա բացահայտել է ու մերկացրել կապիտալիզմի վահրոտ խոցերը, միլիոնավոր աշխատավորների ծանր տառապանքները։ Նրա գիրքը ականատեսի մեղադրականն է դոլարի թագավորության դարավոր ոճիրների դեմ։ Քանի որ այդ մեղադրականը իրականության ճիշտ արտացոլումն է, այն կօգնի մեր ընթերցողին ճիշտ ըմբռնելու արդի կապիտալիստական «դրախտի» բուն էությունը։

Է. ՍԱՐՈՅԱՆ



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԽՈՆԱՎՈՒԹՅՈՒՆ ՉԱՓԵԼՈՒ ՆՈՐ ՄԵԹՈԴ

Շինարարական գործում հաճախ հարկ է լինում չափել նյութերի խոնավությունը: Հայտնի է, որ պատերը չի կարելի ներկել, քանի դրանք լավ չեն չորացել: Խիստ անհրաժեշտ է իմանալ շենքի հիմքում և այլ կարևոր կոնստրուկցիաներում եղած բետոնի խոնավությունը: Իսկ խոնավության չափման հին մեթոդները (նմուշ վերցնելը, հիգրոմետրի կիրառումը) շատ ժամանակ են պահանջում և հաճախ ճիշտ արդյունք չեն տալիս:

Հունգարացի ինժեներ Գեզա Սուկը հնարել է մի գործիք, որը կառուցված է՝ հաշվի առնելով նյութի էլեկտրական դիմադրությունը, իսկ էլեկտրական դիմադրությունը փոփոխվում է խոնավության չափից: Այս նոր գործիքում կիրառվում են էլեկտրահոսանք հաղորդող առաձգական սպունգե էլեկտրոդներ: Սպունգի առաձգականությունը լավ կապ է ստեղծում մակերեսի և հաղորդակի միջև, որը և հնարավորություն է տալիս որոշելու նյութերի խոնավության չափը:

## ՈՐՔԱ՞Ն ՍԱՌՈՒՅՑ ԿԱ ԵՐԿՐԱԳՆԴԻ ՎՐԱ

Եթե դատելու լինենք երկրագունդը շրջապատող սառած ջրերի քանակով, ապա մեր մոլորակն իրենից կներկայացնի հսկայական քանակությամբ սառույցով լցված մի վիթխարի սառնարան: Միջազգային գեոֆիզիկական տարվա հաշվումները հնարավորություն են տալիս ասելու, որ մինչև այժմ կուտակվել է 26 660 հազար խորանարդ կիլոմետր, կամ մոտ 24 միլիոն տոննա սառած ջուր, որի մեծ բաժինը՝ 23 820 հազար խորանարդ մետրն ընկնում է Անտարկտիդային:

Հարց է առաջանում, թե որքա՞ն կբարձրանար Համաշխարհային օվկիանոսի մակերեսը, եթե սառույցի այդ ամբողջ զանգվածը հանկարծ հալվեր: Առաջներում նշում էին շատ տարբեր թվեր՝ 7-ից մինչև 250 մետր: Այժմ այդ հսկայական տարբերությունը ճշտված է, այն կբարձրանա մոտավորապես 66,3 մետր:

## ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՑԱՅԻՆ ԱԶԴԱՆՇԱՆՆԵՐԸ ԼՈՒՍԱՅԻՆ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐՈՎ

«Գրյունիիգ» ֆիրմայի (ԳՖՌ) լաբորատորիաներում մշակվել է հեռուստացուցային պատկերների ու ձայնի հաղորդման համար լույսի ճառագայթներն օգտագործելու մի եղանակ: Լույսի նեղ ճառագայթը՝ բևեռացնող ֆիլտրից անցնելուց հետո ընկնում է, այսպես կոչված՝ մոդուլյատորը՝ կեռի բաժանմունքը, որտեղ այն տրոհվում է երկու մասի: Եթե էլեկտրական ազդանշանի ձևով մոդուլյատորին հաղորդեն պատկերա-ձայնային ազդանշաններ, ապա լույսի ճառագայթի երկու փունջն էլ կանցնեն վերլուծիչի (анализатор) միջով և անհրաժեշտ համախականության ինտենսիվությամբ կմոդուլացվեն: Ֆոտոբազմացուցիչը լույսի տատանումները նորից վեր է ածում էլեկտրական ազդանշանների, որից հետո ուժեղացվում և հաղորդվում են հեռուստացույցին: Համապատասխան ուժեղացուցիչների առկայության դեպքում հնարավոր է հաղորդումը կատարել 100 միկրոհերց լայնությամբ հեռուստացուցային 15 կանալով կամ 20 հազար խոսակցություն հաղորդել միաժամանակ:

## ԿԵՂՏԱՋՈՒՐԸ ՈՐՊԵՍ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ

Լաբորատորիաներում և, առանձնապես, դաշտում կատարած փորձերը ցույց են տալիս, որ կեղտաջուրը կարող է բարձրացնել բերքատվությունը: Առանձնապես բերքի մեծ աճ են տալիս կերի ճակնդեղը և եգիպտացորենը, երբ պարարտացվում են արդյունաբերական կեղտաջրով:

Ինչպես ցույց են տվել լեհացի պրոֆեսոր Յան Վիժբիցկու փորձերը, արդյունաբերական ջրերով պարարտացվող բարդին չորս անգամ ավելի արագ է աճում: